ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ









# ԳԼԽԱՎՈՐԸ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

ՍՄԿՊ XXII համագումարը մեր պարտիայի պատմության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում: Նրա քննարկած հարցերն ու որոշումները վիթխարի նշանակություն ունեն Սովետական Միության, սոցիալիստական երկրների ժողովուրդների և ամբողջ մարդկության ճակատագրի համար: Համագումարը նոր խոսք ասաց ժամանակակից մարդկությանը հետաքրքրող, նրան հուզող հարցերի մասին, ճիշտ կողմնորոշում տվեց աշխարհի վերափոխման համար պայքարող ռևոլյուցիոն-պրոգրեսիվ ուժերին: Պարտիայի համագումարում ընդունված ՍՄԿՊ Ծրագիրը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի մի հոյակապ փաստաթուղթ է, որը նոր աստիճանի է բարձրացնում գիտական կոմունիզմի ուսմունքը, նշում է մարդկության դարավոր երազանքի՝ կոմունիստական հասարակության կառուցման կոնկրետ ուղիները:

Սովետական Միության աշխատավորներին բախտ վիճակվեց առաջինը սկսելու և ավարտելու սոցիալիստական հասարակության կառուցումը, առաջինը ձեռնամուխ լինելու կոմունիստական շինարարության վեհ գործին: Աշխատավորների՝ սոցիալիզմի համար մղած ռևոլյուցիոն պայքարին ուղղություն է տվել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով պինված Կոմունիստական պարտիան: Այժմ, պատմական նոր ժամանակաշրջանում, Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին պինում է կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված ծրագրով, կազմակերպում նրա բոլոր ստեղծագործ ուժերն այդ հոյակապ ծրագիրը կենսագործելու համար:

Սովետական մարդու համար պարզ են իր այսօրվա և ապագա խնդիրները, պարզ են ու հստակ իր առաջընթացի ուղիները:

Թե ինչպիսի կենսական նշանակություն ունեն ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, մեր պարտիայի նոր Ծրագիրը, երևում է այն վիթխարի հետաքրքրությունից, որ ցուցաբերում են այդ մեծ փաստաթղթերի նկատմամբ պարտիական ու անպարտիական մասսաները, ամբողջ ժողովուրդը:

Պարտիական ակտիվների, սկզբնական պարտիական կազմակերպությունների և աշխատավորների կոլեկտիվների ժողովներում աննախընթաց ակտիվությամբ միլիոնավոր մարդիկ քննարկում են համագումարի որոշումները, միահամուռ հավանություն տալիս այդ որոշումներին, պարտիայի նոր Ծրագրին ու Կանոնադրությանը, նշում իրենց կոնկրետ անելիքները համագումարի առաջադրած խնդիրները կենսագործելու համար:

Կոմունիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարում հզոր գործոն է գաղափարական աշխատանքը: Կոմունիզմը կառուցվում է Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող քաղաքի և գյուղի աշխատավորական մասսաների գիտակից ու պլանաչափ գործունեությամբ: Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների

կարգացումը, նոր մարդու դաստիարակումը—ահա այն խնդիրները, որոնց պետք է ծառայի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքը:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն հսկայական ուշադրություն է նվիրում գաղափարական աշխատանքին: Դրա վառ արտահայտություններից մեկը 1961 թ. դեկտեմբերի վերջին իդեոլոգիական հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունն էր: Խորհրդակցությունը, որին մասնակցում էին գաղափարական ճակատի բոլոր ներկայացուցիչները, հանգամանորեն քննարկեց ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներից և պարտիայի նոր Ծրագրից բխող գաղափարական աշխատանքի խնդիրները:

Խորհրդակցությունը ցույց տվեց, թե ինչպես այժմ, երբ հաղթահարված են անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները, վերականգնված են պարտիական կյանքի լենինյան նորմերը, ըստ ամենայնի կարգացել է ներպարտիական ու սովետական դեմոկրատիան, առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվել մարքսիստական-լենինյան ուսմունքի ստեղծագործական կարգացման ու կիրառման համար, գաղափարական ամբողջ աշխատանքի նոր վերելքի համար: Կենդանի, կոմունիստական շինարարության գործնական խնդիրների հետ սերտորեն կապված, կյանքի նոր փաստերի հիման վրա հարստացած մարքսիստական-լենինյան թեորիայի ուսումնասիրությունը պարտիայի անդամների և անպարտիական աշխատավորների համար դարձել է ավելի գրավիչ, հետաքրքիր ու կենսական:

Կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի խնդիրները համակողմանի շարադրված են պարտիայի նոր Ծրագրում: Գաղափարական աշխատանքում գլխավորը, ինչպես նշված է Ծրագրում, բոլոր աշխատավորներին բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ հավատարմության, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության ոգով դաստիարակելն է, բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկների լրիվ հաղթահարումը և կոմունիստական բարոյականության սկզբունքների ամրապնդումը:

Գաղափարախոսության ասպարեզում ՍՄԿՊ Ծրագրում առաջադրված խնդիրների կենսագործումը պարտիական կազմակերպություններից պահանջում է տևական, մտածված ու քրտնաջան աշխատանք կատարել ամբողջ բնակչության շրջանում, գործի դնելով պրոպագանդայի և ագիտացիայի բոլոր միջոցները:

ՍՄԿՊ XXII համագումարից հետո անցած ժամանակաշրջանում Հայաստանի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել ՍՄԿՊ Ծրագրի ու համագումարի նյութերի պարզաբանման և ուսումնասիրության գործը կազմակերպելու ուղղությամբ: Արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում սովխոզներում և հիմնարկներում ավելի քան 30 հազար ագիտատորներ մատչելի ձևով աշխատավորներին ծանոթացնում են համագումարի որոշումներին, նրանց ուշադրությունն ուղղում կոմունիստական շինարարության բնագավառում իրենց առջև կանգնած գործնական խնդիրների լուծմանը: Պարտիական լուսավորության ցանցն ամբողջովին անցել է XXII համագումարի նյութերի ուսումնասիրությանը: Պարտիական և կոմերիտական լուսավորության սիստեմում ավելի քան 220 հազար կոմունիստներ, կոմերիտականներ և անպարտիականներ ձեռնամուխ են եղել պարտիայի Ծրագրի և համագումարի որոշումների ուսումնասիրությանը՝ իրենց կրթական մակարդակին և կարողություններին համապատասխան ծրագրերով:



Լուրջ աշխատանք է կատարվում պրոպագանդիստական կադրերի հետ: Նրանց համար կազմակերպվել են սեմինարներ, որտեղ հանդես են եկել պարտիական ու սովետական ղեկավար աշխատողներ, ՍՄԿՊ XXII համագումարի պատգամավորներ, բարձրորակ դասախոսներ: Անց են կացվել պրոպագանդիստների սեմինարների ղեկավարների ռեսպուբլիկական սեմինար-խորհրդակցություններ: Պրոպագանդայի ասպարեզի բազմաթիվ աշխատողներ հերթականորեն ուղարկվել և ուղարկվում են ՍՄԿՊ Կենտկոմի միամսյա դասընթացները: Պրոպագանդիստական խմբեր են ուղարկվել ռեսպուբլիկայի քաղաքները, շրջանները, գյուղերը: Պարտիական կազմակերպությունների դասախոսական խմբերի և Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության անդամների ուժերով աշխատավորների համար կարդացվել են ավելի քան 30 հազար դասախոսություն ու զեկուցում:

ՍՄԿՊ Ծրագիրը և համագումարի որոշումները սիստեմատիկորեն պրոպագանդում են ռեսպուբլիկայի մամուլը, ռադիոն ու հեռուստատեսությունը, հրատարակչությունները, ստեղծագործական միությունները: Բազմազան ու հետաքրքրական են դարձել պրոպագանդայի ու ագիտացիայի ձևերը: Բայց այս ամբողջ կատարվածը դեռևս գործի սկիզբն է:

ՍՄԿՊ Ծրագրի և պարտիայի XXII համագումարի որոշումների պարզաբանումը և ուսումնասիրությունը կարճատև կամպանիա չէ, այլ մեր ամբողջ գաղափարական աշխատանքի հիմնական ուղղությունն ու բովանդակությունը՝ երկարատև ժամանակաշրջանում:

Ամենից առաջ անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպություններն իրենց ուշադրությունը կենտրոնացնեն պրոպագանդայի և ագիտացիայի գաղափարական մակարդակի բարձրացման վրա, այն դարձնեն ավելի ներգործուն, ավելի էֆեկտիվ, ուժեղացնեն քաղաքական աշխատանքի կապը կյանքի, կոմունիստական շինարարության խնդիրների կենսագործման համար մղվող պայքարի հետ: Գաղափարական աշխատանքի արդյունքները, ինչպես նշեց իդեոլոգիական հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունը, պետք է իրենց արտացոլումը գտնեն արտադրական-կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման, պլանների կատարման, մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության բարձրացման մեջ: Այդ պետք է լինի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի չափանիշը: Կարելի՞ է, օրինակ, խոսել գաղափարական աշխատանքի բարձր մակարդակի մասին, եթե տվյալ ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, սովխոզում, շրջանում կամ քաղաքում չեն կատարվում արտադրական պլանները և պարտավորությունները, չի արմատավորվում առաջավոր փորձը, տեղի են ունենում հակահասարակական երևույթներ, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումներ, հանցագործություններ և այլն:

Պրոպագանդիստները, ագիտատորները, գաղափարական բնագավառի բոլոր աշխատողները պետք է հանդիսանան մասսաների քաղաքական իսկական կազմակերպիչներ, դաստիարակեն նրանց աշխատանքի լավագույն օրինակներով, պրոպագանդեն առաջավորների փորձը, հասարակական տնտեսության կազմակերպման նոր, պրոգրեսիվ մեթոդները, գործնականում նպաստեն դրանց արմատավորմանը:

Սակայն պետք է նշել, որ մեզ մոտ դեռևս կան պարտիական կազմակերպություններ և առանձին աշխատողներ, որոնք շարունակում են աշխատել հին ձևով, բավարար ուշադրություն չեն նվիրում պարտիական պրոպագանդայի, քաղաքական-դաստիարակչական, գաղափարական աշխատանքի մակարդակի բարձրացմանը:

Մի շարք պարտիական կազմակերպություններ դեռևս անհրաժեշտ թափ չեն

հաղորդել ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների և պարտիայի Ծրագրի ուսում-
նասիրությանը: Ռեսպուբլիկայի բնակչության որոշ խմբեր դուրս են մնացել պար-
տիական պրոպագանդայի ոլորտից: Ալավերդու, Հոկտեմբերյանի, Վեդու, Հրազ-
դանի և մի շարք այլ շրջանների առանձին, մանավանդ շրջանային կենտրոնից հեռու
գտնվող գյուղերում թույլ է ընթանում համագումարի նյութերի պրոպագանդան,
դրանց խոր ուսումնասիրությունը. Փոքրաթիվ մարդիկ են ընդգրկվում ձեռնարկված
միջոցառումներում: Չեն կիրառվում պրոպագանդայի և ագիտացիայի բազմազան
ձևերը: Անբավարար է մանավանդ ցուցադրական ագիտացիան ոչ միայն հեռա-
վոր գյուղերում, այլև շրջանային կենտրոններում, քաղաքների արդյունաբերական
ձեռնարկություններում և հիմնարկներում, ակումբներում և հասարակական վայրե-
րում: Լուրջ թերություններ կան դասախոսական աշխատանքում: Աշխատավորների
համար կազմակերպվող շատ դասախոսություններ կրում են ընդհանուր բնույթ, նեղ
է նրանց թեմատիկան. մինչդեռ այժմ անհրաժեշտ է խոր կերպով և հանգամանորեն
պարզաբանել պարտիայի Ծրագրում և համագումարի որոշումներում առաջադրված
կոնկրետ պրոբլեմները:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, ինչպես նշված է Ծրա-
գրում, առաջնակարգ նշանակություն է ստանում բոլոր աշխատավորների գիտա-
կան աշխարհայացքի ձևավորման հարցը: Այդ աշխարհայացքի գաղափարական
հիմքը մարքսիզմ-լենինիզմն է, որպես փիլիսոփայական, տնտեսագիտական և սո-
ցիալ-քաղաքական հայացքների մի ամբողջական կուռ սիստեմ: Պարտիան խնդիր է
դնում ամբողջ բնակչությանը դաստիարակել գիտական կոմունիզմի ոգով, մարք-
սիստական-մատերիալիստական աշխարհայացքով: Այստեղից պարզ է, թե ինչպիսի
թափ և ինչպիսի հարուստ բովանդակություն պետք է ունենա պարտիական կազմա-
կերպությունների գաղափարական աշխատանքը:

Առանձնակի նշանակություն տալով քաղաքական-հասարակական գիտելիքների
տարածմանը՝ չպետք է մոռանալ նաև բնական գիտելիքների պրոպագանդան, որը
խոշոր նշանակություն ունի մասսաների գիտական-մատերիալիստական աշխար-
հայացքի ձևավորման գործում: Անհրաժեշտ է ուժեղացնել գիտա-աթեիստական
պրոպագանդան:

Պարտիան գաղափարական ճակատի աշխատողներին կոչ է անում՝ իմպերիա-
լիստական թշնամական իդեոլոգիայի դեմ վարել հարձակողական, անհաշտ պայքար,
համառ մաքառել անցյալի վնասակար սովորույթների դեմ, ինչը խանգարում է մեր
առաջընթացին, կոմունիստական շինարարության մեծ գործին: Ոչ թե պաշտպան-
վել, այլ հարձակվել բուրժուական իդեոլոգիայի դրսևորումների դեմ — այս է պա-
հանջվում իդեոլոգիական աշխատողներից:

Մեծ կարևորություն ունի ներկա պայմաններում անհաշտ պայքարը բուրժուա-
կան նացիոնալիզմի ռեցիդիվների դեմ, աշխատավորների դաստիարակությունը՝ սո-
ցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով: Չպետք է մոռանալ, որ իմպերիալիստա-
կան իդեոլոգիան ամեն կերպ ձգտում է արհեստականորեն հրահրել նացիոնալիզմի
ռեցիդիվները՝ իր թշնամական նպատակների համար: Պարտիական կազմակերպու-
թյունները պետք է մշակեն և իրականացնեն նորանոր միջոցառումներ աշխատա-
վորների ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ:

Պարտիայի XXII համագումարը, ՍՄԿՊ Ծրագիրը հատուկ նշանակություն են
տալիս երիտասարդության կոմունիստական դաստիարակության և կրթության հար-
ցերին: Համագումարում ՍՄԿՊ Ծրագրի մասին տված իր զեկուցման մեջ Ն. Ս.
Խրուշչովն ասաց. «Այժմ մենք մարդկանց պատրաստում ենք կոմունիստական հա-



սարակարգում ապրելու համար: Կոմունիզմի սերունդը հարկավոր է ձևավորել
մանկական հասակից, խնամել ու կոփել նրան պատանեկան հասակում, ուշադիր
հետևել այն բանին, որ մեզանում չլինեն բարոյական հաշմանդամներ՝ սխալ դաս-
տիարակության և վատ օրինակի զոհեր: Երբ պտղատու ծառերի մատղաշ տնկիները
վնասվում են այս կամ այն չափով, ապա որքան աշխատանք է հարկավոր ծախսել
դրանք խնամքով աճեցնելու ու կարգի բերելու համար, և այն էլ ոչ միշտ է դա հա-
ջողվում: Այդպես է նաև նոր սերնդի մարդկանց հարցը»:

Նկատի ունենալով այս խնդրի կարևորությունը, պարտիական կազմակերպու-
թյունները պետք է առավել չափով օգնեն կոմերիտական կազմակերպություններին
երիտասարդության շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուժե-
ղացնելու համար: Անհրաժեշտ է, մանավանդ, ուժեղացնել գաղափարական աշխա-
տանքը ուսուցիչների շրջանում: Պետք է ավելի լայնորեն կիրառել ուսուցիչների,
ինտելիգենցիայի մյուս խմբերի համար կազմակերպվող լեկտորիումների, կուլտու-
րայի համալսարանների, սեմինարների սիստեմը: Բոլոր միջոցները՝ գրականու-
թյունը, մամուլը, թատրոնը, գեղարվեստական ինքնագործունեությունը, ռադիոն,
կինոն պետք է ծառայեն ժողովրդի կոմունիստական դաստիարակության գործին,
պարտիայի Ծրագրի կենսահաստատ գաղափարների պրոպագանդման գործին:

Պետք է ասել, որ մեր ռեսպուբլիկայում դեռևս լրիվ չեն օգտագործվում բոլոր
միջոցները մասսաների մեջ քաղաքական-կուլտուրական աշխատանք կատարելու
համար: Հայկական ՍՍՌ Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ըն-
կերությունը պետք է ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկություններում, կոլտնտեսու-
թյուններում, սովխոզներում, գիտահետազոտական ինստիտուտներում, ուսումնա-
կան հաստատություններում, ամենուրեք, որտեղ կան կարող ուժեր, ստեղծի ընկե-
րության անդամների խմբեր, նոր թափ հաղորդի ժողովրդի մեջ քաղաքական ու գի-
տական գիտելիքների տարածման գործին:

Պրոպագանդիստական աշխատանքի ամբողջ հաջողությունը, նրա գաղափա-
րական բովանդակության բարձր մակարդակը, առաջին հերթին, կախված են պրո-
պագանդիստական կադրերի կազմից, նրանց ունակություններից: Ռեսպուբլիկա-
յում այժմ ավելի քան ութ հազար պրոպագանդիստներ անխոնջ աշխատանք են
տանում սովետական մարդկանց մարքսիզմ-լենինիզմի թեորիայով զինելու համար:
Նրանց գործունեությունը բարձր են գնահատում պարտիան, մեր ժողովուրդը:

Պարտիական կազմակերպությունները պետք է ավելի մեծ օգնություն ցույց
տան պրոպագանդիստներին, նրանց համար անհրաժեշտ պայմաններ ստեղծեն սիս-
տեմատիկորեն բարձրացնելու իրենց գաղափարական մակարդակը, պրոպագան-
դիստական աշխատանքի վարպետությունը: Պրոպագանդան կյանքի հետ կապելու
համար անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կոմիտեների քարտուղարները, պար-
տիական ու սովետական ղեկավար աշխատողներն ավելի հաճախ հանդես գան պրո-
պագանդիստների սեմինարներում, զինեն պրոպագանդիստներին կոմունիստական
շինարարության կոնկրետ փաստերով, ծանոթացնեն նրանց ռեսպուբլիկայի շրջան-
ների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների առջև կանգնած
տնտեսական խնդիրներին: Պրոպագանդիստներին պետք է ավելի շատ օգնեն պար-
տիական ու կոմերիտական թերթերն ու ժուռնալները, իրենց էջերում տպագրելով
կոնսուլտացիոն հոդվածներ, ընդհանրացնեն պրոպագանդիստների փորձը, խրա-
խուսեն լավագույն պրոպագանդիստների աշխատանքը:

Այժմ ավելի, քան երբեք, անհրաժեշտ է դարձել մասսաների մեջ ագիտացիոն
ու պրոպագանդիստական գործի կազմակերպման նկատմամբ գիտական մոտեցում

ցուցաբերելը, ապահովել այդ աշխատանքի մեթոդների գիտական ուսումնասիրու-
թյունը, ընդհանրացումը: Այդ ուղղությամբ մեծ անելիքներ ունեն պարտիական
լուսավորության կաբինետներին կից ստեղծված մեթոդական խորհուրդները:
Նկատի ունենալով գաղափարական աշխատանքի շարունակ աճող վերելքը,
պարտիական պրոպագանդայի ազդեցության ոլորտի հետագա ավելի մեծ աճը,
պարտիական կազմակերպությունները պետք է շարունակ հոգ տանեն պրոպագան-
դիստական կադրերի ռեզերվ պատրաստելու մասին: Այդ նպատակին են այժմ ծա-
ռայում մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները: Այս տարի ռեսպուբլի-
կայում ստեղծվել են գյուղական պրոպագանդիստների ռեզերվի պատրաստման
միամյա հեռակա դասընթացներ, որտեղ սովորում են 180 ընկերներ: Դասընթացնե-
րում պատրաստվում են պարտիական լուսավորության սիստեմի տարբեր խմբակ-
ների ու սեմինարների պրոպագանդիստներ: Պրոպագանդիստական ռեզերվների հե-
ռակա ուսուցման գործը հասարակական կարգով իրենց վրա են վերցրել Երևանի
Պետական համալսարանի, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական ինստիտուտների
հասարակագիտական մի շարք ամբիոններ և այլ բուհերի առանձին դասախոսներ:
Այժմ, երբ ամբողջ երկրով մեկ ծավալվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտ-
րությունների նախապատրաստումը, ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում
պետք է ավելի լայն ծավալ ստանա պրոպագանդիստական և ագիտացիոն աշխա-
տանքը: Մեր բոլոր աշխատավորներին պետք է լայնորեն պարզաբանել սովետական
դեմոկրատիայի հիմունքները, անցած չորս տարում ձեռք բերված վիթխարի նվա-
ճումները և այն մեծ խնդիրները, որոնք այսօր դրված են մեր առջև: Նրանց պետք է
ոգևորել ու մոբիլիզացնել պարտիայի առաջադրած խնդիրները պատվով կատարե-
լու և ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին ակտիվորեն մասնակցելու հա-
մար:
Պարտիական պրոպագանդայի ազդեցության ոլորտն ընդլայնելու, աշխատա-
վորների կոմունիստական դաստիարակության գործում նոր, արմատական բեկում
ստեղծելու համար պարտիական կազմակերպությունները պետք է գործադրեն գա-
ղափարական աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները, խուսափեն շաբլոնից, ուսում-
նասիրեն, ընդհանրացնեն կուտակված փորձը, գտնեն նոր ձևեր, նոր մեթոդներ:
Նպատակասլաց աշխատանք տանելու համար անհրաժեշտ է ավելի լավ կոոր-
դինացնել իդեոլոգիական աշխատողների տարբեր ջոկատների ջանքերը: Այդ տե-
սակետից ուշադրության է արժանի Մոսկվայի և Լենինգրադի պարտիական կազ-
մակերպությունների փորձը: Նրանք սկզբնական պարտիական կազմակերպություն-
ներում և պարտիական կոմիտեներին կից ստեղծում են իդեոլոգիական հանձնաժո-
ղովներ: Այդ արժեքավոր փորձին հավանություն տվին իդեոլոգիական հարցերին
նվիրված խորհրդակցության մասնակիցները: Անհրաժեշտ է մեզ մոտ, սկզբնական
պարտիական կազմակերպություններում ևս ստեղծել իդեոլոգիական հանձնաժողով-
ներ, որոնք պետք է աշխատեն հասարակական հիմունքներով:
Լայնորեն ծավալելով գաղափարական աշխատանքը, Կոմունիստական պար-
տիան մեր երկրի աշխատավորների բոլոր ստեղծագործ ուժերն ուղղում է մարդկու-
թյան երջանիկ ապագայի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման մեծ գործի
իրականացմանը:
Գաղափարական ճակատի աշխատողները իրենց ողջ ջանքերն ու եռանդը ի
սպաս կդնեն կոմունիզմի հաղթանակի այդ մեծ, համաշխարհային պատմական
գործին:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊՐԱԳԱՅԻ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՅԻ 50 ՏԱՐԻՆ

*Ա. ՍԻՄՈՆՅԱՆ*

Պատմական գիտությունների թեկնածու

*Հերոսական մաքառումների և դաժան փորձությունների դժվար ու փառա-
վոր ուղի է անցել Սովետական Միության Կոմունիստական պարտիան: Տակա-
վին XX դարի արշալույսին, երբ իր ուրույն խնդիրներով պատմության թատե-
րաբեմ էր իջել նոր հսկան՝ ռուսական ռևոլյուցիոն պրոլետարիատը, Վ. Ի. Լենինի
գլխավորությամբ 1903 թ. հիմք դրվեց մարքսիստական նոր տիպի պարտիայի,
որը հենց սկզբից իր հստակ ռևոլյուցիոն ծրագրով և ճկուն դասակարգային
տակտիկայով արմատապես տարբերվում էր ռեֆորմիստական գաղափարներով
տոգորված եվրոպական հին սոցիալ-դեմոկրատական պարտիաներից: Օպոր-
տունիզմի զանազան տարատեսակների դեմ մղված կատաղի մարտերում
պաշտպանելով իր ծրագրային ու կազմակերպչական դրույթների անաղարտու-
թյունը, լենինյան պարտիան իր շուրջը համախմբեց մեր երկրի պրոլետարիա-
տին, ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին գլխավորեց բանվոր դասա-
կարգի և աշխատավոր գյուղացիության համառ գրոհներն ընդդեմ ցարական
ինքնակալության: Սակայն ռևոլյուցիոն փոթորիկն անցավ, և շահագործող դա-
սակարգերին այդ ժամանակ հաջողվեց տանել «պյուռոսյան հաղթանակ», ուժե-
րի ծայրահեղ լարման գնով ժամանակավորապես փրկելով ինքնակալության
փտած ռեժիմը: Հաղթողների ցնծությունը երկար չտևեց: Շուտով սկսվեց ռևո-
լյուցիոն մրրիկների նոր շրջան, կրկին բարձրացավ ցարիզմի դեմ համաժո-
ղովրդական պայքարի հուժկու ալիքը:*
*Ռևոլյուցիոն նոր վերելքը Ռուսաստանում նոր խնդիրներ դրեց պարտիայի
առջև: Այդ խնդիրների լուծմամբ զբաղվեց ՌՍԴԲՊ VI (Պրագայի) կոնֆերեն-
ցիան, որը մեր պարտիայի տարեգրության մեջ մտավ որպես նրա փառապանծ
էջերից մեկը:*

***

*Պրագայի կոնֆերենցիան, որը ՌՍԴԲՊ շարքերից դուրս վռնդեց մենշևիկ-
ներին՝ ռուսական սոցիալ-դեմոկրատիայի մեջ բուրժուազիայի այդ գործակալ-
ներին, յուրահատուկ տեղ է գրավում պարտիայի պատմության մեջ: Մաքրելով
պարտիան օպորտունիստներից, նա դրանով իսկ ամփոփեց ռուսական սոցիալ-
դեմոկրատիայի պատմության մի ամբողջ ժամանակաշրջան, որը հաջորդեց
ռուսական առաջին ռևոլյուցիային: Իսկ ինչպիսի՞ն էր իրադրությունը պար-
տիայում այդ ժամանակաշրջանում:*

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից հետո, Լենինի արտա-
հայտությամբ, վրա հասան դժոխային ծանր տարիներ։ Սևհարյուրակային ռե-
ժակները կատաղի հարձակում սկսեցին պրոլետարիատի և նրա պարտիայի,
հատկապես բոլշևիկների վրա։ Ստեղծված դժվարին պայմաններ ստեղծվեցին
պարտիական աշխատանքի համար. խիստ կրճատվեց պարտիայի անդամների
թիվը. տասնյակ հազարավոր ռևոլյուցիոներներ դարձան ստոլիպինյան ռեակ-
ցիայի զոհը։

Սկսած 1903 թ. պարտիայի II համագումարից, երբ ՌՍԴԲՊ-ն պառակտվեց
երկու մասի, բոլշևիկները և մենշևիկները հանդես էին գալիս որպես իրարից
անջատ քաղաքական խմբեր, քաղաքական պարտիաներ։ 1906 թ. ՌՍԴԲՊ IV
համագումարում բոլշևիկներն ու մենշևիկները ձևականորեն միավորվեցին մեկ
պարտիայի մեջ։ Նրանք միասին անցկացրին նաև պարտիայի V համագումարը,
որը, չնայած մենշևիկների մեքենայություններին, ընդունեց բոլշևիկյան որո-
շումներ՝ պարտիական աշխատանքի և ռևոլյուցիոն պայքարի մի շարք կարևոր
հարցերի վերաբերյալ։ Այդ համագումարն ընտրեց պարտիայի Կենտրոնական
Կոմիտե, որի կազմի մեջ մտան բոլշևիկների հետ միասին նաև մենշևիկները և
ազգային սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ներկայացուցիչնե-
րը։ Վերջիններս սկզբում տատանվում էին բոլշևիկների և մենշևիկների միջև,
իսկ հետագայում, երբ հաստատվեց ստոլիպինյան ռեակցիան, հիմնականում
անցան մենշևիկների կողմը։

Լինելով ձևականորեն ՌՍԴԲՊ-ի մի ֆրակցիան, բոլշևիկները երբեք չեն
մերվել մենշևիկների հետ, այլ փաստորեն ունեցել են իրենց ինքնուրույն
պարտիան՝ իր հստակ քաղաքական պլատֆորմով և տակտիկայով հանդերձ։
Նրանք ունեին իրենց բոլշևիկյան կենտրոնը՝ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։
Ռեակցիայի տարիներին բոլշևիկները պարտիայի մեջ միակ քաղաքական ուժն
էին, որ մնացին հավատարիմ նրա ծրագրին և ռևոլյուցիոն սկզբունքներին։ Ռևո-
լյուցիայի տարիներին Լենինը պարտիական կազմակերպություններին սովո-
րեցնում էր հարձակվելու արվեստը, իսկ նոր հանգամանքներում, երբ ռևո-
լյուցիան վայրէջք էր ապրում, նա ցույց էր տալիս, թե ինչպես պետք է նա-
հանջել, որպեսզի ժամանակ շահվի ուժերը համալրելու և վերադասավորելու,
թշնամու դեմ նոր վճռական հարձակում կազմակերպելու համար։ Երկրում
ստեղծված նոր իրադրության պայմաններում Լենինը պարտիայի հիմնական
խնդիրն էր համարում՝ ամեն կերպ պահպանել ընդհատակյա կազմակերպու-
թյունները և ամրապնդել նրանց շարքերը, պաշտպանել մարքսիստական թեո-
րիան օպորտունիստների հարձակումներից, դաստիարակել բանվոր դասակար-
գին ռևոլյուցիոն տրադիցիաների ոգով, զուգակցելով լեգալ և անլեգալ աշխա-
տանքը՝ ամրապնդել կապը մասսաների հետ։

Ստոլիպինյան ռեակցիան խուճապի մատնեց մենշևիկներին։ Նրանք ամ-
բողջովին հրաժարվեցին պրոլետարիատի ռևոլյուցիոն պահանջներից, ցարիզ-
մի դեմ մղվող պայքարից, խնդիր դրին լիկվիդացնել ընդհատակյա մարքսիս-
տական պարտիան։ Լիկվիդատորության հանդես գալը, նշում էր Լենինը, պա-
տահական չէր։ Այն խոր սոցիալական երևույթ էր, որն անխզելիորեն կապված
էր հակառևոլյուցիոն լիբերալ բուրժուազիայի դիրքի և ռևոլյուցիայի մանրբուր-
ժուական ուղեկիցների իդեական քայքայման հետ։ Լիկվիդատորները ժխտում
էին ընդհանրապես պրոլետարիատի ռևոլյուցիոն դասակարգային պայքարը և,
հատկապես, նրա հեգեմոն դերը ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևո-



լյուցիայում։ Ակսելրոդը, Մարտովը, Դանը և ուրիշներ սկսեցին աշխատակցել
լիկվիդատորների լեգալ մամուլին։ Հարմարվելով ստոլիպինյան ռեժիմին, հա-
մաձայնելով նրա հետ, մենշևիկ-լիկվիդատորները ձգտում էին ստանալ ցարա-
կան կառավարության թույլտվությունը՝ պահպանելու իրենց գոյությունը որ-
պես իբր «բանվորական պարտիա»։

Գաղափարական տարընթացությունը, անկումայնությունն ընդգրկեցին
նաև բոլշևիկների շարքերում եղած առանձին մանրբուրժուական, անկայուն
տարրերին, որոնք միավորվեցին օտզովիստների «ձախ» օպորտունիստական
ֆրակցիոն խմբի մեջ (Բոգդանով, Ալեկսինսկի, Լունաչարսկի և ուրիշներ)։
Օտզովիստները, որոնց Լենինը «շուռ տված լիկվիդատորներ» էր անվանում,
գտնում էին, որ ռեակցիայի պայմաններում պարտիան պետք է սահմանա-
փակվի ընդհատակյա աշխատանքով և այդ պատճառով էլ առաջարկում էին
Պետական դումայից ետ կանչել սոցիալ-դեմոկրատական դեպուտատներին։
Օտզովիստների դիրքորոշումը նույնպես տանում էր դեպի պրոլետարիատի
մարքսիստական պարտիայի լիկվիդացում։

Բոլշևիկները Լենինի գլխավորությամբ համառ պայքար էին մղում նաև
Տրոցկու դեմ։ Քողարկվելով իր՝ «ֆրակցիաներից դուրս» գտնվելու վերաբեր-
յալ կեղծ ֆրազներով, Տրոցկին ձգտում էր մի պարտիայի մեջ միավորել ռևո-
լյուցիոներներին և օպորտունիստներին։ Նա Վիեննայում հրատարակվող իր
թերթի էջերում զրպարտում էր բոլշևիկներին, պաշտպանում լիկվիդատորնե-
րին, աղավաղում ռուսական առաջին ռևոլյուցիայի պատմությունը։ Հրաժար-
վելով ենթարկվել պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, նա միաժամանակ
ջանքեր էր գործադրում իր ֆրակցիոն թերթիկը պարտիայի հաշվին հրատարա-
կելու համար։ Տրոցկուն և լիկվիդատորներին աջակցում էին հաշտվողականնե-
րը, բանվորական մասսաներից կտրված արտասահմանյան ներպարտիական
մյուս խմբերը, որոնք ջանում էին «պարտիայի միավորման» և «հաշտության»
վերաբերյալ ճառերով «քաղաքական փոքր կապիտալ» շահել, իրականում
կազմալուծելով պարտիական աշխատանքը։

Այդ տարիներին ՌՍԴԲՊ-ի կյանքում շրջադարձային կետ էր նրա V կոն-
ֆերենցիան, որը տեղի ունեցավ Փարիզում 1908 թ. դեկտեմբերի 21—27-ը
(1909 թ. հունվարի 3—9-ը)։ Կոնֆերենցիայի աշխատանքի հիմքում դրվեց
Լենինի «Արդի մոմենտի և պարտիայի խնդիրների մասին» զեկուցումը, որի վե-
րաբերյալ ընդունվեց նրա գրած բանաձևը։ Որոշելով պարտիայի տակտիկան,
նրա ռևոլյուցիոն գիծը ռեակցիայի ամբողջ ժամանակաշրջանի համար, Լենինը
պայքար էր մղում երկու ճակատով՝ ընդդեմ մենշևիկ-լիկվիդատորների և ընդ-
դեմ օտզովիստների ու մյուս օպորտունիստների։ Լենինն ընդգծում էր, որ պար-
տիան չի կարող ընթանալ առաջ՝ առանց գաղափարապես և կազմակերպչորեն
ջախջախելու սոցիալ-դեմոկրատիայի շարքերում ծվարած հակապարտիական
տարրերին։

Այդ կոնֆերենցիայից հետո պարտիայի համար մղվող պայքարը ավելի
սուր բնույթ ստացավ։ Ստեղծված ծանր պայմաններում միայն բոլշևիկները
Լենինի գլխավորությամբ իրենց ցույց տվեցին որպես անկոտրում ռևոլյուցիո-
ներներ, արիաբար պաշտպանելով պարտիան բազմաթիվ թշնամիներից։

Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1911 թ. մայիսի վերջերին և հունիսի
սկզբներին Փարիզում տեղի ունեցավ Կենտկոմի արտասահմանում ապրող ան-
դամների խորհրդակցություն, որտեղ որոշվեց հրավիրել պարտիական կոնֆե-

րենցիա, որի նախապատրաստության համար ստեղծվեցին Կազմակերպչական հանձնաժողով և Արտասահմանյան տեխնիկական հանձնաժողով: Կազմակերպչական հանձնաժողովի թեկնածուներ հաստատվեցին Մ. Վլադիմիրսկին, Ս. Սպանդարյանը և ուրիշներ: Շուտով արտասահմանից Ռուսաստան մեկնեցին Գ. Օրջոնիկիձեն և Ի. Շվարցը, որոնց առջև խնդիր էր դրված՝ ստեղծել Ռուսական կազմակերպչական հանձնաժողով (ՌԿՀ) և անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք տանել կոնֆերենցիայի համար: Օրջոնիկիձեն եղավ Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում և Անդրկովկասում, իսկ Շվարցը՝ Ուրալում:

Սեպտեմբերի 29-ին Բաքվում տեղի ունեցավ ՌԿՀ-ի առաջին նիստը, որին մասնակցում էին Ստ. Շահումյանը, Գ. Օրջոնիկիձեն, Ս. Սպանդարյանը, Ե. Ստասովան և ուրիշներ: Սակայն հաջորդ օրը ձերբակալվեց Ստ. Շահումյանը, և մյուս ընկերները ստիպված տեղափոխվեցին Թիֆլիս, ուր տեղի ունեցան ՌԿՀ-ի մյուս նիստերը: ՌԿՀ-ն հատուկ թռուցիկով դիմեց պարտիական բոլոր կազմակերպություններին՝ պատգամավորներ ընտրել կոնֆերենցիայի համար: Նոյեմբերին Գ. Օրջոնիկիձեն վերադարձավ արտասահման, Ի. Շվարցը գնաց Պետերբուրգ, իսկ Ս. Սպանդարյանը՝ Մոսկվա: Վերջին երկու ընկերները պետք է կազմակերպեին պատգամավորների մեկնումը արտասահման՝ կոնֆերենցիայի: Նոյեմբերի 24-ին, սակայն, ձերբակալվեց Ի. Շվարցը. Ս. Սպանդարյանը ստիպված էր լինել նաև Պետերբուրգում, իսկ այնուհետև Մերձբալթյան երկրամասի մի շարք վայրերում, կատարելով իր վրա դրված խնդիրը:

1911 թ. դեկտեմբերի 27—30-ը, կոնֆերենցիայի նախօրյակին, Լենինը անցկացրեց արտասահմանյան բոլշևիկյան խմբերի խորհրդակցություն: Հաշվի առնելով կոնկրետ իրադրությունը, խորհրդակցությունը որոշեց արտասահմանյան բոլշևիկյան խմբերը միավորել մեկ միասնական կազմակերպության մեջ, հավանություն տալով ՌԿՀ-ի միջոցառումներին և հայտարարեց, որ «բոլոր ուժերով նրան պաշտպանելը յուրաքանչյուր պարտիականի պարտքն է»: Դա անհրաժեշտ էր, քանի որ և՛ մենշևիկ-լիկվիդատորները, և՛ տրոցկիստները ձգտում էին ամեն կերպ «օրենքից դուրս» հայտարարել ՌԿՀ-ն:



1912 թ. հունվարի 5-ին (18-ին) Պրագայում, չեխական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ժողովրդական տանը, բացվեց VI Համառուսաստանյան պարտիական կոնֆերենցիան: Կոնֆերենցիայի տեխնիկական նախապատրաստմանը և հաջող անցկացմանը խոշոր չափով նպաստեցին չեխական սոցիալ-դեմոկրատները, որոնք արեցին այդ նպատակով հնարավոր ամեն բան: Կոնֆերենցիայի աշխատանքները ղեկավարում էր Վ. Ի. Լենինը: Մինչև կոնֆերենցիայի բացումը նա հարցափորձ էր անում պատգամավորներին նրանց ընտանիքների, ապրելու միջոցների, բանվորների տրամադրությունների և բազմաթիվ ուրիշ հարցերի մասին: Դրա հետ միասին նա դելեգատներին ծանոթացնում էր քննարկվող հարցերի վերաբերյալ իր թեզիսներին, հարցնում, թե ինչ են սպասում նրանք կոնֆերենցիայից: «Մենք լսում էինք,— գրում է իր հիշողություններում Պետերբուրգի կազմակերպությունից կոնֆերենցիայի պատգամավոր բանվոր Ե. Օնուֆրիևը,— և մեզ թվում էր, թե Լենինը շրջել է ամբողջ Ռուսաստանը, եղել գործարաններում և գյուղացիական խրճիթներում, այնքան նա լրիվ էր արտահայտում ժողովրդի ամենանվիրական իղձերը և կարիքները»:



Կոնֆերենցիայի աշխատանքներին մասնակցում էին 15 պատգամավորներ, որոնք ներկայացնում էին Ռուսաստանի ավելի քան 20 պարտիական կազմակերպություններ, այդ թվում Պետերբուրգի, Մոսկվայի, Կենտրոնական արդյունաբերական շրջանի, Կիևի, Բաքվի, Թիֆլիսի, Եկատերինոսլավի, Նիկոլաևի, Կազանի, Սարատովի, Վիլնոյի, Դվինսկի կազմակերպությունները: Մի շարք ուրիշ կազմակերպություններ, որոնք այս կամ այն պատճառով չէին կարողացել ուղարկել իրենց պատգամավորներին, կոնֆերենցիային հղած գրավոր դիմումներով հայտնեցին, որ իրենք միանում են նրա որոշումներին:

Կոնֆերենցիան բացվեց Լենինի ներածական ճառով: Ջերմորեն ողջունելով պատգամավորներին, նա նշեց, որ կոնֆերենցիային են հրավիրվել առանց բացառության Ռուսաստանի բոլոր պարտիական կազմակերպությունները և չեն եկել միայն նրանք, ովքեր չեն ցանկացել օգնել պարտիային: Լենինի առաջարկությամբ կոնֆերենցիան իրեն հայտարարեց որպես պարտիական բարձրագույն օրգան, որին իրավունք էր վերապահվում ընտրել ղեկավար կենտրոններ և վերակենդանացնել պարտիան: Նկատի ունենալով բանվոր դասակարգի միասնության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների ամրապնդման անհրաժեշտությունը, կոնֆերենցիան հանձնարարեց ՌՍԴԲՊ Կենտրոնական Կոմիտեին անդուլ պայքարել պարտիայի մեջ մտնող ազգային կազմակերպությունների հետ միասնություն ստեղծելու համար և հույս հայտնեց, որ Ռուսաստանի բոլոր ազգությունների սոցիալ դեմոկրատ բանվորները ձեռք-ձեռքի տված կպայքարեն հանուն պրոլետարիատի ընդհանուր գործի վերջնական հաղթանակի:

Երկրի քաղաքական դրության վերլուծությունն իր արտահայտությունը գտավ Լենինի մյուս զեկուցման մեջ, որը նվիրված էր արդի մոմենտին ու պարտիայի խնդիրներին և այդ հարցի վերաբերյալ նրա մշակած բանաձևին: Բնութագրելով ռևոլյուցիոն շարժման նոր վերելքը, նա խնդիր դրեց բանվոր դասակարգի ղեկավարությամբ միավորել աշխատավորական մասսաների ուժերը ընդդեմ ցարիզմի: Որպես գլխավոր հերթական լոզունգներ նորից առաջադրվեցին ծրագիր-մինիմումի պահանջները՝ դեմոկրատական ռեսպուբլիկա, ութժամյա բանվորական օր, ամբողջ կալվածատիրական հողի բռնագրավում: Հենց այս լոզունգներն էլ դարձան պարտիայի քաղաքական ագիտացիայի առանցքը IV Պետական դումայի ընտրական կամպանիայի ժամանակ:

Այդ կապակցությամբ կոնֆերենցիան ուշադրություն դարձրեց այն բանի վրա, որ օրակարգի գլխավոր հարցերից մեկը, ինչպես միշտ, մնում էր պրոլետարական մասսաների սոցիալիստական դաստիարակությունը, նրանց սերտ համախմբումը և կազմակերպումը՝ դասակարգային շահերի գիտակցության հիման վրա: Իսկ դրա համար ամենից առաջ անհրաժեշտ էր ուժեղացնել աշխատանքը ՌՍԴԲՊ ընդհատակյա կազմակերպությունը վերականգնելու ուղղությամբ, այն հաշվով, որ նա կարող լիներ ավելի լայն թափով օգտագործել լեգալ հնարավորությունները, իր ետևից տանել մասսաներին, դառնալ պրոլետարիատի քաղաքական ելույթները ղեկավարող ուժ: Պարտիայի առաջնորդը ուշի-ուշով հետևում էր տեղերից զեկուցումներին, որոնց նվիրվեց հինգ նիստ: Նրան հատկապես հետաքրքրում էին տեղական կազմակերպությունների անդամների թվի, կազմի և գործունեության վերաբերյալ տվյալները, քանի որ նրանց մարտունակությամբ էր պայմանավորված պրոլետարիատի պայքարի հաջողությունը:

Կոնֆերենցիայի աշխատանքներում կարևոր տեղ էր գրավում պայքարը լիկվիդատորության դեմ, ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի շարքերը օպորտունիզմից մաքրելու հարցը։

Բոլշևիկներն անողոք պայքար էին մղում լիկվիդատորության դեմ, որովհետև դրված էր «հին, անլեգալ պարտիայի... լինելու կամ չլինելու հարցը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 359)։ Կոնֆերենցիան ընդունեց Լենինի գրած «Լիկվիդատորության և լիկվիդատորների մասին» խորագրով բանաձևը, որտեղ նշվում էր, որ ՌՍԴԲՊ-ն արդեն երկար ժամանակ է, ինչ վճռական պայքար է մղում լիկվիդատորության դեմ, որը հանդիսանում է «բուրժուազիայի ազդեցության արտահայտիչը պրոլետարիատի վրա»։ Արձանագրելով, որ լիկվիդատորների խումբն իր վարքագծով «վերջնականապես իրեն դրել է պարտիայից դուրս», կոնֆերենցիան նրանց վտարեց պարտիայից։ Նա պարտիայի բոլոր անդամներին կոչ արեց պայքարել լիկվիդատորության դեմ, «պարզաբանել նրա ամբողջ վնասակարությունը բանվոր դասակարգի ազատագրման գործի համար և լարել բոլոր ուժերը՝ անլեգալ ՌՍԴԲՊ-ն վերականգնելու և ամրացնելու համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 17, էջ 595)։

Այսպիսով, Պրագայի կոնֆերենցիան, ինչպես հետագայում նշում էր Լենինը, բոլորեց ՌՍԴԲՊ կողմից լիկվիդատորների դեմ մղվող քառամյա պայքարը։

Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի շարքերում, հատկապես արտասահմանում, կային նաև թաքնված լիկվիդատորներ և նրանց ջատագովներ։ Մենշևիկ-գոլոսովականները, վպերիոդականները, տրոցկիստները և ուրիշ ֆրակցիոներներ ոչ միայն հավակնություն ունեին հանդես գալու պարտիայի անունից արտասահմանում, այլև ձգտում էին «ղեկավարել» տեղական պարտիական կազմակերպությունները Ռուսաստանում, կազմալուծելով նրանց աշխատանքը։ Կոնֆերենցիան սահմանեց, որ արտասահմանյան ոչ մի խումբ, որը չի ենթարկվում պարտիայի Կենտկոմին, իրավունք չունի օգտագործել պարտիայի անունը՝ կապեր հաստատելու տեղական պարտիական կազմակերպությունների հետ։ Քանի որ այդ խմբերը հրաժարվեցին ենթարկվել այս որոշմանը, ապա նրանք շուտով փաստորեն մնացին պարտիայից դուրս։

Պրոլետարական պարտիայի մաքրումը օպորտունիստական տարրերից վճռական նշանակություն ունեցավ բոլշևիկների կողմից մասսաներին նվաճելու և նրանց ռևոլյուցիոն պայքարը կազմակերպելու գործում։

Կոնֆերենցիան լսեց Լենինի զեկուցումը Միջազգային սոցիալիստական բյուրոյի աշխատանքի մասին։ Զեկուցման մեծ մասը նվիրված էր գերմանական սոցիալ-դեմոկրատիայի շարքերում եղած ներպարտիական պայքարին։ Նա քննադատեց գերմանական այն սոցիալ-դեմոկրատներին, որոնք օպորտունիստական հայացքներ էին զարգացնում Միջազգային սոցիալիստական բյուրոյում։ Կոնֆերենցիան ողջունեց գերմանական սոցիալիստների հաջողությունը Ռայխստագի ընտրությունների ժամանակ։ Նրա աշխատանքներում զգալի տեղ էին գրավում նաև մի շարք ուրիշ միջազգային հարցեր։

Անարգանքի սյունին գամելով ռուսական լիբերալիզմը, որը սատարում էր ուրիշի հողերը զավթելու ցարիզմի քաղաքականությանը, կոնֆերենցիան ընդունեց հատուկ բանաձև 1911 թ. չինական ռևոլյուցիայի մասին, որում նշվում է. «...չին ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի համաշխարհային նշանակությունը» և խոր համակրանք հավաստում չին ռևոլյուցիոներներին։



Դեռևս մինչև կոնֆերենցիան, 1911 թ. դեկտեմբերի 7-ին, Լենինը ստացել էր Պարսկաստանի դեմոկրատական պարտիայի կենտկոմի հեռագիրը, որն ուղարկվել էր Թեհրանից ՌՍԴԲՊ Կենտկոմին։ Այնտեղ ասված էր. «Ջերմորեն բողոքում ենք ցարիզմի և անգլիական իմպերիալիզմի կողմից մեր ազատությունը խեղդելու դեմ։ Գահի վրա բարձրացնելով բռնակալ Մոհամեդ Ալիին և իրենց ուլտիմատումով օժանդակելով ռեակցիայի հաղթանակին, նրանք իրենց ձեռքերը ներկում են պարսիկ ժողովրդի արյունով, ոչնչացնելով նրա կոնստիտուցիան և քաղաքական ազատությունները»։ Կոնֆերենցիան խստորեն դատապարտեց ցարական կլիկի ավազակային քաղաքականությունը, արտահայտելով իր ջերմ համակրանքը պարսիկ ժողովրդի նկատմամբ։ Մի ուրիշ բանաձևում հատուկ ընդգծվեց Ֆինլանդիայի և Ռուսաստանի բանվոր դասակարգի ընդհանուր խնդիրների միասնությունը ցարիզմի և լիբերալ բուրժուազիայի դեմ մղվող պայքարում։ Կոնֆերենցիայի բոլոր այս որոշումներում իրենց արտահայտությունը գտան պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, որ պաշտպանում էին Ռուսաստանի կոմունիստները։

Հատկապես կարևոր նշանակություն ուներ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ընտրությունը։ Կենտկոմի կազմում ընտրվեցին Վ. Ի. Լենինը, Ֆ. Ի. Գոլոշչեկինը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ս. Ս. Սպանդարյանը և ուրիշներ։ Կենտկոմի թեկնածուներ հաստատվեցին՝ Ա. Ս. Բուբնովը, Մ. Ի. Կալինինը, Ե. Դ. Ստասովան և Ս. Գ. Շահումյանը։ Կոոպտացիոն կարգով Կենտրոնական Կոմիտեի անդամներ հաստատվեցին Ի. Վ. Ստալինը, Գ. Ի. Պետրովսկին և Յա. Մ. Սվերդլովը։ Ի դեպ, անձի պաշտամունքի տարիներին, պարտիական-քաղաքական գրականության մեջ, անց էր կացվում այն սխալ թեզը, թե իբր բոլշևիկյան նոր տիպի պարտիա ստեղծվեց Պրագայի կոնֆերենցիայում։ 1903—1912 թվականների բոլշևիկյան պարտիայի գործունեության այդ ժամանակամիջոցն անհիմն կերպով դիտվում էր որպես «իսկական մարքսիստական պարտիայի» ստեղծման նախապատրաստման ժամանակաշրջան։ Նշենք և այն, որ այս առնչությամբ միտումնավոր կերպով Ստալինին վերագրվել են չեղած ծառայություններ։

Պրագայի կոնֆերենցիայի նշանակությունը Լենինը տեսնում էր այն բանում, որ նա ի մի բերեց բոլշևիկների և մենշևիկների միջև մղվող երկարամյա պայքարի արդյունքները, հավաստեց բոլշևիկների հաղթանակը, ավելի ամրապնդեց Ռուսաստանում նոր տիպի, մարքսիստական պարտիան։ Դեն նետելով օպորտունիստական տարրերին, բոլշևիկները ձեռնամուխ եղան ժողովրդական մասսաների նոր հուժկու ռևոլյուցիոն վերելքը գլխավորելու գործին։ Ռուսական կոմունիստների խզումը օպորտունիստներից կարևորագույն նշանակություն ուներ նաև միջազգային բանվորական շարժման բախտի համար։

Լիկվիդատորները և նրանց ջատագովները՝ տրոցկիստները, բունդականները, վպերիոդականները և մյուս օպորտունիստները չարամտորեն դիմավորեցին Պրագայի կոնֆերենցիայի որոշումները։ Սակայն նրանք անզոր էին խոչընդոտելու պարտիայի շարքերի ամրապնդմանը. տեղական պարտիական կազմակերպությունները, պարտիայի հիմնական կորիզը ընթանում էին լենինյան Կենտրոնական Կոմիտեի հետևից։ Բոլշևիկները Ռուսաստանում և արտասահմանում մեծ աշխատանք ծավալեցին՝ կենսագործելու Պրագայի կոնֆերենցիայի որոշումները։ Կոնֆերենցիայի աշխատանքներն ավարտվելուց երկու օր հետո, հունվարի 19-ին Վ. Ի. Լենինը և Ս. Ս. Սպանդարյանը արդեն Լայպցիգում

էին, որտեղ հանդիպեցին երրորդ Պետական դումայի դեպուտատ Ն. Գ. Պոլե-
տաևի՝ «Զվեզդա» թերթի կազմակերպիչներից մեկի հետ, քննարկելով մասսա-
յական ամենօրյա բոլշևիկյան թերթի՝ «Պրավդա»-ի հրատարակության հարցը։
Որոշվեց, թե ինչ աղբյուրներից պետք է նյութական միջոցներ հայթայթվեին
թերթի հրատարակության համար։ Փետրվարի սկզբներին այդ գործով անլե-
գալ կերպով Պետերբուրգ եկավ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ
Գ. Կ. Օրջոնիկիձեն։

Զինված Պրագայի կոնֆերենցիայի որոշումներով, պարտիան մեր երկրի
բանվոր դասակարգին և գյուղացիությանը տարավ դեպի նոր ռևոլյուցիա, դեպի
ազատություն և սոցիալիզմ։

***

Հինգ տասնյակ տարի է մեզ բաժանում այն պատմական օրից, երբ Պրա-
գայի ընդհատակյա պայմաններում, բոլշևիկների մի փոքրիկ խումբ ռևոլյու-
ցիոն մտքի տիտան Վ. Ի. Լենինի գլխավորությամբ քննարկում էին մեր երկրի
բազմալեզու և բազմացեղ ժողովուրդների ջանքերը միավորելու, նրանց պայ-
քարը ճիշտ հունի մեջ դնելու, ցարիզմի ու կապիտալիզմի բիրտ տիրապետու-
թյունը Ռուսաստանում տապալելու հարցը։ Այն ժամանակ ամբողջ աշխարհում
փոքր էր այն մարդկանց թիվը, որոնք լրջորեն ընդունում էին աշխարհի ռևո-
լյուցիոն վերափոխման վերաբերյալ բոլշևիկների հավակնությունները։ Սա-
կայն մեր երկրի կատարած ռևոլյուցիոն թռիչքը, նրա կյանքի բոլոր բնագա-
վառներում կատարված արմատական փոփոխությունները կրկին ու կրկին հաս-
տատում են, թե ինչքան հանճարեղ էր Լենինը, կանխագուշակելով, որ անսպառ
է, անհատնում իր ազատագրությունը նվաճած ժողովրդի ստեղծագործա-
կան ուժը։

ՍՄԿՊ XXII համագումարը, որը իրավամբ պ՝ մության մեջ մտավ որպես
կոմունիզմ կառուցողների համագումար, մեր ցիալիստական Հայրենիքը
կոմունիզմի ուղեծիր։ Եվ այսօր, երբ կոմունիզմը դառնում է իրա-
գուրս բերեց կոմունիզմի ուղեծիր։ Եվ այսօր, երբ կոմունիզմը դառնում է իրա-
կանություն, մենք խորին երախտագիտությամբ ենք հիշում բոլոր նրանց, ով-
քեր տոգորված անսահման հավատով լուսաշող ապագայի նկատմամբ, դեռևս
ցարական ռեժիմի մռայլ տարիներին բոլոր ուժերով անձնազոհ պայքարում
էին ժողովրդի բարօրության համար։ Պրագայի կոնֆերենցիայի մասնակից-
ները գտնվում էին այդ հերոս մարտիկների առաջին շարքերում։ Իսկ կոնֆե-
րենցիան, որն իր ժամանակ մեծ դեր խաղաց մեր պարտիայի կյանքում, պատ-
մության մեջ մտավ որպես լենինյան պարտիա ստեղծելու և պրոլետարիա-
տին ու գյուղացիությանը նրա շուրջը համախմբելու համար մղված պայքարի
տարեգրության լուսաշող ուղեկիցներից մեկը։

---

# ՄԵԾ ԾՐԱԳՐԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Ա. ԱԴՈՅԱՆ

Մասնավոր սեփականության վերացումը նշանակում է մարդկային բոլոր զգացմունքների ու հատկությունների լիակատար էմանսիպացիա։

Կ. ՄԱՐՔՍ

## ՄԵՐ ՔՐԵԴՈՆ

Աշխարհով մեկ, գարնան կենսաբեր հողմի նման ՍՄԿՊ XXII համագումարի դահլիճից հնչեց նոր կյանքի՝ ազատագրված աշխատանքի, խաղաղության ու երջանկության հիմնը։ ՍՄԿՊ նոր Ծրագիրը՝ ստեղծարար մարքսիզմի մեր քրեդոն, ի մի ամփոփելով սոցիալիզմի հաղթանակների հարուստ փորձը, կոմունիստական հասարակարգի պայծառ ուղիները սահմանեց։ Խտացնելով իր մեջ լենինիզմի անշեջ հուրը, այն արդեն աշխարհի բոլոր կոմունիստների ուղեցույց փարոսն է դարձել։

Ձեր շուրջը նայե՛ք, թանկագին բարեկամ, կոմունիզմը մարդկանց բերելով ստեղծագործական ավյուն ու բարօրություն՝ դառնում է մեր բերկրալի առօրյան։ Պարտիայի վերջին համագումարներից հետո, որքա՜ն հաճելի է մեր ճակատը շոյում լենինյան դարի զվարթացնող սյուգը։ Վերականգնված լենինյան բարքերի մթնոլորտում ի՜նչ ազատ է շնչում մարդը։ Օրը օրի հյուսվելով ազատ աշխատանքի միլիոնավոր օջախներում, կոմունիզմի գերող երգն է ծավալվում մեր Հայրենիքի բոլոր շեներում։ Սովետական մարդիկ արձագանքելով պարտիայի դեպի գործ մեծանշանակ կոչին՝ վառ սխրանքների նորանոր օրինակներ են տալիս։

Վ. Ի. Լենինը նկատել է, որ մասսաների կենդանի ստեղծագործությունն է նոր հասարակության գլխավոր գործոնը։ Կենդանի, ստեղծարար սոցիալիզմը ժողովրդական հոծ զանգվածների ստեղծածն է։ Ուստի և բնական է, երբ պարտիայի Ծրագրի բարոյական առանցքը բուն այդ մասսաների բարեկեցության ապահովումն է։ Ազատ և արդար, ստեղծագործ ու երջանիկ կյանք։ Ահա թե որն է ՍՄԿՊ Ծրագրի բարոյական աղը։ Խիստ բնորոշ է, որ մարդկային ազատագրական մաքառումների հարուստ պատմության մեջ դա ամենաբարոյական այն փաստաթուղթն է, որի նվիրական նպատակը՝ բարու, մարդկային արդարության հավերժ թագավորությունն է։







Այդ վեհ իդեալի կենսագործման համար պարտիան նախագծել է ո՛չ միայն դրա նյութատեխնիկական բազայի ստեղծումը առաջիկա քսանամյակում, այլև նոր մարդու ձևավորումը։

Հայտնի է, որ մեր երկրում սոցիալիզմի կառուցման տարիներին արտադրական նոր հարաբերությունների հիման վրա աշխատավորները ձեռք բերին հոգեկան այնպիսի առաղձ և հատկություններ, որոնք միանգամայն հնարավոր են դարձնում կոմունիստական հասարակարգի մարդու աստիճանական ձևավորումը, մի մարդ, որը տոգորված է աշխատանքային բարձր կարգապահությամբ, մարդկային ավելի կատարյալ, նոր կապեր ստեղծելու, աշխատանքի նկատմամբ բոլորովին նոր վերաբերմունքի բուռն տենչով։ Այս շատ շնորհակալ և շատ ազնիվ աշխատանքը, շեշտում է Լենինը, կպսակվի իրական կոմունիստական նիստուկացի վերջնական հաղթությամբ։

Կապիտալիզմի օրոք իշխող իդեոլոգիան բուրժուականն է։ Բուրժուական հոգեբանությամբ է վարակված և նրա «մարդկային նյութը»։ «Դրանում է կոմունիստական հասարակություն կառուցելու դժվարությունը, բայց հենց դրանումն է և այն կառուցելու հնարավորության և հաջողության երաշխիքը։ Մարքսիզմը հենց նրանով է տարբերվում հին ուտոպիական սոցիալիզմից, որ վերջինս ցանկանում էր նոր հասարակություն կառուցել ոչ թե մարդկային նյութի մասսայական այն ներկայացուցիչներից, որոնք ստեղծվում են արյունալի, կեղտոտ, կողոպտչական, խանութպանական կապիտալիզմի կողմից, այլ հատուկ ջերմոցներում աճեցված առանձնապես առաքինի մարդկանցից։ Այդ ծիծաղելի միտքը այժմ բոլորի համար ծիծաղելի է, և բոլորն այդ միտքը թողել են, բայց ոչ բոլորն են ցանկանում կամ կարողանում հասկանալ դրա հակառակ մարքսիզմի ուսմունքը, հասկանալ, թե ինչպես կարելի է (և պետք է) կոմունիզմ կառուցել մասսայական մարդկային այն նյութից, որը փչացվել է դարերի ու հազարամյակների ստրկությամբ, ճորտությամբ, կապիտալիզմով, մանր մասնատված տնտեսությամբ, շուկայում տեղ գտնելու համար, արտադրանքի կամ աշխատանքի ավելի բարձր գնի համար բոլորի կողմից բոլորի դեմ մղվող պատերազմով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 502)։

Լենինի այս դրույթից հետո անցել է ավելի քան չորս տասնամյակ և մարդկանց վերափոխելու ու կոմունիստաբար դաստիարակելու ասպարեզում մեր երկիրը հասել է որակական խոշոր փոփոխությունների։ Սոցիալիզմի կառուցման տարիներին սոցիալ-տնտեսական նոր հարաբերությունների ոլորտում մեծապես փոխվել է նաև «մարդկային նյութը», ստեղծվել է սովետական քաղաքացին, որն իր բարձր գիտակցականությամբ և անձնուրացությամբ լծվել է կոմունիզմի կառուցման վեհ գործին։ Սոցիալիստական ռևոլյուցիայի պատմական նվաճումներից մեկն էլ մարդկային այն նոր զանգվածների ծնունդն է, որոնց կամքով ու ջանքով կոմունիզմի պալատն է կառուցվում։

Հարկավ, այսօր էլ մեր քաղաքացիների որոշ մասը դեռևս զերծ չէ հին աշխարհի թուլություններից ու թերություններից, որոնց հետևանքով կոմունիստական բարոյականության սկզբունքների պատվաստումը հանդիպում է խոչընդոտների, որովհետև, ինչպես Լենինն էր ասում՝ եթե հասարակական ուզածդ երևույթը դիտեք իր զարգացման ընթացքում, ապա նրանում մշտապես կլինեն անցյալի մնացուկները, ներկայի հիմքերը և ապագայի սաղմերը։

Հիրավի, արդեն այժմ ականատես ենք այն բանին, երբ կոմունիստական բարոյականության սոցիալիստական հիմքերի վրա վաղվա կոմմադույն մո-



ռալի սաղմերն են ծլարձակում։ Մի պրոցես, որի զարգացման հետևանքով մարդիկ կսկսեն միմյանց վերաբերվել իբրև ազատների ու հավասարների, որոնց համար անհրաժեշտություն կլինի առաջնորդվել չինական հնագույն իմաստությամբ՝ «Ինչ որ չես ցանկանում քեզ, մի անի ուրիշին» և ընդհակառակը։ Ի վերջո, կոմունիզմի բարոյականությունը մարդկանց կդաստիարակի այնպես, որ վերոհիշյալ արդարացի և օգտակար սկզբունքը կդառնա մարդկանց վարվեցողության իրական չափանիշը։

Նույնիսկ կապիտալի երկրներում շատերը համոզվում են, որ կոմունիզմ կառուցող ՍՍՌՄ-ը ձգտում է աշխարհից երեսից վերացնել պատերազմները։ Սա արդեն բարոյական այնպիսի մի կռվան է, այնպիսի կատարյալ բարիք, որը քարը քարի վրա չի թողնում բուրժուական եսամոլության բարոյականությունից։ Ի տես ամբողջ մարդկության իրականանում է հանճարեղ Մարքսի գիտական կանխատեսումն այն առթիվ, թե «Հին աշխարհին հակառակ... նոր հասարակությունն է ծնվում, որի միջազգային սկզբունքը կլինի՝ խաղաղություն, որովհետև յուրաքանչյուր ժողովրդի մոտ կլինի միևնույն տիրակալը՝ աշխատանքը» (К. Маркс и Ф. Энгельс, Избр. произведения, т. I, стр. 449)։

Կոմունիզմի, աշխատանքի թագավորության շահերը պահանջում են արմատախիլ անել եսամոլության ու ընչաքաղցության այն երևույթները, որոնք հատուկ են հին աշխարհին, ուր ամենքն են պայքարում բոլորի դեմ, որտեղ «յուրաքանչյուրն իր համար, միայն աստվածն է բոլորի համար»։

Այդ պայքարը ամենուր պետք է տարվի համոզման, կրթության, դաստիարակության և առհասարակ հասարակական ներգործության և մանկավարժական մեթոդներով։ Որքան հաջող մասսաներին պատվաստենք կոմունիստական բարոյականության սկզբունքները, այնքան արագ և դյուրին կլինի հաղթահարել անիծյալ անցյալի մեզ ապականող տրադիցիաները, որոնք կենցաղի և նախապաշարմունքի ուժ ունեն դեռ։

## ԹՌՈՒՑԻԿ ԱԿՆԱՐԿ

Չկա հասարակություն առանց բարոյականության, այսինքն՝ առանց այն որոշակի հասկացությունների ու կանոնների, որոնց համեմատ կարգավորվում է մարդկանց վարքագիծը։ Սակայն տարբեր դասակարգեր ունեցել են և ունեն իրենց յուրահատուկ բարոյականությունը, որի հիմքում ընկած են նրանց տնտեսական շահերը։ Վաղուց է ապացուցվել, որ բարոյական ըմբռնումների ու նորմերի վրա իրենց կնիքն են դնում հասարակական կյանքի օբյեկտիվ օրենքները։ Այդպես է, որովհետև բարոյականությունը հասարակական հարաբերությունների արգասիք է և այն էլ՝ պատմական զարգացման որոշ աստիճանի վրա գտնվող հասարակական հարաբերությունների։

Մարդն ինքը փոխվել ու հազարամյակների էվոլյուցիա է ապրել գերազանցապես հասարակական միջավայրում։ Նրա հոգեբանությունն ու բնավորությունը խորապես ենթակա են հասարակական միջավայրի ներգործությանը։ Կոմունիստների պայքարի բարոյական իմաստն այն է, որ նրանք ձգտում են «...այնպես կառուցել շրջապատի աշխարհը, որ մարդը նրանում ճանաչի ու յուրացնի բուն մարդկայինը, որպեսզի ինքն իրեն ճանաչի որպես մարդ։ Եթե ճիշտ ըմբռնված շահը ողջ բարոյականության սկզբունքն է, ուրեմն պետք է ձգտել նրան, որպեսզի առանձին մարդու մասնավոր շահը համընկնի համամարդկա-

յին շաճերին» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. II, стр. 144—146։—Ընդգծում-
ները մերն են — Ա. Ա.)։
Հետևաբար, դասակարգային հասարակության մեջ բարոյական հասկա-
ցությունների ու նորմերի հիմքում դասակարգային շահն է դրված։ Այն դա-
սակարգը, որը պատմության կամքով կոչված է կապիտալիզմի գերեզմանա-
փորը լինելու, նրա բարոյականությունն էլ գալիս է փոխարինելու բուրժուա-
կան բարոյականությանը։ Դա պրոլետարիատն է, որի բարոյականությունը
«ամենից շատ տևականություն ունի»։ Վերջինս ծագել ու ձևակերպվել է գոր-
ծարաններում ու ֆաբրիկաններում, նրա մղած դասակարգային ռևոլյուցիոն
մարտերում։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթությամբ ռեալ և հիմնավոր
նախադրյալներ են ստեղծվում պրոլետարիատի բարոյականության զարգաց-
ման համար, մի բարոյականություն, որի կենսունակության կռվաններից մեկն
էլ այն է, որ դա իր մեջ ներառնում է բոլոր ժողովուրդների աշխատավոր զանգ-
վածների բարոյականության համամարդկային տարրերը։
Դասակարգային գոռ պայքարում իր դավանած բարոյականությունը պրո-
լետարիատը հիմնավորում է այն գիտական էթիկայի (բարոյախոսության) օգ-
նությամբ, որը մարքսիստական-լենինյան փիլիսոփայության բաղկացուցիչ
մասն է ու կյանքի է կոչված բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի ամե-
նալ,ենսական պահանջներով։ Որպես կոմունիզմ կառուցող քաղաքացու դաս-
տիարակության հույժ կարևոր միջոց, այդ գիտական էթիկայի կենսունակու-
թյունը պայմանավորված է պրոլետարիատի որդեգրած բարոյական սկզբունք-
ներով։
Մարքսիզմը նշում է, թե տարբեր բարոյականությունների միջև կան որոշ
ընդհանուր գծեր, և որ բարոյականության ոլորտում ևս գործում է զարգացման
օրենքը։ Այս հետևության օգտին են խոսում գիտության կուտակած բազմաթիվ
փաստերը։ Համեմատած այլ բարոյական տեսությունների հետ, պայքարից
սերված կոմունիստականը ոչ միայն ամենաճշմարտացին է, այլև ամենա-
մարդկայինը։ Լինելով հասարակական գիտակցության ձևերից մեկը, բարոյա-
կանությունը կոչված է ներգործելու հասարակական մարդկանց հասարակական
վարքի վրա։
Մինչև Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը կոմունիստական բա-
րոյականության բուռն զարգացման համար չկային, կամ գրեթե բացակայում
էին պատշաճ պայմանները։ Իր դիկտատուրան հաստատելով, պրոլետա-
րիատը հնարավորություն ստացավ բարոյապես զարգանալու, ուրեմն և զար-
գացնելու իր բարոյականությունը։ Այս առումով, սոցիալիստական ռևոլյուցիա-
յի նպատակը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդուն դնել այնպիսի պայմաններում,
որոնք նպաստեն նրա մարդկայնացման արգասաբեր ընթացքին։ Կյանքի ճան-
գամաճճերը դարձնելով մարդկային, ասում է Մարքսը, կփոխվի նաև մարդու
հոգեկան խառնվածքը բարեբար հանգամանքների համեմատ։ Ահա թե ինչու
կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ մարդու բարոյական
վերածնության ռեալ հող է պատրաստվում։
Բուրժուական բարոյականության այլևայլ դպրոցների համար բնորոշն այն
է, որ դրանք տարբեր հանգով արդարացնում են կապիտալիստական շահագոր-
ծումը, մասնավոր սեփականության ինստիտուտը։ Ահա թե ինչու փիլիսոփա
է. Կանտի բարոյախոսության առանցքը հանդիսացող կատեգորիկ իմպերատի-
վը (որի էությունն «անձնական երջանկությունն» է), Ֆ. Մերինգի հատու բնորոշ-



մամբ՝ «Աստվածաշնչի» տասը պատվիրանների վերանորոգված հրատարակու-
թյունն է։ Դժվար չէ ցույց տալ, որ շահագործող դասակարգերի բարոյական
ըմբռնումներն ու նորմերը տոգորված են եսամոլության, ընչաքաղցության ու
կեղեքման գաղափարներով։ Այս բանը ցցուն կերպով հիմնավորվում է թեկուզ
արդարության ու անարդարության հասկացությունների էվոլյուցիայով։
Մինչև մասնավոր սեփականության առաջացումը արդարության հիմքում
արյան վրեժն էր դրված՝ արյունը հատուցվում էր արյամբ։ Սա տևել է հազար-
ամյակներ։ Բայց մասնավոր սեփականության ծագումով պատկերը փոխվեց.
թափված արյունը կարելի էր հատուցել իրերով, արժեքներով։ Այսպիսով,
մարդկային արյունը համադրվելով արժեքների հետ, գին ստացավ։ Պատմու-
թյան ալեհեր անցյալում, երբ հասարակության մեջ արդյունքները հավասար
էին բաշխվում, անարդարության պատկերացումը կարող էր դրսևորվել միայն
անհամաչափ մթերքների բաղդատումով։ Ինչպես ճիշտ նկատել է ականավոր
մարքսիստ Պ. Լաֆարգը, այդ հանգամանքը հին աշխարհի պլութագորիստները
արտահայտում էին նժարների հավասարակշռությունը չփոխելու աքսիոմայով։
Ուստի և բնական է, որ իր հայտնագործմամբ, կշեռքը դարձավ «արդարության
և անարդարության չափանիշը»։
Այսպիսով, բարոյականության կատեգորիաները պայմանավորված են
հասարակական միջավայրով, իսկ դասակարգային հասարակության մեջ՝ դա-
սակարգային շահերով։ Անդրադառնալով հարցի մյուս կողմին, Ֆ. Էնգելսն
ասում էր. «Միայն այն ժամանակ է բաշխման անհավասարությունը թվում ան-
արդարացի, երբ հասարակությունը հղի է նոր ուժերով, երբ կիսով չափ իր
դարն ապրել է այդ հասարակությունը։ Այդ բողոքը խոսում է այն մասին, որ
տնտեսակարգն անհաշտելի արատներ ունի ու քայքայվում է, որի պրոցեսում
ապագայի տարրերն են գոյանում» («Անտի-Դյուրինգ», էջ 131)։
Ի՞նչ է հետևում վերոհիշյալից։ Այն, որ սեփականությունը ժխտող, այն
չարիք համարող բարոյական նոր ըմբռնումը կարող էր ծագել զարգացման
այն աստիճանի վրա, երբ նրա բախումներն արդեն ծվատում էին հասարակա-
կան օրգանիզմը, երբ հին բարոյական նորմերը սնանկացել էին իրականում։
Առհասարակ ճիշտ է Պ. Լաֆարգի այն պնդումը, որ սեփականությունը որպես
մի ֆուրիա մխրճվեց մարդկանց սրտում, սասանեց նրանց ամենակայուն զգաց-
մունքները, բնազդները, հասկացություններն ու նոր կրքեր հարուցեց։ Այդ նոր
կրքերի գագաթնակետը կապիտալի կուտակման գարշելի տենչն է, որը վերա-
նում է նրա խորտակումից հետո միայն։

## ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՌՈՒՄՈՎ

Սոցիալական բոլոր շարժումներն ունեցել են իրենց գաղափարախոսու-
թյունն ու իրենց հատուկ բարոյախոսությունը։ Ճիշտ է Յա. Էնգստը, երբ
ասում է. «Բարոյականություն ասելով մենք հասկանում ենք այն նորմերի ամ-
բողջությունը, որոնք պարտադիր են մարդուն հասարակական վարքագծի սա-
հմանում, որոնք դրված են հասարակական հարաբերությունների փնահատ-
ման հիմքում» (Я. Энгст, «Некоторые проблемы научной этики», 1960 г.,
стр. 31)։
Տալով այս ճիշտ բնորոշումը, մեր կարծիքով, հեղինակը որոշ հիմքեր ու-
ներ եզրակացնելու, որ չնայած իրենց տարբերությանը, բարոյականությունն ու
քաղաքականությունն առօրյա կյանքում դրսևորվում են միահյուսված։ Իր նպա-

տակների իրագործման ճանապարհին քաղաքականությունը միշտ էլ օգտվել է և օգտվում է բարոյական ըմբռնումներից։ Մեր պարտիայի վարած կոմունիզմի կառուցման և խաղաղության քաղաքականությունը տոգորված է կոմունիզմի բարոյականությամբ և ուժգին կռվաններ է վերցնում վերջինիս զինանոցից։

Որքան մոտենում ենք կոմունիզմին, այնքան մեծանում է բարոյականության վերափոխիչ դերը։ Որքան նվազում են պետության հարկադրական ֆունկցիաները, այնքան ընդարձակվում է բարոյական նորմերի ներգործության ոլորտը։

Պատմության թատերաբեմ մտնելով իր կենսահաստատ աշխարհայացքով, պրոլետարիատը վերջ է տալիս ո՛չ միայն գեխ ու ցոփ վայելքին, այլև ունայնության ու ասկետիզմի դատարկ քարոզին, քանի որ նա «...ամենքից քիչ կարիք ունի աշխարհիկ բարիքներից հրաժարվելու քարոզին»։ Նրա իդեալն այն հասարակությունն է, ուր վայելքի հնարավորություններից օգտվում են բոլոր հանրօգուտ աշխատողները։ Իրենց վիճակի բերումով, ասում է Ֆ. Էնգելսը, բանվորներն ավելի մարդասեր են, քան բուրժուաները։ Նրանց համար ամեն մարդ՝ մարդ է, իսկ բուրժուայի համար բանվորը լիակատար մարդ չէ։ Այս ճշմարտության հոյակապ և ժամանակակից իլյուստրացիան դուք կգտնեք ռուսերեն վերջերս լույս տեսած ամերիկյան գրող Իրվինգ Սթոունի «Կյանքի **ծարավը**» ուսանելի վեպում։ Ով կամենում է տեսնել, թե ինչպես է կապիտալիստական բարոյականությունը ճզմում ու ոչնչացնում հանճարին, թող կարդա Վինսենթ Վան-Գոգի ողբերգական կյանքին նվիրված այդ արժեքավոր գիրքը։

Իբրև բարոյական պատկերացումների ու սկզբունքների մի ամբողջություն, պրոլետարական մորալն առաջացել է ու կազմավորվել իրեն ծնող դասակարգի հետ, որպես կենդանի բողոք ընդդեմ բուրժուական տիրող անարդարության, իբրև երկու դասակարգերի շահերի անհաշտելիության ուղղակի հետևանք, որպես բանվորների գլխում կապիտալիստական իրողության արտացոլում։ Ահա թե որտեղ պետք է որոնել պրոլետարական բարոյականության ակունքը և կենսունակությունը։ Ահա թե ինչու շահագործվող պրոլետարիատի բարոյականությունն իր բնույթով մարտատենչ է և միշտ հակակայում է բուրժուական մորալի դրսևորումներին։

Պատմական այն ցրբաժան կետից սկսած, երբ մարդն սկսեց վաճառել իր արդյունքը, մանավանդ իր աշխատուժը՝ հիմք դրվեց նրա ամենաահավոր ողբերգությանը։ Արդյունքն օտարվեց իր ստեղծողին, հակադրվեց նրան, իշխեց նրա վրա որպես սոցիալական տարերք։ Իր արտադրած **բարիքներին** խորթ մարդը մի բևեռում, իսկ դրանց տերն ու տնօրինողը մյուս՝ աշխատանքին հարկադրական բնույթ հաղորդեցին։ Հարկադրանքը այնպիսի սպառիչ և բթացնող ներգործություն է ունենում արտադրողի վրա, որ միապաղաղ մեքենայական հոնդյունի պայմաններում «մարդուն հասցնում է անասունի վիճակի»։

Իր ծագման ու ձևավորման օրից կոմունիստական շարժումը հրապարակ է եկել բարոյական ամենավեհ սկզբունքներով, որոնք ձևավորվել են նրա ազատագրական մաքառումներին համընթաց և ծառայել են նրա քաղաքական պայքարին։ Որքան տվյալ երկրի պրոլետարիատի պայքարը հասուն է քաղաքականապես ու կուլտուրապես, այնքան հստակ ու հիմնավոր են նրա բարոյական նկրտումները։ Լենինը պարզապես ասում էր, թե պրոլետարիատը կապիտալիզմի օրոք պետք է ձգտի իր կենսապայմանների բարվոքմանը, որի շնորհիվ նա «բարձրանում է թե՛ բարոյապես, թե՛ մտավորապես, թե՛ քաղաքականա-



պես, ավելի ունակ է դառնում իրագործելու իր ազատագրական մեծ նպատակները» (Երկեր, հ. 18, էջ 68)։

Անցյալ դարի քառասնական թվականներին երիտասարդ Էնգելսը ուսումնասիրելով եվրոպական և հատկապես անգլիական պրոլետարիատի ծանր վիճակը, հանգավ այն հետևության, որ մինչև արդյունաբերական ռևոլյուցիան բանվորներն անմարդավայել են ապրել։ Միայն այդ պատմական իրադրությունը ստիպեց բանվորներին խորհել ու մարդավայել կյանքի ձգտել, սրտացավորեն նշում է նա։ Նյութական անտանելի զրկանքները և հասարակական կեղեքումը բանվորներին այն աստիճանի էին բթացրել, որ մարդիկ չէին զգում իրենց նվաստացումը։ Ահա թե ինչն է արգելակում պրոլետարական բարոյական հայացքների զարգացմանը կապիտալի տիրապետության պայմաններում։

Արտադրամիջոցները վերադարձնելով արտադրողների կոլեկտիվին՝ սոցիալիստական ռևոլյուցիան վերացրեց հազարամյակների մեծագույն անարդարությունը, հաստատեց ազատագրված աշխատանքի մորալի թագավորությունը։ Այստեղ պետք է որոնել կոմունիստական բարոյականության արդարացիության հիմքերի հիմքը։ Անդրադառնալով աշխատանքի բնույթին կապիտալի երկրներում, Ֆ. Էնգելսը գրել է. «Եթե **կամավոր արտադրողական գործունեությունը** մեզ հայտնի **հաճույքներից բարձրագույնն** է, ապա մահակի տակ կատարվող աշխատանքը՝ ամենադաժան, ամենանվաստացնող տանջանքն է։ Կա՞ ավելի սարսափելի բան, քան ամեն օր առավոտից երեկո անհրաժեշտորեն անել այն, ինչ դուք ատում եք։ Եվ որքան ուժգին է բանվորի մարդկային զգացումը, նա այնքան խոր պետք է ատի իր գործը, որովհետև նա ընկալում է հարկադրանքը և այդ աշխատանքի նպատակազրկությունը։ Հանուն ինչի՞ է նա աշխատում։ Ստեղծագործական աշխատանքի սիրո՞ւն։ Դրդված բնական շարժառիթների՞ց։ Ամենևին ոչ» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. II, стр. 351։— Ընդգծումները մերն են — Ա. Ա.)։

Փորձենք մի րոպե թափանցել հանճարեղ կոմունիստի երիտասարդ տարիներին ասված այս ճշմարտացի խոսքերի էության մեջ։ Որ մարդկային **մեծագույն հաճույքն** իրոք արգասաբեր, **հանրօգուտ** աշխատանքն է, դա հաստատում է յուրաքանչյուր ազնիվ աշխատող իր իսկ պրակտիկայից ելնելով։ Ուրեմն, այն հասարակությունը, որը վերջ է տալիս մահակի ամենադաժան մորալին ու ստեղծում ազատ աշխատանքի տիրապետությունը՝ դա **ամենաբարոյական** հասարակությունն է։ Աշխատանքը դարձնելով կամավոր **իր և բոլորի** համար, կոմունիզմը պատմության մեջ առաջին անգամ մեծագույն **իմաստ է հաղորդում ոչ միայն** միլիոնների **արտադրողական գործունեությանը**, այլև առհասարակ մարդու գոյությանը։ Հանրային բարօրությունը դարձնելով անհատական բարեկեցության միակ ռեալ նախապայման, կոմունիզմը երեկվա ամենածանր բեռը դեն է շպրտում աշխատավորի շլինքից և աշխատանքը վերածում վայելքի աղբյուրի։

ՍՄԿՊ Ծրագրի գերագույն նպատակը հենց այնպիսի հասարակության ստեղծումն է, ուր մարդկային բոլոր հաճույքներից բարձրագույնը կդառնա բոլորի համար անհրաժեշտ, կվերածվի կյանքի վայելքների մշտական աղբյուրի։ Այս տեսանկյունով եթե վեր առնենք պարտիայի Ծրագիրը, ապա այն մարդկային ամենաբյուրեղ բարոյականության զարգացման առհավատչյան է։

Այն ամենը, **ինչ նպաստում է կոմունիզմի ավարտին՝ բարոյական է, ինչ խանգարում է՝ անբարոյական**։ Ահա թե ինչու կոմունիզմ կառուցողի վարքա-

գծի հիմքում դրվում է մի չափանիշ՝ հանրության բարօրության սատարումը։ Այս բանին նպաստում է, անշուշտ, սոցիալիստական բաշխման այն սկզբունքը, որ քանի արտադրողական աշխատանքը չի դարձել գերագույն հաճույք, և հարստությունը չի հոսում գետերի նման, յուրաքանչյուր ոք հանրային ֆոնդից պետք է ստանա ըստ իր աշխատանքի քանակի ու որակի։ Ինչո՞ւ։ Որովհետև զարգացման այդ աստիճանի վրա դա միակ, հնարավոր ու արդար հատուցումն է։ Այստեղ տակավին գործում է (ոչ ամբողջապես) նժարների օրենքը՝ կստանաս տվածիդ համեմատ։ Սա կոմունիզմի առաջին փուլն է, երբ դեռ հնարավոր չէ մեր կյանքի բոլոր բնագավառներում բավարարել մարդկանց՝ ըստ իրենց պահանջմունքների։

Ինչպես տեսնում ենք, պարտիայի ծրագրի բարոյական սկզբունքների հիմքում դրված է աշխատանքի ինքնակառավարումն առանց պորտաբույծների, առանց շահագործողների։ Հաջողությամբ կառուցելով կոմունիզմի հարուստ նյութատեխնիկական բազան, առաջիկա քսան տարում մեր ժողովուրդը դուրս կգա մի փարթամ դաշտ, ուր անարգել կծաղկեն մարդու ֆիզիկական ու մտավոր կարողությունները։ Այս պայմաններում մարդիկ ի վիճակի կլինեն լիովին հաղթահարելու հնից եկող ընչաքաղցության տենչը։

Միայն նյութական հարստության և առատության այդ պայմաններում ավելի ռեալ հիմքեր կստեղծվեն կոմունիստական բարոյականության և մարդկային մտավոր կարողությունների կատարելագործման համար։ Իր ժամանակին հանճարեղ Գյոթեն անդրադառնալով բանականության զարգացման հարցին, նկատել է. «Մեր աշխարհը հյուսված է անհրաժեշտությունից և պատահականություններից։ Մարդու բանականությունը կեցել է դրանց արանքում և կարողանում է իշխել դրանց վրա։ Նա իր կեցության հիմքը անհրաժեշտությունն է համարում. իսկ պատահականությունները նա կարողանում է վանել, ուղղություն տալ և օգտագործել դրանց։ Եվ մարդը միայն այն ժամանակ կարող է արժանանալ աշխարհիկ աստծո տիտղոսին, երբ նրա բանականությունը կեցել է ամուր և անսասան։ Վա՜յ նրան, ով ջահել հասակից սովոր է անհրաժեշտության մեջ ինչ-որ կամայականություն որոնել...» (В. Гёте, Соб. соч., том VII, 1935 г., стр. 81)։

Միայն կոմունիստական հասարակարգն է ապահովում բանականության տիրապետությունը տարերքի վրա, միայն այդ հասարակարգի բարոյականությունն է մարդկանց ձերբազերծում էգոիզմի, մորթապաշտության նվաստացնող կապանքներից, աղտեղություններից։ ՍՄԿԿ Ծրագրի ամբողջ ոգին ու բովանդակությունը վկայում են այն մասին, որ նյութատեխնիկական նոր հիմքերի վրա առնացող նոր մարդը կհաղթանակի այնքան արագ, որքան հաջող պայքար տարվի այն բարոյականության դեմ, որի մարմնացնողը «պատրաստ է այս կամ այն անցորդին համարել աշխարհիս ամենազզվելի և ամենաստոր արարած լոկ այն պատճառով, որ նա դիպել է նրա մազոլին։ Իր մազոլը նա դարձնում է մարդկային գործունեության չափանիշը» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. I, стр. 132)։

Սովետական քաղաքացուն դաստիարակել այն ոգով, որպեսզի նա իր գործունեության չափանիշը համարի հանրօգուտը, որպեսզի նա իր շահը համադրի կոլեկտիվի, հայրենիքի հանրային շահերին, այլ ոչ հակառակը. սա է կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանի բարոյական դաստիարակության մեր ելակետը։ Նոր մարդու դաստիարակները, որոնք



նույնպես կարիք ունեն վերադաստիարակման, առաջնորդվում են Մարքսի այն դրույթով, որ «Մարդը կարող է տրորել իմ մազոլը, չդադարելով ազնիվ, ավելի քան գերազանց մարդ լինելուց։ Ճիշտ այնպես, ինչպես դուք մարդկանց չպետք է գնահատեք ձեր մազոլների տեսակետից, այնպես էլ նրա վրա չպետք է նայեք ձեր մասնավոր շահի աչքերով» (նույն տեղը)։

Պարտիայի Ծրագիրը լիովին տոգորված է կոլեկտիվիզմի բարոյականության հաղթանակի ոգով, ինդիվիդուալիզմի ու էգոիզմի մնացուկների հաղթահարման անհրաժեշտության խոր գիտակցականությամբ։ Ընթանալով Ծրագրի բարոյախոսության պատվաստման ուղիով, մեր երկիրը աշխարհում կլինի առաջինը, որտեղ անհատի մտավոր ու ֆիզիկական ունակությունների ծաղկման ամենապարարտ հողը կստեղծվի։ Այդ է ապացուցում ՍՍՌՄ գոյության հարուստ պատմությունը։ Գաղտնիք չէ, որ շահագործողական հասարակությունների օրոք «ազատ են եղել միայն իշխող դասակարգերին պատկանող անհատները»։ Մինչդեռ իրականում կոլեկտիվ կամքի, կոլեկտիվ շահերի ու կոլեկտիվ բանականության ապահովման պայմաններում՝ սոցիալիստական պրոլետարիատի իշխանության պայմաններում այն անհատներն են վայելում ազատություն, ովքեր ջանում են հանուրի ու իրենց երջանկության համար։

Մարքսիզմի հիմնադիրները խորապես համոզված էին, որ կոմունիստական հասարակությունը միակն է, որտեղ «անհատների յուրակերպ և ազատ զարգացումը դադարում է ֆրազ լինելուց», դառնում է շոշափելի իրականություն։ Ուրեմն, կոմունիզմի հիմքերի կերտումով մեր երկրում ստեղծվում է ռեալ բազա, որպեսզի անհատը վերագտնի իրեն՝ կոլեկտիվի զարգացման բարձր աստիճանի վրա։ Առաջիկա տարիներին մեր երկրի բուռն ծաղկմամբ «կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար» կմոտենա, «իսկ հետագայում նաև» կձուլվի «համաժողովրդական սեփականությանը՝ դառնալով միասնական կոմունիստական սեփականություն»։

Այն ծրագիրը, որն իր գործնական խնդիրն է համարում կառուցել այնպիսի մի հասարակարգ, որտեղ մարդկանց զգացմունքները և հատկությունները օբյեկտիվորեն և սուբյեկտիվորեն դառնում են իրոք մարդկային՝ դա ամենաբարոյական և ամենամարդկային ծրագիրն է։

Ահա թե ինչու ամբողջ առաջավոր մարդկությունն իր բարոյական երազների իրագործումն է տեսնում պարտիայի Ծրագրի կենսագործման մեջ։ Առաջավոր մարդկությունը նրա հետ է կապում մեր դարաշրջանի մարդկային լավագույն տենչերի մարմնացումը։

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԿՈԴԵՔՍԸ

Պարտիայի Ծրագրում պատշաճ հակիրճությամբ և հստակությամբ ձևակերպվեց կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որը կոնկրետորեն մեզ տալիս է այն բարձրագույնը, ինչին հասել է առաջավոր մարդկությունը բարոյականության բնագավառում։ Ո՛չ միայն կոմունիստական միջազգային շարժման, այլև աշխատավոր մարդկության բարոյական ամենապրոգրեսիվ նկրտումների գիտական հիմնավորումն ու ամփոփումն է այդ կոդեքսը։

Մեր դարաշրջանի կոմունիզմի մարտիկը՝ սովետական քաղաքացին, ամենուր պետք է աչքի զարնի իր գաղափարայնությամբ, Հայրենիքի հանդեպ տածած անհուն սիրով։ Նա չունի մի այլ աշխարհայացք, քան կոմունիստականը։ Նա չունի մի այլ մորալ, քան կոմունիզմի մորալը։ Նա գիտակցում է, որ սո-

գծի հիմքում դրվում է մի չափանիշ՝ հանրության բարօրության սատարումը: Այս բանին նպաստում է, անշուշտ, սոցիալիստական բաշխման այն սկզբունքը, որ քանի արտադրողական աշխատանքը չի դարձել գերագույն հաճույք, և հարստությունը չի հոսում գետերի նման, յուրաքանչյուր ոք հանրային ֆոնդից պետք է ստանա ըստ իր աշխատանքի քանակի ու որակի: Ինչո՞ւ: Որովհետև զարգացման այդ աստիճանի վրա դա միակ, հնարավոր ու արդար հատուցումն է: Այստեղ տակավին գործում է (ոչ ամբողջապես) նժարների օրենքը՝ կատարյալ չափի համեմատ: Սա կոմունիզմի առաջին փուլն է, երբ դեռ հնարավոր չէ մեր կյանքի բոլոր բնագավառներում բավարարել մարդկանց՝ ըստ իրենց պահանջմունքների:

Ինչպես տեսնում ենք, պարտիայի ծրագրի բարոյական սկզբունքների հիմքում դրված է աշխատանքի ինքնակառավարումն առանց պորտաբույծների, առանց շահագործողների: Հաջողությամբ կառուցելով կոմունիզմի հարուստ նյութատեխնիկական բազան, առաջիկա քսան տարում մեր ժողովուրդը դուրս կգա մի փարթամ դաշտ, ուր անարգել կծաղկեն մարդու ֆիզիկական ու մտավոր կարողությունները: Այս պայմաններում մարդիկ ի վիճակի կլինեն լիովին հաղթահարելու հնից եկող ընչաքաղցության տենչը:

Միայն նյութական հարստության և առատության այդ պայմաններում ավելի ռեալ հիմքեր կստեղծվեն կոմունիստական բարոյականության և մարդկային մտավոր կարողությունների կատարելագործման համար: Իր ժամանակին հանճարեղ Գյոթեն անդրադառնալով բանականության զարգացման հարցին, նկատել է. «Մեր աշխարհը հյուսված է անհրաժեշտությունից և պատահականություններից: Մարդու բանականությունը կեցել է դրանց արանքում և կարողանում է իշխել դրանց վրա: Նա իր կեցության հիմքը անհրաժեշտությունն է համարում, իսկ պատահականությունները նա կարողանում է վանել, ուղղություն տալ և օգտագործել դրանց: Եվ մարդը միայն այն ժամանակ կարող է արժանանալ աշխարհիկ աստծո տիտղոսին, երբ նրա բանականությունը կեցել է ամուր և անսասան: Վա՜յ նրան, ով ջահել հասակից սովոր է անհրաժեշտության մեջ ինչ-որ կամայականություն որոնել...» (В. Гёте, Соб. соч., том VII, 1935 г., стр. 81):

Միայն կոմունիստական հասարակարգն է ապահովում բանականության տիրապետությունը տարերքի վրա, միայն այդ հասարակարգի բարոյականությունն է մարդկանց ձերբազերծում էգոիզմի, մորթապաշտության նվաստացնող կապանքներից, ագահությունից: ՍՄԿՊ Ծրագրի ամբողջ ոգին ու բովանդակությունը վկայում են այն մասին, որ նյութատեխնիկական նոր հիմքերի վրա առնացող նոր մարդը կհաղթանակի այնքան արագ, որքան հաջող պայքար տարվի այն բարոյականության դեմ, որի մարմնացումը «պատրաստ է այս կամ այն անցորդին համարել աշխարհիս ամենազզվելի և ամենաստոր արարած լոկ այն պատճառով, որ նա դիպել է նրա մաշկին: Իր մաշկը նա դարձնում է մարդկային գործունեության չափանիշը» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. I, стр. 132):

Սովետական քաղաքացուն դաստիարակել այն ոգով, որպեսզի նա իր գործունեության չափանիշը համարի հանրօգուտը, որպեսզի նա իր շահը համարի կոլեկտիվի, հայրենիքի հանրային շահերին, այլ ոչ հակառակը. սա է կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանի բարոյական դաստիարակության մեր ելակետը: Նոր մարդու դաստիարակները, որոնք



նույնպես կարիք ունեն վերադաստիարակման, առաջնորդվում են Մարքսի այն դրույթով, որ «Մարդը կարող է տրորել իմ մաշկը, չդադարելով ազնիվ, ավելի քան գերազանց մարդ լինելուց: Ճիշտ այնպես, ինչպես դուք մարդկանց չպետք է գնահատեք ձեր մաշկների տեսակետից, այնպես էլ նրա վրա չպետք է նայեք ձեր մասնավոր շահի աչքերով» (նույն տեղը):

Պարտիայի Ծրագիրը լիովին տոգորված է կոլեկտիվիզմի բարոյականության հաղթանակի ոգով, ինդիվիդուալիզմի ու էգոիզմի մնացուկների հաղթահարման անհրաժեշտության խոր գիտակցականությամբ: Ընթանալով Ծրագրի բարոյախոսության պատվաստման ուղիով, մեր երկիրը աշխարհում կլինի առաջինը, որտեղ անհատի մտավոր ու ֆիզիկական ունակությունների ծաղկման ամենապարարտ հողը կստեղծվի: Այդ է ապացուցում ՍՍՌՄ գոյության հարուստ պատմությունը: Գաղտնիք չէ, որ շահագործողական հասարակությունների օրոք «ազատ են եղել միայն իշխող դասակարգերին պատկանող անհատները»: Մինչդեռ իրականում կոլեկտիվ կամքի, կոլեկտիվ շահերի ու կոլեկտիվ բանականության ապահովման պայմաններում՝ սոցիալիստական պրոլետարիատի իշխանության պայմաններում այն անհատներն են վայելում ազատություն, ովքեր ջանում են հանուրի ու իրենց երջանկության համար:

Մարքսիզմի հիմնադիրները խորապես համոզված էին, որ կոմունիստական հասարակությունը միակն է, որտեղ «անհատների յուրակերպ և ազատ զարգացումը դադարում է ֆրազ լինելուց», դառնում է շոշափելի իրականություն: Ուրեմն, կոմունիզմի հիմքերի կերտումով մեր երկրում ստեղծվում է ռեալ բազա, որպեսզի անհատը վերագտնի իրեն՝ կոլեկտիվի զարգացման բարձր աստիճանի վրա: Առաջիկա տարիներին մեր երկրի բուռն ծաղկմամբ «կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար» կմոտենա, «իսկ հետագայում նաև» կձուլվի «համաժողովրդական սեփականությանը՝ դառնալով միասնական կոմունիստական սեփականություն»:

Այն ծրագիրը, որն իր գործնական խնդիրն է համարում կառուցել այնպիսի մի հասարակարգ, որտեղ մարդկանց զգացմունքները և հատկությունները օբյեկտիվորեն և սուբյեկտիվորեն դառնում են իրոք մարդկային՝ դա ամենաբարոյական և ամենամարդկային ծրագիրն է:

Ահա թե ինչու ամբողջ առաջավոր մարդկությունն իր բարոյական երազների իրագործումն է տեսնում պարտիայի Ծրագրի կենսագործման մեջ: Առաջավոր մարդկությունը նրա հետ է կապում մեր դարաշրջանի մարդկային լավագույն տենչերի մարմնացումը:

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԿՈԴԵՔՍԸ

Պարտիայի Ծրագրում պատշաճ հակիրճությամբ և հստակությամբ ձևակերպվեց կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որը կոնկրետորեն մեզ տալիս է այն բարձրագույնը, ինչին հասել է առաջավոր մարդկությունը բարոյականության բնագավառում: Ո՛չ միայն կոմունիստական միջազգային շարժման, այլև աշխատավոր մարդկության բարոյական ամենապրոգրեսիվ նկրտումների գիտական հիմնավորումն ու ամփոփումն է այդ կոդեքսը:

Մեր դարաշրջանի կոմունիզմի մարտիկը՝ սովետական քաղաքացին, ամենուր պետք է աչքի զարնի իր գաղափարայնությամբ, Հայրենիքի հանդեպ տածած անհուն սիրով: Նա չունի մի այլ աշխարհայացք, քան կոմունիստականը: Նա չունի մի այլ մորալ, քան կոմունիզմի մորալը: Նա գիտակցում է, որ սո-

ցիալիստական սիստեմի երկրների եղբայրական դաշնադրության մեջ իր Հայրենիքին մեծագույն դեր ու պատիվ է վիճակված, որի համար էլ նա լի է հպարտության զգացումով։ Նա չի կասկածում, որ իր հավատարմությունը սոցիալիստական Հայրենիքին, կոմունիզմի մոտալուտ հաղթության հավատը բարոյական խոշորագույն ազդակ են այդ հաղթանակը արագացնելու գործում։

Սակայն մինչև կոմունիզմի լիակատար ավարտը մեր բարոյական կոդեքսը պահանջում է սրբությամբ կիրառել՝ ով չաշխատի, նա չի ուտի սկզբունքը։ Որևէ մարդու արժանիքների գնահատման, նրա թափած աշխատանքի հատուցման այս կանոնը պարտադիր է դեռևս երկար ժամանակ։ Աշխատանքի հանրօգտության մասշտաբն է այն չափը, որով պետք է գնահատվի տվյալ անձնավորության այս կամ այն վարքագիծը։ Կոմունիզմ կառուցողի կոդեքսը մարդու բարոյական, հոգեբանական վերածնության գլխավոր միջոցը հանրօգուտ աշխատանքն է համարում։ Ուրեմն, հատուցման աշխատանքային սկզբունքի կիրառումը այն բարոյական լծակներից մեկն է, որի օգնությամբ պետք է ստեղծվի թե՛ կոմունիզմի նյութատեխնիկական բազան և թե նոր մարդը։

Մեր քաղաքացիների բարոյական պարտքն է սրբությամբ կիրառել մեկն ամենքի և ամենքը մեկի համար սկզբունքը։ Ընթանալով իր ինքնուրույնությունն ապահովող կոլեկտիվի հետ, իր անհատական շահը ստորադասելով նրան, մեր քաղաքացին կոչված է ամեն կերպ նպաստելու հանրային սեփականության, կարգ ու կանոնի ու բարեկեցության ամրապնդման գործին։ Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը արտացոլելով կոլեկտիվի ու անհատի շահերի միաձուլումը՝ մեծապես օգնելու է հասարակության և անհատի միջև տակավին մնացած անարդարության, հակասության վերացմանը։ Այսպիսով, մարդկանց գործունեությունը գնահատելիս պետք է ելնել այն սկզբունքից, թե տվյալ անձնավորության վարքագիծը էգոիստակա՞ն է, թե՞ կոլեկտիվիստական։

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ազդարարումը մարդկային զանգվածների բուռն կատարելագործումն է նշանավորում։ Միայն այդ բարձունքից դիտելով կարելի է ճիշտ գնահատել ՍՄԿՊ Ծրագրի՝ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր ու եղբայր նշանաբանի խոշորագույն նշանակությունը։ Եղբայրության ու բարեկամության հարաբերությունների արմատավորմամբ մեր երկրի մարդիկ լիովին կթոթափեն իրենց ուսերից խղճուկ ընչաքաղցության, սնափառության, նախանձի, խաբեության, չարամտության և առհասարակ էգոիզմի կուրացնող փոշին։ Որքա՜ն ուրախալի է, երբ գնալով միլիոնավոր մարդիկ մեր երկրում աշխատում և ապրում են ազնվաբար, կոմունիստական բարոյական նորմերի ճիշտ կատարմամբ, իրենց միջավայրում աչքի են զարնում համեստությամբ, ընտանիքում ունեցած օրինակելի վարքով, համառորեն պայքարում են պորտաբուծության, կարիերիզմի և առհասարակ տմարդության երևույթների դեմ։ Որքա՜ն գոտեպնդիչ է, երբ դրականի օրինակը մեր կյանքում դառնում է վարակիչ և հպարտության առարկա։ Սա նշանակում է, որ մեր հասարակական կյանքում հիմնովին սովորույթի մեջ է մտնում կոմունիստականը։

Մի՞թե բարոյական վիթխարի կարողության ապացույց չէ ՍՄԿՊ-ի անօրինակ խիզախ քայլը՝ Ստալինի անձի պաշտամունքի հաղթահարումը։ Չէ՛ որ անձի պաշտամունքը նվաստացնում էր կոլեկտիվին՝ անհատի աստվածացման գնով, հակասում էր կոմունիստական գաղափարախոսությանն ու բարոյական նորմերին։ Մերկացնելով և հաղթահարելով անձի պաշտամունքը, լենինյան նորմերի վերականգնումով միայն հնարավոր դարձավ կիրառել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը։ Միայն լենինյան հուրն իր հոգում ամբարած պարտիան կարող էր ձերբազերծվել կոմունիստական սրբությունները վարկաբեկող անձի պաշտամունքի վնասակար պրակտիկայից։ Այս առումով՝ մեր պարտիայի բարոյական հեղինակության բարձրացման տեսակետից ևս պատմության մեջ բացառիկ տեղ է վերապահված ՍՄԿՊ XX և XXII համագումարներին։

Մարդկանց եղբայրության և փոխօգնության սկզբունքը պարտադիր համարելով մեզ համար, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը միաժամանակ պարտավորեցնում է անխախտ պահել ՍՍՌՄ ժողովուրդների լենինյան դաշնադրությունը, մինչև վերջ պայքարել նացիոնալիզմի բոլոր տարատեսակությունների դեմ։ Սովետական քաղաքացին քաջ գիտակցում է, որ նրա բարոյական պարտքն է ամեն կերպ խրախուսել աշխարհի բոլոր աշխատավորների եղբայրական համերաշխությունը, անհաշտ լինել բոլոր նրանց հանդեպ, ովքեր թշնամի են կոմունիզմին, մարդկության խաղաղության և ճնշված ժողովուրդների ազատագրման գործին։ Լենինյան ինտերնացիոնալիզմը՝ կոմունիզմ կառուցողի անբիծ դրոշն է, որի ներքո մարդկությունը պետք է կռի իր գալիք երջանկությունը։

ՍՄԿՊ Ծրագիրը թափանցված է կոմունիստական հումանիզմով, ազնիվ աշխատավորի նկատմամբ տածած վստահությամբ և անկաշառ սիրով։ Նրա բարոյական կոդեքսի ուղն ու ծուծն այն է, որ սովետական նոր մարդն իր բարոյական մաքրությամբ մի գլխով բարձր է հին աշխարհի էգոիստից։ ՍՄԿՊ Ծրագիրը նաև մարդկային զանգվածների բարոյական նորոգման ու հոգեկան վերածնության հոյակապ ուղենիշն է։ Նրա բարոյական նորոգիչ դերն անգնահատելի է, որը պրակտիկ կերպով կերևա մոտակա տարիներին։

Կոմունիզմի կառուցման պրոցեսը նոր մարդու երկունքի պրոցեսն է։ Նոր մարդը երկնքից չի վար ընկնում, այլ ծնվում է սոցիալիստական հասարակությունից, որում դեռևս շատ բան հին է մարդկանց կենցաղավարության, նիստ ու կացի մեջ։ Տակավին Ֆ. Էնգելսն է ասել, որ նոր հասարակության հանրային արտադրությունը կպահանջի նոր մարդիկ, որոնք զերծ լինեն աշխատանքի բաժանման բացասական գծերից։ Ինչպես կապիտալիստական էկոնոմիկան գյուղացիներին և արհեստավորներին դարձրեց որակապես նոր հասարակական ուժ, այնպես էլ կոմունիզմը դասակարգերի վերացմամբ և հանրային տնտեսության վրա հիմնված նոր արտադրահարաբերությունների զարգացմամբ՝ մարդկանց կդարձնի բազմունակ, ազնիվ, կարգապահ և մեծ կուլտուրայի տեր։

Այս բանը կատարվում է մեր աչքերի առջև. տեխնիկայի նոր զարգացման պայմաններում փոխվում է և աշխատանքի բնույթը, կրճատվում է պրոֆեսիաների թիվը, դյուրանում աշխատանքի տեխնոլոգիան։ Ավտոմատիկայի, կիբեռնետիկայի և գիտության զարմանահրաշ նվաճումների կիրառմամբ մոտենում են բանվորի ու ինժեների տարբերությունների եզրերը։ Մեր բանվոր դասակարգի մեծ մասն արդեն յոթնամյա և միջնակարգ կրթության տեր է։ Արտադրության մի շարք ճյուղերում արդեն միաձուլվում են մտավոր ու ֆիզիկական աշխատանքները, որոնք դառնում են իրոք հաճելի ու անհրաժեշտ մարդու օրգանիզմի համար։

Լենինը խորհուրդ էր տալիս շաբաթօրյակները ներմուծել բարքերում։ Կոմունիստական աշխատանքը, կոմունիստական կենցաղն է դառնում մեր բարքերի ընորոշ գիծը։ Մեծ է այն բարոյական բեկումը, որը տեսնում ենք մեր

*երկրում վերջին տարիների ընթացքում։ Կոմունիստորեն աշխատելն ու ապրելը դառնում է միլիոնների անհրաժեշտ պրակտիկան։*

*Ստեղծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, մեր ժողովուրդն ինքը կստեղծի հոգեկան և բարոյական ծաղկման հաստատուն հիմքեր։ Հիրավի, կոմունիզմի կառուցման գործում մեր աշխատավորների ցուցաբերած անօրինակ նվիրվածությունն ու սխրանքները, հասարակական կարգապահության ասպարեզում ունեցած մասնակցության նորանոր ձևերը, նրանց ընկերականության և հումանիզմի միլիոնավոր օրինակները խոսում են այն մասին, որ մենք կոմունիզմ ենք ընթանում մեր բարոյական վիթխարի հեղինակությանը կռթնած, պարտիայի լենինյան ղեկավարության շնորհիվ։*

*Մտեք ֆաբրիկաներ և գործարաններ, սովխոզներ ու կոլտնտեսություններ, դուք կնկատեք այնքա՜ն համեստ, գիտակ ու մեղվաջան նոր մարդուն։ Նա շատ գոհ է, որ մի ֆրանսիացի էկրանի վրա համոզիչ կերպով ցուցահանել է արդի Ամերիկայի գաղափարազուրկ, այլասերված ու դեպի անկումը հակված մարդկանց կյանքը («Ամերիկան ֆրանսիացու աչքերով»)։ Նա համոզված է, որ էկրանացված «Տեսչի այցը» դրամայում արտացոլվել է անգլիական նեխված բարքերի միայն մի աննշան մասը։ Եվ նա անսահման ուրախ է, որ ինքը իդեալ, մորալ և ապագա ունի։ Նա հպարտ է իր վեհ գաղափարներով, իր անաղարտ բարոյականությամբ։*

*Սոցիալիստական ռևոլյուցիան մարդկանց կյանքը դրեց բարոյական և նյութական հարստության հունի մեջ, նրանց աշխատանքը դարձնելով իմաստալի, հաճելի ու պատվաբեր։ Դառնալով այդպիսին, ստեղծագործ աշխատանքը վեր է ածվում մարդկանց բարոյական հայացքների ու վարքագծի կատարելագործման կայուն պատվանդանի։ Եվ որքան հաջող իրագործվի մեր պարտիայի Ծրագիրը, այնքան արագ կմոտենանք բարոյականության այն աստիճանին, որի մասին Ֆ. Էնգելսը ժամանակին գրել է. «...իսկական մարդկային բարոյականությունը հնարավոր կլինի հասարակական զարգացման միայն այն աստիճանի վրա, երբ դասակարգերի հակադրությունը ոչ միայն ոչնչացված կլինի, այլև գործնական կյանքում ամեն մի հիշողություն նրա մասին՝ իսպառ ջնջված» («Անտի-Դյուրինգ», էջ 121)։*

*ՍՄԿՊ Ծրագիրը սահմանել է մեր երկրի զարգացման այնպիսի ընթացք, որի շնորհիվ և որի պայմաններում սովետական ժողովուրդը կհասնի* իսկական մարդկային բարոյականության, *որը նոր իմաստ ու հմայք կհաղորդի կյանքին, այն դարձնելով անսահման հաճելի ու գեղեցիկ։*

*Ոչ միայն տնտեսական և քաղաքական, այլև մեր բարոյական կյանքի ղեկավար ուժը ՍՄԿՊ-ն է, որն իր անդամների անձնական օրինակով և իր կոլեկտիվ գործունեությամբ բարոյական վարվեցողության բարձր օրինակներ է տալիս։ Եվ նրա Ծրագիրն ամբողջովին ներկայացնում է աշխարհի բոլոր կեղեքվողների բարոյական ակնկալումների ու պատրանքների լուսավոր մարմնացումը։ Անսալով լենինյան բանականության և իրենց սրտի արդարացույն մղումներին, կոմունիստներն ընթանում են միլիոնների առջևից, բարձր ծածանելով կոմունիստական բարոյականության, արդարության ու մարդկայնության դրոշը։*

---

# ՀԱՆՐԱՅԻՆ ՖՈՆԴԵՐԻ ԴԵՐԸ ԿՈԼԵԿՏԻՎԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ


*Ռ. ՍԱՄՍՈՆՈՎ*

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու


*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարը, որն ընդունեց մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ Ծրագիրը, մատնանշեց, որ մարդկանց դաստիարակումը կոմունիզմի ոգով կոմունիստական շինարարության կարևորագույն բաղկացուցիչ մասն է։*

*Բուրժուական հասարակության մեջ, որը հիմնված է արտադրության միջոցների մասնավոր սեփականության և մի բուռ կապիտալիստների կողմից աշխատավորական մասսաների շահագործման վրա, իշխում է բուրժուական ինդիվիդուալիստական բարոյականությունը, էգոիզմը, շահամոլությունը, հարստություն դիզելու հոգեբանությունը։ Կապիտալիզմի սկզբունքն է՝ «մարդը մարդուն գայլ է»։*

*Ճիշտ հակադիր սկզբունք է ընկած կոմունիստական գաղափարախոսության և բարոյականության հիմքում։ Կոմունիստները բուրժուական ինդիվիդուալիզմին հակադրում են ընկերության ու կոլեկտիվիզմի սկզբունքը։ Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որ հռչակեց պարտիայի XXII համագումարը, խրախուսում է մարդասիրական հարաբերություններ ու փոխադարձ հարգանք միմյանց նկատմամբ։ Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում նշված են մարդկային այնպիսի փոխհարաբերություններ՝ («մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր»), որոնց մասին խոսք անգամ լինել չի կարող կապիտալիստական հասարակարգում։*

*Կոլեկտիվիզմը, որպես կոմունիստական գիտակցության բնորոշ գիծ, ձևավորվում է ո՛չ միայն պարտիայի, Սովետական պետության դաստիարակչական գործունեությամբ։ Կոլեկտիվիզմի, ինչպես և կոմունիստական գիտակցության մյուս գծերի ձևավորումն ու ամրապնդումը տեղի է ունենում ռևոլյուցիոն պրակտիկայի պրոցեսում, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընթացքում կյանքի տնտեսական, սոցիալ-քաղաքական, կենցաղային պայմանների ամբողջության ներգործությամբ։*

*Սպառման հանրային ֆոնդերը, որպես բաշխման սոցիալիստական ձևերից մեկը, խոր ազդեցություն ունենալով աշխատավորների գիտակցության և հոգեբանության վրա, մեծ դեր են խաղում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում կոլեկտիվիստական գիտակցության ձևավորման և մարդ-*

կանց հոգեբանության մեջ ինդիվիդուալիզմի մնացուկների հաղթահարման ասպարեզում։

Կապիտալիզմի պայմաններում բանվորների և ծառայողների բարեկեցությունը բացառապես կախված է աշխատավարձից, իսկ ֆերմերների նյութական ապահովվածությունը՝ շուկայում նրանց տնտեսության արտադրանքի վաճառքից։ Բուրժուական իշխանությունները և կապիտալիստները շահագրգռված չեն աշխատավորների կենսամակարդակը բարձրացնելու հարցում. այստեղ յուրաքանչյուր անհատ մատնված է ճակատագրի քմահաճույքին։ Նյութական բարիքների բաշխման կապիտալիստական եղանակը խարսխվում է մասնավոր սեփականությունից բխող վարձու ստրկության վրա. բանվորը վաճառում է իր աշխատուժը կապիտալիստին և որի համար ստանում որոշ վարձ, որն անհրաժեշտ է նրա աշխատանքային ուժը վերարտադրելու համար։ Եվ, եթե կապիտալիստական առանձին երկրներ հասել են համեմատաբար բարձր կենսամակարդակի, կամ որոշ միջոցառումներ են կիրառում կենսաթոշակների, առողջապահության և սոցիալական ապահովագրության գծով, ապա այդ նվաճված է պրոլետարիատի դասակարգային պայքարով։ Ասենք այդ սահմանափակ միջոցառումներն էլ, որոնք կոչված են ռեկլամելու բուրժուական պետության հոգատարությունը ժողովրդի նկատմամբ, կիրառվում են կապիտալի երկրներում միլիոնների հասնող գործազուրկների անասելի դժվարին կենսապայմանների, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին կողոպտելու գնով։

Սոցիալիստական հասարակարգում բանվորների և ծառայողների աշխատավարձը կազմում է ընտանիքի բյուջեն, որի աճը սովետական պետության մշտական հոգսն է։ Նա հոգում է նաև կոլտնտեսականների նյութական և կուլտուրական բարօրության մասին, որի շնորհիվ գնալով ավելանում է կոլտնտեսականների աշխատանքային եկամուտը։ XXII համագումարում ՍՄԿԿ Ծրագրի մասին տված զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշել է, որ պարտիան ելնում է այն բանից, որ առաջիկա քսանամյակում ըստ աշխատանքի վարձատրությունը մնում է որպես նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման հիմնական աղբյուր։ Ըստ աշխատանքի վարձատրության սկզբունքը ապահովում է աշխատողների նյութական շահագրգռվածությունն արտադրության արդյունքով, խթանում է աշխատանքի արտադրողականության աճը, բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների որակավորման բարձրացումը, տեխնիկայի կատարելագործումը։ Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը հանդիսանում է կոմունիստական հասարակարգի կառուցման կարևոր լծակը։

Սակայն աշխատավարձը և ըստ աշխատանքի բաշխման մյուս ձևերը չեն սպառում այն բոլոր բարիքները, որ սոցիալիստական հասարակարգը տալիս է մարդուն։ Այս բնագավառում գնալով ավելի մեծ դեր են խաղում սպառման հանրային ֆոնդերը։ «Կոմունիստական հավասարության սկզբունքների իրականացման ուղին,— նշել է Ն. Ս. Խրուշչովը XXII համագումարում,— աշխատանքի նյութական խթանների ճիշտ զուգակցումն է հանրային ֆոնդերի միջոցով աճող բաշխման հետ»։ Հանրային ֆոնդերի հաշվին բաշխումը տեղի է ունենում հասարակության անդամների աշխատանքի քանակից և որակից անկախ, այսինքն՝ ձրի. Սա կոմունիստական բաշխման ուղին է։

ՍՄԿԿ Ծրագրում մատնանշվում է, որ քսանամյակի իրագործմամբ սպառման հանրային ֆոնդերը կկազմեն բնակչության ռեալ եկամուտների ամբողջ



գումարի մոտավորապես կեսը։ Այդ բանը հնարավորություն կտա հասարակության հաշվին ապահովել.

— երեխաների ձրի խնամքը մանկական հիմնարկներում և գիշերօթիկ դպրոցներում (ծնողների ցանկությամբ).

— անաշխատունակների նյութական ապահովումը.

— անվճար կրթությունը ուսումնական բոլոր հաստատություններում.

— բոլոր քաղաքացիների բժշկական անվճար սպասարկումը, ներառյալ դեղորայքներով ապահովելը և հիվանդների սանատորիական բուժումը.

— բնակարաններից, ինչպես նաև կոմունալ ծառայություններից ձրի օգտվելը.

— կոմունալ տրանսպորտից ձրի օգտվելը.

— կենցաղային սպասարկման որոշ տեսակներից ձրի օգտվելը.

Հանգստյան տների, պանսիոնատների, տուրիստական բազաների, սպորտային շինությունների վարձի հետևողական իջեցումը և դրանց մասնակի անվճար օգտագործումը։

— բնակչության ավելի ու ավելի լայն ապահովումը նպաստներով, արտոնություններով և թոշակներով (նպաստներ միայնակ և բազմազավակ մայրերին, թոշակներ ուսանողներին).

— աստիճանական անցումը ձեռնարկություններում, հիմնարկներում և արտադրության մեջ զբաղված կոլտնտեսականների ձրի հասարակական սննդին (ճաշեր)։

Այս է հանրային ֆոնդերի հաշվին մարդկանց նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքները բավարարելու ծրագիրը, որը ընդունվել է մեր պարտիայի XXII համագումարում։

Արդեն 1960 թվականին սպառման հանրային ֆոնդերի ծավալը կազմեց 24,5 միլիարդ ռուբլի, 1940 թվականի 4,2 միլիարդ ռուբլու դիմաց։ Հանրային ֆոնդերի հաշվին ներկայումս ապրում են ավելի քան քսան միլիոն կենսաթոշակառուներ։ Բարձրագույն, միջնակարգ մասնագիտական և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների մոտ չորս միլիոն սովորողներ ապահովված են պետական թոշակով և հանրակացարանով։ Գիշերօթիկ դպրոցների ավելի քան 600 հազար սովորողներ պահվում և կրթվում են պետության հաշվին։ Սոցիալական ապահովագրության և կոլտնտեսությունների հաշվին ամեն տարի սանատորիաներում, հանգստյան տներում և պիոներական ճամբարներում հանգստանում և բուժվում են ավելի քան յոթ միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ և նրանց երեխաները։ Մոտ յոթ միլիոն մայրեր պետությունից նպաստ են ստանում։

Այսպիսով, սոցիալիզմի ժամանակ գոյություն ունի նյութական բարիքների բաշխման երկու ձև, որոնց միջև ոչ մի հակասություն չկա, քանի որ դրանք երկուսն էլ ուղղված են մարդկանց անհատական պահանջմունքները բավարարելու նպատակին։

Սպառման հանրային եղանակները մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման բարձրագույն ձևն են։ Դրանք հասարակական հարստությունների պլանային օգտագործման կարևոր միջոց են անհատական պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու առումով։ Դրանք հեշտացնում են մարդկանց աշխատանքը, ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծում նրանց կուլտուրական աճման և հանգստի համար, ցուցադրում են կոմու-

նիզմի մարդասիրական վեհ գաղափարները, որոնց հիմքում ընկած է հոգատարությունը մարդու երջանկության նկատմամբ։

Սպառման հասարակական ձևերը մեծ դեր են խաղում կոլեկտիվիստական հոգեբանության արմատավորման և մարդկանց գիտակցությունից ինդիվիդուալիզմի մնացուկների հաղթահարման գործում։ Հանրային ֆոնդերի հետագա ընդլայնման ընթացքում կոլեկտիվիզմն ավելի ու ավելի է հաստատվելու և զարգանալու կյանքում, աշխատանքում, մարդկանց հարաբերություններում, քանի որ մարդիկ կոմունիզմի օրոք ավելի ու ավելի կգիտակցեն հասարակական ու անձնական շահերի անխզելիությունը, կսովորեն խելացի ու համատեղ օգտվել անընդհատ ավելացող բարիքներից։

Իհարկե, սպառման հասարակական ձևերի աճումը չի բացառում անձնական սեփականության որոշ ձևերի պահպանման անհրաժեշտությունը, այդ ձևերը ծառայում են անհատական պահանջմունքների ու ճաշակի բավարարմանը, իսկ մարդկանց պահանջմունքներն ու ճաշակը միշտ էլ տարբեր են եղել և երբեք միատեսակ լինել չեն կարող։

Ավելի ու ավելի լրիվ բավարարելով մարդկանց անհատական պահանջմունքները, հասարակությունը ոչ մի արհեստական արգելք չի ստեղծի անձնական սպառման ճանապարհին։ Նյութական բարիքների առատությունը բարձր գիտակցականության առկայության դեպքում կապահովի մարդկանց անձնական պահանջմունքների խելացի բավարարումը, կփոխի նրանց վերաբերմունքը անձնական սեփականության հանդեպ, կնպաստի ընչաքաղցության ձգտումների իսպառ վերացման։

Որոշ տնտեսագետներ արդեն այժմ փորձում են հաշվել, թե ինչ քանակությամբ սպառման մթերքներ ու առարկաներ է ընդգրկում «խելացի պահանջմունքներ» հասկացությունը։ Բայց, իհարկե, կարևորն այն չէ՝ երեք, թե՞ տասներեք կոստյում, հինգ, թե՞ տասնհինգ զույգ կոշիկ է անհրաժեշտ մարդուն իր պահանջմունքները բավարարելու համար։ Գլխավորն այստեղ այն է, որ մարդկանց բանական պահանջմունքները սահմանափակվում են սպառման առարկաների որոշ քանակությամբ՝ այդ պահանջմունքների անհատական տարբերություններով հանդերձ, իսկ կոմունիստական հասարակարգն ապահովում է այդ պահանջմունքների լրիվ բավարարումը։ Հասարակությունը չի որոշելու, թե ինչ քանակությամբ սպառման առարկա է հասնում յուրաքանչյուրին։ Առատության պայմաններում պահանջմունքի բավարարման բուն հնարավորությունը մարդկանց կուլտուրայի և գիտակցականության բարձր մակարդակի առկայության դեպքում կորոշի խելացի սպառման սահմանները և անիմաստ կդարձնի ավելորդ առարկաների կուտակումը։

Կապիտալիստական աշխարհում հարստության կուտակումը որպես անձնական սեփականություն և՛ կյանքի կացութաձևի, և՛ հոգեբանության հիմքերի հիմքն է, մի շարժիչ ուժ, որը որոշում է մարդկանց գործելակերպն ու փոխհարաբերությունները։ Սոցիալիզմի օրոք մասնավոր սեփականատիրական այդ հոգեբանությունը հանդես է գալիս վերապրուկների ձևով։ Քանի դեռ հնարավոր չէ լիովին բավարարել պահանջմունքները, անգիտակից մարդկանց մեջ պահպանվում է ընչաքաղցության ձգտումը, որը հաճախ դառնում է կիրք, մարդու կյանքի միակ նպատակը։

Համաշխարհային գրականության մեջ ստեղծվել են ժլատ կուտակողների բազմաթիվ վառ կերպարներ, որոնց համար կյանքի ամբողջ իմաստը հարստու-



թյունն ավելացնելու մեջ է, նրանց համար հարստություն դիզելու իրենց մանր, ստոր կրքից բացի սուրբ ոչինչ չկա։ Իսկական մարդը չի կարող ոչ մի ընդհանուր բան ունենալ Բալզակի Գոբսեկի, Գոգոլի Պլյուշկինի, Պուշկինի ժլատ ասպետի, Րաֆֆու Պետրոս Մասիսյանի հոգեբանության հետ։

Կոմունիստները, ինչպես արդեն ասվեց, դեմ չեն անձնական սեփականության՝ որպես անհատական պահանջմունքների բավարարման ձևերից մեկի։ Զարգացած կոմունիզմի ժամանակ էլ մարդիկ ունենալու են իրենց կոստյումները, իրենց կահկարասին, իրենց բնակարանները, որոնց նրանք սովորել են, և ոչ ոք չի սահմանափակի նրանց ցանկություններն ու ճաշակը։ Բայց կոմունիստները դեմ են այն ապրելակերպին, որը խթանում է մասնավոր սեփականատիրական հոգեբանությունը, մարդկանց պահելով էգոիզմի ճիրաններում։ «Առատության՝ որպես անձնական սեփականության անսահմանափակ աճման պատկերացումը,— նշում է Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— մերը չէ, կոմունիզմին խորթ պատկերացում է։ Շատ առարկաների նկատմամբ աշխատավորի անձնական սեփականությունը, որպես անհատական սպառման ձև, չի հակասում կոմունիստական շինարարությանը, քանի դեռ նա պահպանում է բանական չափեր և չի վերածվում ինքնանպատակի։ Բայց ուռճացված անձնական սեփականությունը որոշ պայմաններում կարող է վերածվել և հաճախ վերածվում է հասարակական առաջադիմության արգելակի, մասնավոր սեփականատիրական բարքերի բուծարանի, կարող է տանել դեպի մանրբուրժուական վերասերում։ Պատահում է, որ իրերը ստրկացնում են որևէ մի մարդու, և նա դառնում է իրերի ստրուկը»։

Հանրային ֆոնդերի միջոցով մարդկանց անհատական պահանջմունքների բավարարումը կօգնի նրանց՝ ազատվելու հին աշխարհի այնպիսի մնացուկներից, ինչպիսիք են՝ ժլատությունը, նախանձը, շահամոլությունը, ընչաքաղցությունը։ Մյուս կողմից, արտադրության միջոցների հասարակական սեփականությունից բխող բաշխման հասարակական ձևերը համապատասխան կերպով փոխում են մարդկանց հոգեբանությունը հօգուտ կոլեկտիվիզմի։

Կապիտալիստական հասարակության քաղաքացու պատկերացմամբ արտադրության բոլոր միջոցներն ու սպառման առարկաները բաժանվում են երկու միմյանցից սահմանազատված և իրար հակադիր հասկացությունների, «իմը» և «ուրիշինը»։ «Իմ» հասկացության մեջ մտնող առարկաների շրջանը շատ սահմանափակ է. դրանք անձնական սպառման առարկաներն են միայն, որոնց քանակը միշտ էլ կարող է զրոյի հավասարվել, եթե բանվորը կամ ծառայողը մնացել է առանց աշխատանքի, մի բան, որ բավական հաճախ է պատահում նրա հետ։ «Ուրիշի» հասկացության մեջ ընդգրկված են հսկայական քանակությամբ իրեր և առարկաներ՝ դրանք այն ամենն են, որ պատկանում են և հասարակության մյուս անդամներին, և կապիտալիստին կամ հողատիրոջը, և պետությանը։

Սոցիալիստական հասարակության մեջ առաջանում է «մեր»-ի նոր հասկացությունը, որը գնալով ավելի ու ավելի է նույնանում «իմ» հասկացության հետ։ Այս նոր երևույթը ոչ միայն չի հակասում անձնականին, այլ հանդիսանում է անհատի բարեկեցության ու երջանկության աղբյուրը։

Գործարանները, ֆաբրիկաները, հողը, մյուս հարստությունները, այն ամենը, ինչ պատկանում է Սովետական պետությանը, մերն է, հանրայինը, ժողովրդականը։ Սոցիալիստական հասարակության ամեն մի անդամ կարող է

ասել՝ «Սա իմն է», քանի որ մեզ մոտ բոլոր հարստությունները օգտագործվում
են ամբողջ հասարակության և նրա ամեն մի առանձին անդամի բարօրության
համար։
Իհարկե, մեզ մոտ դեռ քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնց համար խորթ է
այսպիսի մտածելակերպը։ Նրանց համար աշխարհում ամեն ինչ առաջվա նման
բաժանվում է «իմ» և «ուրիշի» հասկացության։ Բայց ինդիվիդուալիստական
մտածելակերպ ունեցող այդպիսի մարդկանց թիվը մեզ մոտ գնալով պակասում
է։ Սոցիալիստական հասարակությունը որքան ավելի լրիվ է բավարարում
մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքները և որքան ավելի է զարգա-
նում նրանց գիտակցությունը, այնքան ավելի քիչ տեղ է մնում եսամոլական
հոգեբանությանը, որի համար գլխավորը և նույնիսկ միակ արժեքավորը, դա՝
«իմ» հասկացությունն է։
Ֆրանսիացի հումորիստ գրող Պիեր Դանինոն իր «Մայոր Թոմպսոնի
գաղտնիքը» գրքում ծաղրելով ամերիկյան ապրելակերպը, նկարագրում է մի
սխեմա, որից երևում է, որ «իսկական ամերիկացու» կյանքի նպատակը ավտո-
մեքենան է։ Եվ դա չափազանցություն չէ։ ԱՄՆ-ում ավտոմեքենաներ շատ կան։
Կարելի է ասել՝ անմիտ կերպով շատ։ ԱՄՆ-ում և մի քանի այլ երկրներում
ստեղծված ավտոմոբիլի պաշտամունքը, որը, ավտոգործարանների տերերի
ռեկլամի շնորհիվ դարձել է բարեկեցության ու երջանկության սիմվոլ, վառ կեր-
պով ցույց է տալիս կապիտալիստական արդյունաբերության զարգացման
միակողմանիությունը, որը ելնում է ոչ թե մարդկանց բանական պահանջմունք-
ներից, այլ կապիտալիստների շահերից։ Ավտոմոբիլն այնտեղ դառնում է
ինքնանպատակ, մարդուն վերածելով իր ստրուկի։ Փարիզի ամենագեղեցիկ
փողոցը՝ Ելիսեյան դաշտերը, վեր է ածվել մի հսկայական գարաժի և ամբող-
ջովին ծածկված է ավտոմոբիլներով։ Ինչ գնով ուզում է լինի սեփական ավտո-
մոբիլ ունենալու ձգտումը կուրյոզի է հասցնում. ավտոմեքենաների տերերը,
որոնք ապրում են Փարիզի կենտրոնում, ստիպված են գիշերն իրենց մեքենա-
ները տանել քաղաքից դուրս և տուն վերադառնալ հատկապես իրենց համար
երթևեկող ավտոբուսներով։
Մեզ մոտ ևս զարգանում է ավտոմոբիլային արդյունաբերությունը, աճում
է ավտոմեքենաներ ունեցողների թիվը։ Բայց, դրա հետ մեկտեղ, մեզ մոտ
[illegible]լայն տարածում են գտնում հասարակական գարաժները՝ ավտոմոբիլների ան-
հատական օգտագործման համար։ Ժամանակի ընթացքում դրանք այնքան
կշատանան, որ լիովին կբավարարվեն բնակչության պահանջմունքները ավտո-
տրանսպորտի բնագավառում։ Իհարկե, հասարակակական գարաժներից հեռու
ապրող մարդիկ ձեռք կբերեն ավտոմոբիլ՝ որպես անձնական սեփականություն։
Բայց անմտություն է, երբ դա անում են նրանք, ովքեր լի օրերը կտրում են
շատ փոքր տարածություն և ավտոմոբիլի կարիքն զգում են միայն կիրակի
օրերը, մինչդեռ նրանք կարող են աննշան վճարով, իսկ այնուհետև նաև բո-
լորովին ձրի օգտվել ավտոմոբիլից իրենց ուզած ժամանակ և ազատ լինել ավ-
տոմեքենան խնամելուց։ Բոլորի համար պարզ է, որ հասարակական գարաժ-
ները մարդուն փրկում են սեփական իրերին ստրկորեն կապված լինելուց։
Նույնը կարելի է ասել մի ամբողջ շարք անհատական պահանջմունքների
մասին, որոնք գնալով ավելի ու ավելի լրիվ են բավարարվելու սպառման հա-
սարակական ֆոնդերի հաշվին։ Անհատական պահանջմունքների բավարարման
հասարակական ձևերը փոխում են մարդկանց վերաբերմունքը դեպի անձնական



սեփականությունը և մշակում են հասարակականի, որպես իր՝ անձնականի
նոր, կոլեկտիվիստական ընկալում, որն արտահայտված է «մերը իմն է» նոր
կատեգորիայով։ Հիվանդանոցը, որտեղ ձրի բուժվում է սոցիալիստական հա-
սարակության անդամը, ուսումնական հաստատությունը, որտեղ նա ձրի սո-
վորում է, սանատորիան և հանգստի տունը, որտեղ ձրի կամ շատ չնչին վճարով
բուժվում և հանգստանում է նա, այս ամենը ոչ մի կերպ չի տեղավորվում
«ուրիշինն է» հասկացության շրջանակներում։ Այդ ամենը միևնույն ժամանակ
և «մերն է» և «իմը»։
Հանրային ֆոնդերը, ինչպես արդեն ասվից, գնալով ավելի են զարգանա-
լու։ Հետևաբար, պետականը, համաժողովրդականը մարդկանց կողմից գնա-
լով ավելի շատ է ընկալվելու որպես իրենց անձնականը։ Այսպես հասարակա-
կանը և անձնականը ձուլվելու են, ընդ որում հասարակականը, հանդիսանա-
լով գլխավորն ու ելակետայինը, ոչ միայն չի ճնշելու անձնականը, այլ ընդհա-
կառակը, ծառայելու է անձնականին, քանի որ մարդկանց պահանջմունքների
բավարարումը կոմունիստական հասարակության նպատակն է։ Միաժամանակ
անձնականը մարդկանց գիտակցության մեջ, հասարակականի համեմատու-
թյամբ, աստիճանաբար նահանջելու է երկրորդ պլանի վրա, քանի որ պրակտի-
կան ավելի ու ավելի է համոզում նրանց, որ ամբողջ հասարակության և նրա
յուրաքանչյուր անդամի բարեկեցությունն ու երջանկությունը կախված են հա-
սարակական տնտեսության և կուլտուրայի զարգացման մակարդակից։ Կոլեկ-
տիվիզմի սկզբունքով կառուցված հասարակության անդամներն ավելի խորն
են զգում անձնականի և հասարակականի անխզելի կապը, և նրանց գիտակցու-
թյան մեջ գնալով ավելի է ամրապնդվում «բոլորը՝ մեկի, մեկը՝ բոլորի համար»
կոլեկտիվիստական սկզբունքը։
Սպառման հասարակական ձևերը նպաստում են նաև մարդկանց համերաշ-
խության, բարեկամության ամրապնդմանը, իրավահավասարության զգացման
և կոլեկտիվիզմի այլ արտահայտությունների զարգացմանը։
Կապիտալիստական աշխարհում իրերի նկատմամբ եղած վերաբերմունքը
որոշում է մարդկանց վերաբերմունքը միմյանց նկատմամբ։ Հարուստը, ուն-
վորը արհամարհանքով է վերաբերվում դեպի աղքատը, չունևորը։ Հաջողակ
բիզնեսմենը «ամենահարգելի» մարդն է բուրժուական աշխարհում, անկախ
նրանից, թե ինչ միջոցներով է նա հասել հարստության։ Բուրժուական քաղքե-
նու երազանքների վերջին սահմանը միլիոնատեր դառնալն է, որը բուրժուական
հասարակական կարծիքով նշանակում է գերմարդ դառնալ։
Մեզ մոտ մարդու նկատմամբ վերաբերմունքը որոշվում է ոչ թե նրանով,
թե որքան իր է նա ձեռք բերել որպես անձնական սեփականություն, որքան փող
ունի խնայդրամարկղում, այլ նրանով, թե ինչ օգուտ է նա բերում հասարակու-
թյանը, ինչ ծառայություններ է մատուցել ժողովրդին։ Մեզ մոտ խոր հարգանք
են վայելում արտադրության առաջավորները, տաղանդավոր գիտնականներն
ու արվեստի գործիչները, տիեզերքն ու բնության տարերքը նվաճողները։
Սակայն մեզ մոտ դեռ կան քաղքենիական ինդիվիդուալիզմի կրողներ, ան-
հատներ, որոնք մարդկանց գնահատում են ոչ թե ըստ նրանց հանրօգուտ ծա-
ռայությունների, այլ ըստ նրանց եկամտի։ Օրինակ, այժմ էլ կան մարդիկ,
որոնք ձգտում են կնքել «շահավետ ամուսնություն», բարեկամություն հաստա-
տել «ապահովված ընտանիքի» հետ, դեռ չի վերացել «ապրել կարողանալ»

նողկալի արտահայտությունը, որի տակ թաքնված է խաբեբաների ու կաշառակերների հոգեբանությունը։

Կոմունիզմը նյութական լիակատար հավասարություն է մտցնում հասարակության անդամների միջև, վերջնականապես վերացնում է այնպիսի մնացուկների նյութական հողը, ինչպիսիք են ժլատությունը, նախանձը, բուրժուական ինդիվիդուալիզմից փչացած առանձին անգիտակից տարրերի՝ հասարակության մյուս անդամների հաշվին շահ կորզելու ձգտումը։ Մասնավոր սեփականատիրական հոգեբանության մնացուկների, բուրժուական ինդիվիդուալիզմի ու եսասիրության սկզբունքների վերացման հետ միասին մարդկանց հարաբերությունները դառնում են ավելի ու ավելի բարեկամական ու անկեղծ։

Աճող սերնդին կոմունիզմի ոգով դաստիարակելու համար հատուկ կարևորություն են ստանում գիշերօթիկ դպրոցները։ 1965 թվականին գիշերօթիկ դպրոցներում սովորելու են երկու և կես միլիոն երեխա։ Ուսման և կյանքի պայմանները գիշերօթիկ դպրոցներում մեծ չափով նպաստում են երեխաների կոլեկտիվիզմի, բարեկամության և փոխադարձ օգնության ոգով դաստիարակելու գործին։

Հանրային ֆոնդերի զարգացումը հարված է հասցնում այն մարդկանց պատկերացումներին, որոնց կարծիքով կոմունիզմի օրոք պարտադիր չէ աշխատել, բայց կարելի է վերցնել սպառման այնքան առարկա, որքան քեֆդ ուզի։ Ժլատ և ծույլ քաղքենիների այս պատկերացումները ոչ միայն ընդհանուր ոչինչ չունեն կոմունիզմի կոլեկտիվիստական գիտակցության հետ, այլ ուղղակի թշնամի են դրանց, հանդիսանալով բուրժուական եսասիրական աշխարհըմբռնման արտահայտությունը։ Սպառման հասարակական ձևերը կզարգացնեն ճիշտ վերաբերմունք հասարակական սեփականության, աշխատանքի նկատմամբ, կնպաստեն կոմունիստական գիտակցության մշակմանը։

Ամենակոպիտ սխալ կլիներ կարծել, թե հասարակական սեփականության ամրապնդման և, մասնավորապես, հանրային ֆոնդերի զարգացման հետ միասին կապիտալիզմի մնացուկներն իրենք իրենց կանհետանան, իսկ կոլեկտիվիզմն ավտոմատիկ կերպով կհաստատվի մասսաների գիտակցության, հոգեբանության մեջ։

Կոլեկտիվիզմի ձևավորումը բարդ, հակասական պրոցես է, որը տեղի է ունենում հին, ինդիվիդուալիստական գիտակցության մնացուկների դեմ նոր գիտակցության մղած անդուլ պայքարում։ Այդ պրոցեսը չի կատարվում տարերայնորեն, առանց սուբյեկտիվ գործոնի միջամտության, եթե նույնիսկ որպես ճշմարտություն ընդունենք այն պնդումը, թե փոփոխված նյութական պայմաններն իրենք երբևիցե կհանգեցնեն բոլոր մարդկանց մտքի ու գործելակերպի մեջ կոլեկտիվիզմի սկզբունքի տիրապետության, ապա դա ճիշտ և ընդունելի կլինի միայն տեսականորեն։ Իսկ գործնականորեն հին մտածելակերպը չի անհետանում առանց մարդկանց վրա գաղափարական ակտիվ ներգործության։ Գիտակցության ձևերն ունեն հարաբերական ինքնուրույնություն, ուստի և հին մտածելակերպը կարող է երկար ժամանակ պահպանվել նույնիսկ նյութական նոր պայմաններում։

Սպառման հասարակական ձևերը կոլեկտիվիստական գիտակցության ձևավորման վրա կարող են ակտիվ ներգործություն ունենալ սոցիալիստական հարաբերությունները կոմունիստականի վերածելու հետ անխզելի կապի մեջ միայն, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետ զուգակցված։

---

# ԱՄԵՆ ԻՆՉ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Հ. ԱԼԻԽԱՆՅԱՆ

Սովետական մարդիկ իրենց կյանքի փորձով համոզվել են, որ Կոմունիստական պարտիան ու սովետական պետությունը չունեն այլ շահեր ու նպատակներ, քան ժողովրդին ծառայելը։ Հոգատարությունը մարդու բարօրության, նրա նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքների առավելագույն բավարարման նկատմամբ սովետական հասարակարգի զարգացման օրենքն է։ Այն նոր ուժով դրսևորվեց ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներում, Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում, որոնք տոգորված են աշխատավորների բարեկեցության և հոգևոր ուժերի ծաղկման նկատմամբ ամենամարդասիրական գաղափարներով։

«Այժմ բոլոր հնարավորությունները կան,— ասված է պարտիայի Ծրագրում,— ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար։ ՍՄԿՊ-ն դնում է համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող խնդիր՝ Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակը կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ»:

Այդ վեհ խնդրի իրականացման ճանապարհին խոշոր ու վճռական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարումը, որն իր վիթխարի մասշտաբներով հավասարը չունի պատմության մեջ։ Նրա կենսագործումը հենց ընթացիկ տարիներին կապահովի աշխատավորների կենսամակարդակի զգալի վերելք։

Յոթնամյա պլանի առաջադրանքները մշակելիս պարտիան ղեկավարվել է ծանր ինդուստրիայի առաջնահերթ զարգացման լենինյան ուսմունքով։ Արտադրության և նրա հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերության զարգացման նկատմամբ ցուցաբերվող հոգատարությունը մարդու և նրա պահանջմունքների նկատմամբ իսկական հոգատարության վկայությունն է. չէ՞ որ մեր երկրում արտադրության զարգացման նպատակը, համապետական շահերի հետ մեկտեղ, հասարակության նյութական ու կուլտուրական կարիքների առավելագույն բավարարումն է։ Այդպիսով, աշխատավորների շահերը միաձուլվում են պետության շահերին. դրանումն է մեր սոցիալիստական հասարակության հզորության աղբյուրը։

Վ. Ի. Լենինը սոցիալիզմը բնութագրել է որպես հասարակական սեփականության վրա հիմնված արտադրության պլանաչափ կազմակերպում՝ հասարակության բոլոր անդամների բարեկեցությունը և բազմակողմանի զարգացումը ապահովելու համար։ «Միայն սոցիալիզմը,— նշել է Լենինը,— հնարավորու-

թյուն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխատավորներին։ Միայն սոցիալիզմը կարող է իրականացնել այս» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 511)։

Արտադրության զարգացման բարձր տեմպերի և ժողովրդական տնտեսության հարաճուն վերելքի շնորհիվ տարեցտարի աճում է ազգային եկամուտը, որը և ռեալ հնարավորություններ է ստեղծում բարձրացնելու հասարակության անդամների կենսամակարդակը։ 1959 թվականին ՍՍՌՄ-ում ազգային եկամուտն ավելի քան 25 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը, իսկ յոթնամյակում աճելու է 62—65 տոկոսով. անցած երկու տարիների ընթացքում այն ավելացավ 8 տոկոսով։ Հայկական ՍՍՌ-ի ազգային եկամուտը 1960 թվականին 20 տոկոսով գերազանցեց 1958 թվականի մակարդակը, իսկ յոթ տարվա ընթացքում կրկնապատկվելու է։

Ի տարբերություն կապիտալիստական երկրների և, առաջին հերթին, ԱՄՆ-ի, որտեղ ազգային եկամտի կեսից ավելին յուրացվում է շահագործողների կողմից, սոցիալիզմի երկրում այն հանդիսանում է ժողովրդական եկամուտ, ժողովրդական սեփականություն. Նրա երեք քառորդ մասը գնում է աշխատավորների անձնական կարիքների բավարարման։

Յոթնամյա պլանով նախատեսվել է ազգային եկամտի աճի հիման վրա բանվորների ու ծառայողների ռեալ եկամուտները բարձրացնել՝ յուրաքանչյուր աշխատողին միջին հաշվով 40 տոկոսով, նույնքան էլ՝ կոլտնտեսականներինը։ Դա տեղի կունենա, ինչպես նրանց անձնական եկամուտների, այնպես էլ սպառման հանրային ֆոնդերի աճման միջոցով։ Միջոցառումներ են նախագծվել սովետական մարդկանց կյանքը ավելի հարուստ, կուլտուրական ու երջանիկ դարձնելու համար։

Անցած երկու տարվա արդյունքները ցույց են տալիս, որ պարտիայի մշակած ծրագիրը կենսագործվում է հետևողականորեն ու հաջողությամբ. արդեն 1959 թվականին բանվոր ծառայողների ռեալ աշխատավարձը (հաշված նաև արտոնություններն ու նպաստները) զգալիորեն բարձրացավ, 1940 թվականի համեմատությամբ ավելացավ երկու անգամ, գյուղացիների եկամուտները՝ 2,2 անգամ, իսկ 1960 թվականին ռեալ աշխատավարձը նախորդ տարվա համեմատությամբ աճեց 5 տոկոսով։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորների ընդհանուր եկամուտները 1960 թվականին 18 տոկոսով ավելի էին, քան 1957 թվականին։

ՍՍՌՄ-ում իրականացվում են այնպիսի վերափոխումներ, որոնց մասին միայն երազել կարող են կապիտալիստական երկրներում։ Արդեն գործադրվում է հարկերի վերացման մասին օրենքը, որը նախատեսում է մինչև 1965 թվականը աստիճանաբար կրճատել, իսկ 1965 թվականի հոկտեմբերի մեկից բոլորովին վերացնել բնակչությունից գանձվող հարկերը։ Դա մեր ժողովրդի կարևոր սոցիալական նվաճումներից մեկն է։ Անցած տարվա հոկտեմբերի մեկից հարկեր չեն գանձվում մինչև 60 ռուբլի աշխատավարձ ստացողներից, իսկ 61-ից 70 ռուբլի ստացողների հարկերը կրճատվել են 40 տոկոսով։ Դրա շնորհիվ բանվոր-ծառայողները տարվա ընթացքում, որպես լրացուցիչ եկամուտ, առձեռն կստանան չորս հարյուր միլիոն ռուբլի, իսկ 1966 թվականին եկամուտնե-



րի այդ աճը կհասնի տարեկան մոտ 7,4 միլիարդ ռուբլու։ Հարկերի վերացման հետևանքով պետության եկամուտների միակ աղբյուրը կլինեն սոցիալիստական տնտեսության կուտակումները, մինչդեռ կապիտալիստական երկրներում պետության եկամուտների ճնշող մասը գոյանում է բնակչությունից գանձվող հարկերից։ Վիճակագրական տվյալների համաձայն 1958/59 բյուջետային տարում ԱՄՆ-ում հարկային վճարումները (առանց կորպորացիաներից ստացվող եկամտահարկի) կազմել են ընդհանուր եկամուտների 70, Անգլիայում՝ 75, Ֆրանսիայում՝ 73, Իտալիայում՝ 88 տոկոսը։

Ժողովրդի բարեկեցության վերելքի ուղղությամբ իրագործվող միջոցառումների շարքում կարևորագույն տեղ է գրավում աշխատանքային օրվա տևողության կրճատումը։ Կոմունիզմը աշխատավորներին բերում է ո՛չ միայն նյութական բարիքներ, այլև ավելի ու ավելի շատ ազատ ժամանակ, որն անհրաժեշտ է նրանց հասարակական գործունեության, հանգստի ու կուլտուրական զարգացման, համակողմանիորեն զարգացած մարդու ձևավորման համար։

1964 թվականից կսկսվի բանվոր-ծառայողների փոխադրումը 35-ժամյա շաբաթի, շաբաթական 2 հանգստյան օրով։ Այսպիսով մեր աշխատանքային օրը և աշխատանքային շաբաթը կլինեն ամենակարճը աշխարհում։ Հասկանալի է, որ աշխատանքային օրվա կրճատումը կատարվում է աշխատավարձի պահպանմամբ։ Միաժամանակ, դրան զուգընթաց կարգավորվում է աշխատավարձը, որն արդեն կատարվել է ժողովրդական տնտեսության ճյուղերի մեծ մասում և լրիվին կավարտվի 1962 թվականին։ Զգալի չափով բարձրանում է հատկապես ցածր վարձատրվող աշխատավորների աշխատավարձը։ Այսպես. ծանր արդյունաբերության ճյուղերում մինչև 60 ռուբլի ստացող բանվոր-ծառայողների թիվը պակասել է 2 անգամ, իսկ թեթև ու սննդի արդյունաբերության մեջ՝ ավելի շատ։ Աշխատավարձի կարգավորման ընթացքում հետևողականորեն իրականացվում է ցածր ու բարձր վարձատրվող աշխատողների աշխատավարձի մակարդակն աստիճանաբար մերձեցնելու՝ պարտիայի գլխավոր գիծը։ Առաջիկա տարիներին մեր երկրում աշխատավարձի մինիմումը կհասցվի 50—60 ռուբլու։ Նախատեսվում է աշխատանքային օրվա կրճատման հետ միաժամանակ աստիճանաբար ավելացնել նաև աշխատավորների արձակուրդների տևողությունը։ Անցումը կրճատ աշխատանքային օրվա և աշխատավարձի կարգավորումը յոթնամյակի կարևոր տնտեսական միջոցառումներից են, որոնք շոշափում են միլիոնավոր աշխատավորների կենսական շահերը։ Այդ նպատակով պետությունը լրացուցիչ տրամադրում է մոտ 10 միլիարդ ռուբլի։

Մեր հասարակարգի առաջընթացի հետ մեկտեղ մեծանում է հանրային ֆոնդերի նշանակությունը և ավելի ու ավելի շատ պահանջմունքներ են բավարարվում դրանց միջոցով։ Դա միաժամանակ մեծապես օգնում է կյանքում ու աշխատանքում մարդկանց մոտ կոլեկտիվիզմի դաստիարակությանն ու արմատավորմանը։ 1960 թվականին հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը տրված վճարումներն ու արտոնությունները, 1940 թվականի համեմատությամբ, ավելացան մոտ 6 անգամ։ Արդեն այժմ բանվորներն ու ծառայողները ստանում են սանատորիաների, հանգստյան տների ու մանկական հիմնարկների ուղեգրեր՝ անվճար կամ մեծ զեղչով, ամեն տարի արձակուրդ են ստանում՝ աշխատավարձի պահպանումով, պետությունն ապահովում է անվճար ուսուցումը տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, ուսանողներին տալիս է թոշակ. հիմնականում պետության հաշվին են պահվում գիշերօթիկ դպրոցները

մոտ 600 հազար սաներ, իրականացվում են սոցիալական ապահովության ու
բուժօգնության նորանոր միջոցառումներ և այլն։

Հանրային ֆոնդերի միջոցով մարդկանց պահանջմունքների բավարարու-
մը, անկախ նրանց աշխատանքի քանակից ու որակից, կոմունիստական հա-
սարակարգի իսկական մարդասիրության լավագույն դրսևորումն է։ Խնդիր է
դրվել մոտակա տարիներին զգալիորեն ավելացնել արդյունաբերության ու պա-
քենային ապրանքների արտադրությունը և առաջ ընթանալ սովետական մարդ-
կանց պահանջմունքների լրիվ բավարարման ուղիով։ Դա բխում է պարտիայի
Ծրագրի այն դրույթից, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրու-
թյունը պետք է լիովին բավարարի այդ ապրանքների նկատմամբ աճող պա-
հանջարկը և համապատասխանի դրա փոփոխություններին։ Սպառման առար-
կաներ արտադրող ճյուղերը պարտավոր են ժամանակին թողարկել բնակչու-
թյան բազմազան պահանջմունքներին համապատասխան ապրանքներ, հաշվի
առնելով տեղական, ազգային և կլիմայական պայմանները։

Տարեցտարի ավելանում է սննդամթերքների, կահույքի, կոշկեղենի, հա-
գուստի, կտորեղենի արտադրությունը։ Բացի պլանով նախատեսված միջոցնե-
րից, կոշկի ու տեքստիլ արդյունաբերության հետագա զարգացման նպատակով
լրացուցիչ կերպով կառավարությունը հատկացրել է ևս երկուս ու կես միլիարդ
ռուբլի։ Յոթնամյակի վերջին տարում մեր երկրում բնակչության յուրաքանչյուր
շնչին կհասնի մոտ 3 զույգ կոշիկ։ ՍՍՌՄ-ում կարտադրվի ավելի շատ կոշկե-
ղեն և գործվածքեղեն, քան Անգլիայում, Ֆրանսիայում և Արևմտյան Գերմա-
նիայում միասին վերցրած։ Յոթնամյակում լայն սպառման ապրանքների ար-
տադրությունը կավելացվի 62—65 տոկոսով։ Այն մեծ թափ կստանա նաև Սո-
վետական Հայաստանում։ Միայն Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության
վարչության գծով համախառն արտադրանքը կավելանա 69,5 տոկոսով։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման և
աշխատավորների եկամուտների աճման ու գնողունակության բարձրացման
շնորհիվ անցած երկու տարում բնակչությանը վաճառված ապրանքների քա-
նակը ՍՍՌՄ-ում ավելացել է 19,8 տոկոսով և ավելի քան 4 տոկոսով գերա-
զանցել՝ պլանային առաջադրանքը։ Մեր ռեսպուբլիկայի բնակչությունը 1960
թվականին պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցից (չհաշված սպառող-
կան կոոպերացիայի կոմիսիոն առևտուրը) գնել է 501 միլիոն ռուբլու պարենա-
յին ու ոչ պարենային ապրանք, որը 11 տոկոսով ավելի է, քան 1959 թվակա-
նին։ Պարտիան ու կառավարությունը խնդիր են դնում է՛լ ավելի բարելավել
առևտրի, հասարակական սննդի գործը, բարձրացնել սպասարկման կուլտուրան։

Կարևոր նշանակություն ունեցան վերջին տարիներին ՍՄԿՊ Կենտկոմի և
Մինիստրների Սովետի ընդունած որոշումները՝ բնակչության կենցաղային
սպասարկումը բարելավելու, կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածու-
թյան ապրանքների արտադրությունն ավելացնելու, ասորտիմենտն ընդլայնե-
լու և որակը բարձրացնելու վերաբերյալ։ Առաջիկա տարիներին լիովին կբա-
վարարվեն բնակչության կարիքները այդ ասպարեզում։

Այն ամենը, ինչ կատարվում է մեր երկրում, մարդու համար է, նրա բար-
օրության համար։ Յոթ տարվա ընթացքում բնակչությունը կստանա ավելի շատ
բնակարանային տարածություն, քան Սովետական իշխանության գոյության
բոլոր տարիներին։ Քաղաքներում ու բանվորական ավաններում կկառուցվեն
650—660 միլիոն քառ. մետր տարածությամբ բնակելի տներ կամ մոտ 15



միլիոն բնակարան։ Գյուղական վայրերում կոլտնտեսականների ու գյուղա-
կան ինտելիգենցիայի ուժերով կկառուցվի 7 միլիոն տուն։ Այդպիսին է յոթնա-
մյա պլանի կարևորագույն խնդիրներից մեկը. դրա կենսագործումը վճռա-
կան քայլ կհանդիսանա առաջիկա 10—12 տարում մեր երկրում բնակարանա-
յին պակասի վերացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների
Սովետի 1957 թվականի հունիսի առաջադրանքի կատարման ճանապարհին։

Միայն 1959—60 թվականներին երկրի քաղաքներում ու բանվորական
ավաններում շահագործման է հանձնվել ավելի քան 165 միլիոն քառ. մետր
բնակելի տարածություն։ Աշխարհի ոչ մի պետությունում բնակարանային շինա-
րարությունն այնպիսի մեծ ծավալ չի ստացել, ինչպես Սովետական Միությու-
նում. բավական է նշել, որ բնակչության հազար մարդու հաշվով մեզ մոտ 2
անգամ ավելի շատ բնակարան է կառուցվում, քան ԱՄՆ-ում և Ֆրանսիայում։
Բնակարանային խոշոր շինարարություն է նախատեսված մեր ռեսպուբլիկա-
յում։ Եթե 15 տարում ռեսպուբլիկայում շահագործման է հանձնվել 1 միլիոն
600 հազար քառ. մետր բնակելի տարածություն, ապա յոթնամյակում կկա-
ռուցվի 2 միլիոն 706 հազար քառակուսի մետր։ 1960 թվականին և 1961 թվա-
կանի 7 ամսում պետական միջոցների հաշվին արդեն կառուցվել ու շահագործ-
ման է հանձնվել ավելի քան 543 հազար քառակուսի մետր, բացի դրանից
բանվոր-ծառայողները կառուցել են 295 հազար քառ. մետր բնակելի տարա-
ծություն, իսկ գյուղական վայրերում ինտելիգենցիայի ու կոլտնտեսականների
ուժերով՝ 11 հազար տուն։

ՍՍՌՄ-ում վաղուց արդեն ընդմիշտ վերացված է գործազրկությունը՝ աշ-
խատավոր մարդու համար այդ սարսափելի չարիքը, որից կապիտալիստական
աշխարհում տառապում են տասնյակ միլիոնավոր մարդիկ։

Սովետական պետությունը աշխարհում առաջինն է, որ իր վրա է վերցրել
հասարակության անաշխատունակ քաղաքացիների ապահովումն ու խնամքը։
Մեր երկրում ծերության, աշխատունակությունը կորցնելու և հիվանդանալու
դեպքում նյութական ապահովվածության իրավունքից օգտվում են բոլոր քա-
ղաքացիները։ Այն հիմնված է պետական սոցիալական ապահովագրության
լայն սիստեմի վրա և իրականացվում է պետական ու հանրային միջոցների
հաշվին, առանց աշխատավորների աշխատավարձից պահում կատարելու։

Վերջին տարիներին իրականացվել ու իրականացվում են մի շարք միջո-
ցառումներ կենսաթոշակային ապահովության գործի հետագա բարելավման
ուղղությամբ։ Թոշակառուների տարեկան աճը ռեսպուբլիկայում հասնում է
մինչև 13 տոկոսի։ 1959 թվականին նրանց թիվն անցնում էր 130 հազարից,
որոնց տարեկան վճարվում էր ավելի քան 36 միլիոն ռուբլի։ Հատկապես աճել
են ծերության կենսաթոշակների չափերը և թոշակառուների թիվը։ Բացի այդ,
պետական զգալի նպաստներ են ստանում մոտ 82 հազար մայրեր։ Այսպիսով,
ռեսպուբլիկայի բնակչության յուրաքանչյուր 9 հոգուց մեկը սոցիալական ապա-
հովության օրգաններից նպաստ է ստանում։

Միայն 1960 թվականին ռեսպուբլիկայի սոցիալական ապահովության
օրգանների կողմից կատարված ծախսումները կազմել են ավելի քան 50 միլիոն
ռուբլի, իսկ անցած տարվա բյուջեով՝ 53 միլիոն ռուբլի։ Բացի այդ, արհմիու-
թենական կազմակերպությունների կողմից սոցիալական ապահովագրության
բյուջեով կատարվող ծախսումները միայն 1960 թվականին գերազանցել են 21
միլիոն ռուբլուց։

Սովետական մարդը, մանուկ հասակից մինչև խոր ծերություն, շրջապատված է պետության ու ժողովրդի հոգատարությամբ։

Մեր երկրում բնակչությունն ապահովված է ձրի բժշկական օգնությամբ, որն իրականացվում է բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկների լայն ցանցի միջոցով։ Ժողովրդի բարեկեցության վերելքի և բժշկական լավ սպասարկման շնորհիվ բարելավվել է բնակչության առողջական վիճակը։ 1913 թվականի համեմատությամբ կյանքի միջին տևողությունը կրկնապատկվել է և այժմ կազմում է տղամարդկանց մոտ՝ 63, իսկ կանանց մոտ՝ 69 տարի։ Զգալիորեն նվազել են հիվանդությունները. ընդհանուր մահացությունը կրճատվել է ավելի քան 4 անգամ, երեխաներինը՝ մոտ 7 անգամ։ Եթե 1913 թվականին Հայաստանում կային ընդամենը 6 հիվանդանոց և 73 բժիշկ, ապա այժմ ռեսպուբլիկայում աշխատում են 4500 բժիշկ։ Հայկական ՍՍՌ-ում յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է երկու անգամ ավելի բժիշկ, քան ԱՄՆ-ում, 9 անգամ ավելի՝ քան Թուրքիայում և 14 անգամ ավելի՝ քան Իրանում։

Յոթնամյա պլանը նախատեսում է առողջապահության գործի հետագա զարգացում. մեծ չափով ընդարձակվելու է հիվանդանոցների և մյուս բժշկական հիմնարկների ցանցը, ավելանալու է մահճակալների թիվը։ Առանձնապես մեծ աշխատանք է կատարվելու մոր և մանկան առողջության պահպանությանը ծառայող հիմնարկների ցանցի ընդարձակման ուղղությամբ։ Միայն 1960 թվականին և 1961 թվականի առաջին կիսամյակում ռեսպուբլիկայում հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացել է 1300-ով։

Սոցիալիստական հասարակարգի ո՛ր բնագավառն էլ վերցնենք, ամենուրեք առաջին պլանի վրա սովետական մարդն է, նրա պահանջմունքներն ու հետաքրքրությունները։

Պարտիայի հոգատարությանը սովետական մարդիկ պատասխանում են արտադրական ու ստեղծագործական մեծ ակտիվությամբ. Նրանք լավ են գիտակցում, որ կենսամակարդակի բարձրացման հիմքը հանրային ունեցվածքի աճն է, աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, որ մեր հասարակարգում լավ կյանքի համար պայքարել՝ նշանակում է պայքարել մթերքների առատության համար։ Ամբողջ երկրով մեկ համաժողովրդական մրցություն է ծավալվել 7-ամյա պլանի կատարման ու գերակատարման համար։

Որքան արագ զարգանան երկրի արտադրողական ուժերն, ու բարձրանա աշխատանքի արտադրողականությունը, որքան արագ ծավալվի սովետական ժողովրդի ստեղծագործական եռանդը, այնքան արագ կբարձրանա սովետական մարդկանց կենսամակարդակը։ Զինված ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումներով, Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրով, սովետական ժողովուրդը հաղթականորեն առաջ է շարժվում դեպի մարդկության պայծառ ապագան—դեպի կոմունիզմ, որտեղ մարդու բոլոր պահանջմունքները կբավարարվեն, և առհավետ լիակատար հավասարություն ու երջանկություն կհաստատվի բոլոր մարդկանց համար։

---

# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

## ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՐՑԸ


Ս. ՊԱՊՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու


«Արդիականության հիմնական հարցը,— նշվում է պարտիայի Ծրագրում,— պատերազմի և խաղաղության հարցն է։ Պատերազմական վտանգի միակ աղբյուրը իմպերիալիզմն է։ Իմպերիալիստական լագերը նախապատրաստում է մարդկության դեմ ամենասարսափելի ոճրագործությունը՝ համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը, որը կարող է չտեսնված ավերումներ պատճառել ամբողջ երկրների, բնաջնջել ամբողջ ժողովուրդներ։ Խաղաղության և պատերազմի պրոբլեմը դարձել է հարյուր միլիոնավոր մարդկանց կենաց ու մահու պրոբլեմ»։

Շահագործող դասակարգերի գաղափարախոսները միշտ էլ ձգտել են շփոթել պատերազմների հարցը, ապացուցել, որ նրանք հավիտյան կուղեկցեն մարդկությանը։ Բուրժուական երկրներում լայն տարածում են ստացել տարբեր տեսակի «թեորիաներ» մարդկանց «կռվարար բնավորության», երկրագնդի «գերբնակեցման» մասին։ Սակայն պարզ է, որ պատերազմի հրձիգների այդ և նույնտեսակ հերյուրանքները ոչինչ ընդհանուր չունեն ճշմարտության հետ։

Մարքսիզմ-լենինիզմը վաղուց հերքել է շահագործողների մարդատյաց թեորիաները և համոզիչ կերպով ապացուցել, որ պատերազմները պատմական երևույթ են։ Պատերազմները որոշ պատմական, սոցիալ-տնտեսական պայմանների արդյունք են։ Նախնադարյան համայնական իրավակարգում պատերազմներ չկային, չկային նաև մարդկանց հատուկ զինված ջոկատներ՝ բանակներ։ Պատերազմներն առաջացան արտադրության միջոցների մասնավոր սեփականության առաջացմամբ, հասարակության անտագոնիստական դասակարգերի բաժանմամբ։ Այն ժամանակվանից մարդկությունը տեսել է հսկայական թվով պատերազմներ։ Հասկանալի է, որ շահագործող դասակարգերը և նրանց կառավարությունները պատերազմի սանձազերծումը որպես կանոն հիմնավորում էին «հայրենիքի և քաղաքակրթության» շահերով։ Մինչդեռ մարդկության պատմության մեջ բազմաթիվ պատերազմներ վարվել են այդպիսի շահերից չափազանց հեռու նպատակներով։

Պատերազմները կանխելու հնարավորության հարցը, որը կազմում է մարքսիստական-լենինյան թեորիայի կարևորագույն հարցերից մեկը, իր հետագա ստեղծագործական զարգացումը ստացավ ՍՄԿՊ XXII համագումարում

***

Դարեր շարունակ պատերազմի անեծքը ծանրացած է եղել մարդկության
վրա։ Պատերազմները ծագել են տարերային անդիմադրելի աղետների պես։
Մարդիկ սպանել են իրար, ոչնչացրել նյութական բարիքները, կարծես մրցելով
բնության կույր ուժերի անմիտ դաժանության հետ։ Մարդկությունը լավ հիշո-
ղություն ունի։ Շվեյցարական գիտնական Ժան Ժակ Բաբելը, օգտագործելով
«էլեկտրոնային ուղեղը», հաշվել է, որ վերջին 5560 տարում մարդիկ տեսել են
մոտ 15 հազար պատերազմ, որոնց հետևանքով սպանվել են երեք միլիարդ
640 միլիոն մարդ։ Արյան և կրակի այդ թոհուբոհի մեջ անվերադարձ կորել են
վիթխարի արժեքներ։

Ոչ մի իրավակարգ հանցագործություններով իրեն այնպես չխայտառա-
կեց, ինչպես կապիտալիզմը, մանավանդ իր զարգացման վերջին՝ իմպերիա-
լիստական դարաշրջանում։ Իմպերիալիզմը չտեսնված մասշտաբ հաղորդեց
պատերազմներին։ Պատերազմի հարցը դարձավ երկրագնդի բոլոր երկրների
ամբողջ քաղաքականության անկյունաքարը։ Պարզ է, որ անցյալի պատե-
րազմները համեմատել անգամ դժվար է այն մարդատյաց պլանների հետ,
որոնք իրագործվել կամ մշակվել են իմպերիալիստների կողմից։ Այսպես, օրի-
նակ, եթե XVII դարում տեղի ունեցած բոլոր պատերազմներում սպանվեց
երեք միլիոն մարդ, XVIII դարում՝ 5,5 միլիոն, XIX դարում՝ 16 միլիոն, ապա
XX դարում միայն երկրորդ համաշխարհային պատերազմը տարավ 60 միլիոն
մարդկային կյանք։ Իսկ ջերմամիջուկային պատերազմը, եթե երբևիցե Պեն-
տագոնին հաջողվի սանձազերծել այն, կոչնչացնի հարյուրավոր միլիոն մարդ-
կանց։ Սակայն անցյալի դժբախտ դասերը խելքի չբերեցին ագրեսորներին և,
առաջին հերթին, ամերիկյան իմպերիալիզմին, որը ժամանակակից պլաստիկ
վիրահատումների օգնությամբ, քողարկելով թորշոմած, պառավացած այտերը,
իր մայրամուտն ապրող կարգը «ազատ աշխարհ» է անվանում։

Իմպերիալիզմին հայտնի չեն պետությունների այլ հարաբերություններ,
բացի տիրապետության և ենթարկվելու հարաբերություններից։ Տարբեր երկր-
ների միջև հարաբերությունները նա հիմնում է թելադրանքի ու սպառնալիքի,
բռնության և կամայականության վրա։ Նա ագրեսիվ պատերազմները դիտում
է որպես միջազգային հարցերը լուծելու բնական միջոց։ Իմպերիալիստական
տերությունների համար դիվանագիտությունը եղել է և այժմ էլ մնում է որպես
ուրիշ ժողովուրդներին ստրկացնելու գործիք, ագրեսիվ արշավանքներ նախա-
պատրաստելու միջոց։

Երկարատև ու կայուն խաղաղություն ապահովելու արմատական ուղին
ընդհանուր և լրիվ զինաթափումն է՝ միջազգային խիստ վերահսկողությամբ
ճանդերձ։ Իմպերիալիզմը ժողովուրդների ուսերին է դրել սպառազինություն-
ների և պատերազմական մրցավազքի ծանրագույն բեռը։ Մանավանդ արագո-
րեն են աճում ռազմական ծախսերը վերջերս։ Բոլոր խոշոր երկրներում միասին
վերցրած, ոչ լրիվ տվյալներով, ամեն տարի սպառազինության համար միջին
հաշվով ծախսվում է ավելի քան 100 միլիարդ դոլար։ Այդ գումարները խաղաղ
նպատակներին ծառայեցնելու դեպքում կարելի կլինի հենց մոտակա տարի-
ներին վերացնել սովն ու աղքատությունը թույլ զարգացած երկրներում, հար-
յուրավոր միլիոն մարդկանց կյանքը դարձնել ունևոր ու երջանիկ։

Պատերազմական մրցավազքը չափազանց շահավետ բիզնես է դարձել ֆի-



նանսիստների և իմպերիալիստական մյուս մագնատների համար։ Օրինակ,
այս տարի ԱՄՆ-ում ուղղակի ռազմական ծախսերի համար նախատեսված 56
միլիարդ դոլարից մոտ 35 միլիարդը ծախսվում է ռազմական պատվերների
վարձատրության համար։ Ժամանակակից զենքի արժողության հսկայական
աճն արմատապես փոխում է ռազմամթերքի արտադրությամբ զբաղվող իմպե-
րիալիստական ընկերությունների գործունեության մասշտաբները։ Հետաքրքը-
րական են ամերիկյան հրապարակախոս Գ. Էքլսի հաշվումները։ Հուլիոս Կե-
սարը զենք գնելով, հակառակորդի մեկ զինվոր սպանելու համար ծախսում էր
միջին թվով մոտ 75 ցենտ։ 1800 թվականին Նապոլեոնը այդ նպատակով ծախ-
սում էր արդեն 3 հազար դոլար։ Առաջին համաշխարհային պատերազմում
ռազմական գործարանատերերն ամեն մի սպանված մարդուց ստանում էին մոտ
21 հազար դոլար, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմում՝ մոտ 200
հազար դոլար։

***

Մեր պարտիան իր արտաքին քաղաքականության գլխավոր նպատակն է
համարում՝ ապահովել ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման
ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման խաղաղ պայմաններ
և բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ մեկտեղ մարդկությունը փրկել հա-
մաշխարհային բնաջնջող պատերազմից։

ՍՄԿՊ XXII համագումարը վերջին տասնամյակների համաշխարհային
պատմական փոփոխությունների վերլուծության հիման վրա հանգեց այն եզ-
րակացության, որ մեր դարաշրջանում պատերազմի ճակատագրական անխու-
սափելիություն չկա։ Այդ եզրակացությունը լիովին հաստատվեց կյանքում։
Հենց Սովետական Միության, սոցիալիստական լագերի բոլոր երկրների ու
Արևելքի խաղաղասեր պետությունների բռնած հաստատուն դիրքի շնորհիվ
խեկույնեթ մարվեցին Մերձավոր ու Միջին Արևելքում և երկրագնդի այլ շըր-
ջաններում բորբոքված պատերազմի օջախները, ձախողվեցին իմպերիալիստ-
ների մյուս պլանները։

խաղաղ գոյակցության՝ Սովետական Միության և սոցիալիստական մյուս
երկրների արտաքին քաղաքականությունն իր կողմն է գրավում հարյուր միլիո-
նավոր մարդկանց։ Առանց պատերազմների աշխարհի, առանց զենքի աշխար-
հի վերաբերյալ մարդկության դարավոր երազանքներն այժմ դարձել են գոր-
ծողությունների ծրագիր։ Ժողովուրդները հասկանում են, որ այժմ հարցն այս-
պես է դրված՝ կամ խաղաղ գոյակցություն, կամ հրթիռա-միջուկային պա-
տերազմ։

Իհարկե, ագրեսիվությունը կապված է իմպերիալիզմի բնույթի հետ։ Բայց
չի կարելի դոգմատիկորեն նայել գործի միմիայն այդ կողմին։ Չի կարելի աչ-
քաթող անել այն փաստը, որ անվերադարձ անցել է այն ժամանակը, երբ իմ-
պերիալիզմը տիրապետում էր ամբողջ աշխարհում։ Նա արդեն չի կարող ամ-
բողջ աշխարհին ստիպել ապրելու իր օրենքներով։ Սոցիալիզմի համաշխար-
հային սիստեմը դարձել է պատմության վճռական գործոնը, որը խաղաղասեր
մյուս ուժերի հետ միասին սանձահարում է իմպերիալիզմի առավել ագրեսիվ
շրջանների աղետաբեր գործողությունները։ Կապիտալիստական երկրներում
խաղաղության պնդաճակատ հակառակորդների կողքին կան հզոր ուժեր, պե-

տական լրջմիտ գործիչներ, որոնք գիտակցում են, որ պատերազմը մասսայական ոչնչացման նորագույն միջոցների կիրառմամբ իսկապես որ ինքնասպանություն կլիներ։

Նույնիսկ գերմանական թնդանոթային արքայի որդի և ժառանգորդ, ներկայացուցիչ մի դինաստիայի, որի աճը և ծաղկումը միշտ էլ կապված է եղել թալանչիական պատերազմների հետ՝ կրտսեր Կրուպպը Բոննում վերջերս լույս տեսած իր «Գերմանիայի ապագան» գրքում նշում է. «Դե, լավ։ Հինգ-վեց տարուց հետո մենք կսկսենք պատերազմը։ Իսկ հետո ի՞նչ։ Ենթադրենք, թե մեզ հաջողվեց խորտակել մեր արևելյան հայրենակիցներին և Սովետական Լեհաստանին։ Բայց այդ նպատակի համար պետք է կորցնել գերմանական բնակչության 50 տոկոսը։ Իսկ հետո ինչպե՞ս։ Չէ որ հետո ռազմական գործողություններ կսկսեն ռուսական դիվիզիաները, որոնց դեմ պատերազմում մենք կկորցնենք մեր բնակչության մյուս 50 տոկոսը և դրանով կվերջանա գերմանական ազգի դժբախտ պատմությունը»։ Շարունակելով այդ միտքը, Կրուպպը գրում է. «Մեր առջև կա երկու ուղի. կամ խաղաղ գոյակցություն կամ ոչ մի գոյություն»։

Ռազմատեխնիկական առաջադիմության դիալեկտիկայի համաձայն, պատերազմի համար ստեղծված նոր զենքը լուրջ ճնշում է գործադրում երկարատև և կայուն խաղաղություն ապահովելու օգտին։ Մարքսիզմի կլասիկները չեն էլ ժխտել, որ զենքի կատարելագործումը ո՛չ միայն հեղաշրջում է կատարում ռազմագիտության մեջ, այլ կարող է ազդել նաև քաղաքականության վրա։ Այդ մասին, օրինակ, Էնգելսը գրել է «Անտի-Դյուրինգ»-ում, իսկ Լենինը, ինչպես պատմում է իր հուշերում Ն. Կ. Կրուպսկայան, կանխատեսել է, որ «կլինի այնպիսի ժամանակ, երբ պատերազմը կդառնա այնքան ավերիչ, որ նա ընդհանրապես անհնար կլինի»։ Լենինը Կրուպսկայային պատմել է մի ինժեների հետ ունեցած խոսակցության մասին, ինժեներ, որն ասել է, թե այժմ հերթի է դրված մի այնպիսի գյուտ, որ կարելի կլինի հեռավորության վրա ոչնչացնել մի մեծ բանակ։ Դա ամեն մի պատերազմ անհնարին կդարձնի։ «Իլյիչը,—գրում է Կրուպսկայան,— մեծ հափշտակությամբ էր խոսում այդ մասին։ Երևում էր, թե նա ինչպես բուռն կերպով ուզում էր, որ պատերազմն անհնարին դառնա»։

Ներկայումս սոցիալիզմի և կապիտալիզմի, ագրեսիայի լագերի և խաղաղության կողմնակիցների միջև հարաբերակցությունը այլևս իմպերիալիզմի օգտին չէ։ Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների տնտեսական, տեխնիկական, գիտական նվաճումները, սովետական մարդու կողմից տիեզերքի նվաճումն ընդմիշտ թաղեցին կապիտալիստական երկրների ռազմական անխոցելիության, մանավանդ, ԱՄՆ-ի անխոցելիության մասին պատրանքները։

«Մենք գտնում ենք,— ասել է Ն. Ս. Խրուշչովը XXII համագումարում,— որ այժմ սոցիալիզմի ուժերը, խաղաղության պայքարի դիրքերում կանգնած բոլոր ուժերն ավելի հզոր են, քան ագրեսիվ իմպերիալիստական ուժերը։ Սակայն, եթե նույնիսկ համաձայնենք Միացյալ Նահանգների պրեզիդենտի հետ, որը հենց վերջերս հայտարարեց, թե մեր ուժերը հավասար են, ապա այդ ժամանակ էլ բացահայտորեն անխոհեմություն է պատերազմով սպառնալը»։

Սովետական Միության հզորությունն այնքան է աճել, համաշխարհային սոցիալիստական սիստեմն այնքան է ամրապնդվել, որ եթե իմպերիալիստական ագրեսորները փորձեն պատերազմ սանձազերծել սոցիալիստական լագերի



երկրների դեմ, ապա դա կարող է ունենալ միայն մեկ վախճան, այն է՝ կապիտալիզմի կործանումը։

Զարգացնելով պատերազմների կանխման հնարավորության վերաբերյալ եզրակացությունը, պարտիայի XXII համագումարը նշեց, որ սովետական յոթնամյակի հոյակապ խնդիրների կենսագործման, սոցիալիստական լագերի մյուս երկրների տնտեսության և կուլտուրայի զարգացման պլանների կենսագործման շնորհիվ ամբողջ աշխարհում ավելի ևս կաճեն ու կամրանան խաղաղասեր ուժերը։ Խաղաղության ամրապնդմանը կողմնակից պետություններին կմիանան նորանոր երկրներ։ Ժողովուրդների գիտակցության մեջ ավելի խոր արմատներ կգցի պատերազմի անթույլատրելիության գաղափարը։ Ամբողջ աշխարհում սոցիալիզմի լիակատար հաղթանակից դեռ առաջ, աշխարհի որոշ մասում կապիտալիզմի գոյության պայմաններում, իրական հնարավորություն է ստեղծվում մարդկային հասարակության կյանքից վերացնելու համաշխարհային պատերազմները։



Ներկա դարում այդպիսի հնարավորություն ստեղծող գործոններ շատ կան։ Նախ և առաջ դրանցից են՝ Սովետական Միության տնտեսական և քաղաքական հզորության անշեղ աճը, Սովետական Զինված Ուժերի հզորությունը, ինչպես և խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի լագերի մյուս բոլոր երկրների տնտեսական ու քաղաքական ամրապնդումը։

ՍՄԿԿ Ծրագրում, Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում, եղբայրական պարտիաների ներկայացուցիչների և համագումարի պատգամավորների ելույթներում նշվեց, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմի՝ մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի վերածվելը մեր ժամանակի գլխավոր հատկանիշն է։ Արդի ժամանակաշրջանը, նրա բովանդակությունը և հասարակական զարգացման ուղղությունը, հանուն խաղաղության ու խաղաղ գոյակցության ժողովուրդների պայքարի հեռանկարները, կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումը՝ այս բոլորը ամենասերտ կերպով կապված են մշտապես և անշեղ աճող այն ազդեցության հետ, որն ունի սոցիալիստական սիստեմը համաշխարհային բոլոր իրադարձությունների վրա։

Սոցիալիզմի երկրների տերիտորիան գերազանցում է 35 միլիոն քառակուսի կիլոմետրից, որը կազմում է երկրագնդի բնակելի ցամաքի ավելի քան մեկ չորրորդը։ Սոցիալիզմի երկրների վրա երբեք արևը մայր չի մտնում։ Սոցիալիստական երկրների բնակչությունը կազմում է մեկ միլիարդ 50 միլիոն մարդ, այսինքն՝ մեր մոլորակի բնակչության գրեթե 36 տոկոսը։ Նրանց բաժին է ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան մեկ երրորդը։ Նրանք տնօրինում են հսկայական հարստություններ։ Ինչ վերաբերում է քարածխին, երկաթահանքին, վոլֆրամին, մոլիբդենին, ապա սոցիալիզմի երկրներն ունեն այդ օգտակար հանածոների՝ ներկայումս հայտնի համաշխարհային բոլոր պաշարների կեսից ավելին։ Նրանք ունեն նաև ատոմային էներգիա ստանալու անսպառ աղբյուրներ։ Սոցիալիզմի կենսական մեծ ուժը և նրա վճռական ներգործությունը մարդկային հասարակության զարգացման վրա ամենաակնառու արտահայտությունն է գտնում կապիտալիզմի սիստեմի հետ

համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական մրցության մեջ ձեռք բերած արդյունքներում։ Այժմ է՛լ ավելի լիովին են բացահայտվում սոցիալիզմի առավելությունները զառամող կապիտալիզմի համեմատությամբ։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորությունն ի հայտ է գալիս նրա տնտեսական զարգացման, աշխատավորների կենսական պայմանների անշեղ բարելավման, դեմոկրատիայի ծաղկման մեջ։ Պատմական այդ նվաճումներն ազդում են աշխատավորների գիտակցության վրա, բանվորների և գյուղացիների նորանոր խավեր են բարձրացնում կապիտալիստական կարգերի դեմ մղվող պայքարում։ Ավելի ու ավելի է ուժեղանում համոզմունքն այն մասին, որ արդի պայմաններում առաջադիմության ամուր հիմքը սոցիալիզմն է, որ միայն նա է ընդունակ մարդկությանը երջանկություն բերելու։

Հենց գալիք սերունդների բախտավորությունն է, որ մեր դարաշրջանն ստեղծել է ո՛չ միայն ոչնչացման և բնաջնջման միջոցներ, այլև ռեալ ուժեր, որոնք ընդունակ են թույլ չտալու համաշխարհային նոր աղետ։ Դա, առաջին հերթին, սոցիալիստական ճամբարն է իր հարաճուն տնտեսական հզորությամբ, հուսալի պաշտպանունակությամբ և քաղաքական ու բարոյական հեղինակությամբ։

Սոցիալիստական երկրները և, առաջին հերթին, Սովետական Միությունը, իր տնօրինության տակ ունենալով պաշտպանության ամենաժամանակակից միջոցները, գերազանցություն ունեն ռազմական տեխնիկայի բնագավառում։ Սոցիալիզմի ու խաղաղության ուժերի անընդհատ աճն ամբողջ աշխարհում և նրանց գերազանցությունը միջազգային ասպարեզում զսպում են իմպերիալիստական ագրեսորներին, ամրապնդում խաղաղության պաշտպանության գործը։



Պատերազմի հրձիգներին հակադրվող ուժերն զգալիորեն ավելացել են շնորհիվ այն բանի, որ միջազգային ասպարեզում հանդես են գալիս Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի մի ամբողջ շարք ոչ-սոցիալիստական խաղաղասեր պետություններ, որոնք նույնպես մտնում են խաղաղության գոտու մեջ և իրենց արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքն են համարում ռազմական բլոկներին չմասնակցելը, դրական չեզոքությունը։

Իմպերիալիստական տիրապետության ոլորտի կրճատման, ազգային-ազատագրական շարժման աննախընթաց վերելքի շնորհիվ առավել սուր բնույթ են ստացել հակասություններն իմպերիալիստական ու տնտեսապես թույլ զարգացած երկրների միջև։ Իմպերիալիզմը շահագրգռված է, որպեսզի թույլ զարգացած երկրները շարունակեն մնալ իբրև իր ագրարա-հումքային բազան։ Սակայն գաղութային ճնշումից ազատագրված երկրներում իշխանության գլուխ անցած բուրժուազիան, ընդհակառակը, շահագրգռված է ազգային էկոնոմիկայի անկախ զարգացմամբ։ Հակասությունները դրսևորվում են նաև այլ հարցերում և, առաջին հերթին, պատերազմի ու խաղաղության հարցում։

Խաղաղության գոտու առաջացումը մարդկության կյանքի ամենակարևոր իրադարձություններից մեկն է հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Այդ գոտու ստեղծմանն ու ընդարձակմանը մեծապես նպաստեցին սոցիալիստական և ոչ սոցիալիստական երկրների ժողովուրդների ակտիվ պայքարը, ինչ-



պես նաև պետական և հասարակական այն գործիչների ջանքերը, որոնք կարողացել են ճիշտ ըմբռնել աշխարհի բոլոր մայրցամաքներում ապրող հարյուր միլիոնավոր մարդկանց իղձերն ու ակնկալությունները։

Խաղաղության գոտու երկրների համագործակցությունը չի ձևավորվել ինչ-որ մի պայմանագրով կամ քաղաքական ակտով։ Այն խարսխվում է խաղաղության նկատմամբ ժողովուրդների, ինչպես նաև առաջադեմ պարտիաների, հասարակական կազմակերպությունների հայացքների միասնության վրա, որոնք ձգտում են վստահություն, բարի-դրացիական մթնոլորտ ստեղծել պետական, քաղաքական և սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների հարաբերությունների միջև։ Խաղաղության գոտին որոշ երկրների ներփակ, մեկուսացված մի միավորում չէ։ Այն ընդգրկում է Ասիայի, Աֆրիկայի, Եվրոպայի և Լատինական Ամերիկայի մի հսկայական տերիտորիա, որտեղ ապրում է երկրագնդի բնակչության ճնշող մեծամասնությունը։

Իմպերիալիստական տերությունների և վերջերս ազգային-անկախություն նվաճած երկրների միջև առկա լուրջ հակասությունները լայն հնարավորություն են ընձեռում, որպեսզի քաղաքական ու տնտեսական անկախության համար մղվող պայքարի որոշակի փուլում հակաիմպերիալիստական միացյալ ճակատ ստեղծվի Արևելքի երկրների աշխատավորների և ազգային բուրժուազիայի միջև։ Այդ հակասությունների հետևանքով պետական անկախություն ձեռք բերած շատ երկրների կառավարող շրջաններ հենվում են սոցիալիստական ճամբարի երկրների բարեկամական օգնության վրա, բարենպաստ պայմաններ ստեղծելով Արևելքում խաղաղության գոտին ընդարձակելու և սոցիալիստական պետությունների ու թույլ զարգացած երկրների ջանքերը գաղութարարության դեմ համախմբելու համար։

Աշխարհում կայուն խաղաղություն ստեղծելու համար հսկայական նշանակություն ունեն տնտեսական կապերը, որոնք գնալով ամրապնդվում են խաղաղության գոտին ընդգրկող երկրների միջև։ Զարգացման ինքնուրույն ուղու վրա կանգնած թույլ էկոնոմիկա ունեցող երկրներն անշահախնդիր նյութատեխնիկական օգնություն են ստանում Սովետական Միությունից, Չեխոսլովակիայից, ԳԴՌ-ից և սոցիալիստական մյուս երկրներից։ Այդ օգնությունը նրանց հնարավորություն է տալիս մերժել ոչ-արդարացի պայմանագրերը, կանխել իմպերիալիստական տերությունների դավերը, որոնք ամեն կերպ ձգտում են ազատագրված ժողովուրդների վզին նորից հագցնել գաղութակալության լուծը։

Արևելքի երկրներն ըստ արժանվույն են գնահատում սոցիալիստական պետությունների օգնությունը, հակադրելով այն Վաշինգտոնի և Լոնդոնի իմպերիալիստական մոնոպոլիաների «օգնությանը», որ տրվում է ռազմական, քաղաքական և բազմաթիվ այլ պայմաններով։



Սովետական պետությունն իր գոյության ամբողջ ժամանակաշրջանում հետևողականորեն պաշտպանել ու պաշտպանում է երկու սոցիալական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցության գաղափարը, որն առաջ է քաշել հանճարեղ Լենինը։ Նա ջգտել և ձգտում է արդարացի և իրավահավասար հարաբերություններ ունենալ բոլոր երկրների հետ։ Սովետական

Միության Կոմունիստական պարտիան և կառավարությունը ելնում են այն բանից, որ չկա մի այնպիսի վիճելի և չլուծված հարց, որն անհնարին լիներ լուծել խաղաղ ճանապարհով, շահագրգռված երկրների միջև փոխադարձ բանակցությունների միջոցով։

Հետպատերազմյան տարիները ցույց տվին, որ կապիտալիստական երկրների ռեակցիոն պետական գործիչների քաղաքականությունը, որն ուղղված է սոցիալիստական լագերի երկրների հետ նորմալ գործնական կապեր ունենալու դեմ, անուղղելի վնաս է հասցնում հենց կապիտալիստական սիստեմին։

Սովետական Միությունը պաշտպանում է այն կարծիքը, որ կայուն և երկարատև խաղաղ գոյակցությունն անհնարին է առանց առևտրի։ Համաշխարհային երկու շուկաների՝ սոցիալիստականի և կապիտալիստականի առկայությունը ո՛չ միայն չի բացառում, այլ ընդհակառակը, ենթադրում է բոլոր երկրների միջև փոխադարձ շահավետ առևտուր։

Չի կարելի հաշվի չառնել շատ կապիտալիստական երկրների, այդ թվում՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Ճապոնիայի, ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի ազդեցիկ գործարար շրջանների ձգտումը՝ փոխադարձաբար շահավետ տնտեսական կապեր հաստատելու Սովետական Միության ու սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ։ ՆԱՏՕ-ի «Եկե՛ք սպառազինվենք» լոզունգին հակառակ, Սովետական Միությունն առաջադրել է «Եկե՛ք առևտուր անենք» լոզունգը։ Այժմ ՍՍՌՄ-ն առևտուր է անում արտասահմանյան ավելի քան 80 երկրների հետ, տարեցտարի ավելացնելով իր արտաքին առևտրի ապրանքաշրջանառությունը։

Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի պետական պլանի մասին օրենքը, որն ընդունեց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան, նախատեսում է, որ Սովետական Միության արտաքին առևտրի շրջանառությունը 1962 թ., նախորդ տարվա համեմատությամբ, կավելանա 6,6 տոկոսով։ Զգալիորեն կընդլայնվեն մեր առևտրական կապերը Ասիայի և Աֆրիկայի անկախ զարգացման ուղին բռնած երկրների հետ։ 1962 թ. համարյա կկրկնապատկվեն այդ երկրներն ուղարկվող կոմպլեկտային սարքավորումները լեռնային, մեքենաշինական և այլ ճյուղերի արդյունաբերության ձեռնարկությունների շինարարության համար։

Հաջողությամբ զարգանում են առևտրական կապերը ՍՍՌՄ-ի և բազմաթիվ կապիտալիստական երկրների միջև։ Սերտ բարի-դրացիական հարաբերություններ են հիմնվել Սովետական Միության և Ֆինլանդիայի միջև։ Ընդլայնվում է մեր առևտուրը Իտալիայի, Անգլիայի, Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի և մի շարք այլ երկրների հետ։ Այսպես, օրինակ, ՍՍՌՄ առևտուրը Իտալիայի և Արևմտյան Գերմանիայի հետ 1961 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց մեկ ու կես անգամ, իսկ Անգլիայի հետ՝ 17 տոկոսով։

Խաղաղությունն ապահովելու, փոխըմբռնման հասնելու համար մեծ նշանակություն ունեն տարբեր սիստեմներին պատկանող երկրների պետական գործիչների հանդիպումները։ Վերջին ժամանակվա փորձը ամբողջովին հաստատեց, որ պետական գործիչների անձնական շփումն ու կապերն առավել գործուն և խոստումնալի մեթոդ են պետությունների միջև հարաբերությունները բարելավելու և միջազգային չկարգավորված հարցերը լուծելու համար։ Այդպիսի կոնտակտները մեր արտաքին քաղաքականության կարևոր տարրերից



ձն։ Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը, որն անմիջականորեն ղեկավարում էր Սովետական պետության արտաքին քաղաքականությունը, իր ամբողջ զբաղվածությամբ հանդերձ, հաճախ հանդիպումներ էր ունենում կապիտալիստական երկրների գործիչների հետ, անձամբ մտադիր էր մասնակցել Ջենովայի 1922 թվականի կոնֆերանսին։ Այժմ մեր պարտիան իր պարտքն է համարում պահպանել լենինյան այդ տրադիցիան։

Սովետական Միությունը լավ նախաձեռնություն ցուցաբերեց պառլամենտական դելեգացիաների փոխադարձ այցելություններ կազմակերպելու գործում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից 1955 թ. փետրվարին ընդունված Դեկլարացիան, որը կոչ է անում կոնտակտներ հիմնել պառլամենտների միջև, ամենաբարենպաստ արձագանքն ունեցավ բազմաթիվ երկրներում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հրավերով միայն 1961 թվականին մեր երկիրն այցելեցին 16 օտար պետությունների պառլամենտների պատվիրակություններ։ Մոտ ժամանակներս պատրաստվում են Սովետական Միություն այցելել մի շարք ուրիշ երկրների պառլամենտական պատվիրակություններ։ Իրենց հերթին ՍՍՌՄ Գերագույն Սովետի պատվիրակություններն այցելեցին Ավստրիա, Աֆղանստան, Բրազիլիա, Գանա, Իտալիա, Մեքսիկա և այլ երկրներ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի պառլամենտական խումբը մտավ Միջպառլամենտական Միության մեջ, որը համախմբում է տարբեր երկրների ավելի քան 40 պառլամենտներ։

Խաղաղության ամրապնդման համար մեծ նշանակություն ունի միջազգային կուլտուրական և սպորտային կապերի զարգացումը։ Միայն ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրության գծով 1961 թվականին Սովետական Միություն են այցելել արտասահմանյան երկրների մոտ 4 հազար ներկայացուցիչներ։ Այդ նույն ժամանակ սովետական կուլտուրայի և արվեստի ավելի քան 6 հազար ներկայացուցիչներ եղել են 74 երկրներում։ Հետզհետե ավելի են ամրապնդվում նաև սովետական սպորտսմենների միջազգային կապերը։ 1962 թվականին նախատեսված են ավելի շատ հանդիպումներ գիտության, կուլտուրայի, սպորտի ասպարեզներում։ Հենց դրան են ուղղված այն հայտնի համաձայնագրերը, որոնք կնքվեցին վերջերս Սովետական Միության և ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Իրաքի, Գվինեայի, Գանայի և բազմաթիվ այլ երկրների միջև։

Վերջին տարիներս, մանավանդ, արագորեն են զարգանում մեր երկրի կուլտուրական կապերը։ Այդպիսի կապեր Սովետական Միությունն այժմ ունի ավելի քան հարյուր երկրի հետ։ Ամեն տարի ավելի քան յոթ հարյուր հազար սովետական մարդիկ, այդ թվում և բազմաթիվ տուրիստներ, մեկնում են արտասահման, և ավելի քան յոթ հարյուր հազար օտարերկրացիներ գալիս են մեր երկիրը։ Մեր ժողովուրդը պատրաստ է այսուհետև ես լայնորեն զարգացնել փոխադարձաբար օգտակար միջազգային այդ կապերը, որովհետև դրանք մեծ դեր են խաղում տարբեր երկրների և մայրցամաքների մարդկանց համագործակցության և փոխըմբռնման ամրապնդման գործում։

Պատերազմի ճանապարհը փակող կարևոր գործոն է խաղաղության կողմնակիցների ժամանակակից շարժումը, որն իր շարքերում համախմբում է բոլոր երկրների մարդկանց, անկախ նրանց ռասսայական պատկանելությունից, քաղաքական համոզմունքներից, կրոնական հայացքներից։ Նույնիսկ նրանք, ովքեր վերջերս գտնվում էին այն պնդման ազդեցության տակ, թե իբր խաղաղ գոյակցության առաջարկությունը սոսկ Սովետական Միության «պրոպագան-

դիստական պրիզմն է», այժմ ունկնդրում, խորամուխ են լինում այդ առաջադիմության էության մեջ և ի սրտե ձգտում դեպի այն:

Արդի պայմաններում հզոր ուժ է դարձել կապիտալիստական երկրներում գործող կոմունիստական և բանվորական շարժումը: Մեր օրերում արդեն չկա քիչ թե շատ ծավալված հակապատերազմական մասսայական շարժում ունեցող երկիր, որտեղ չդրսևորվեր կոմունիստների քաղաքական հսկայական ազդեցությունը: Անցած 6 տարիներին կոմունիստական պարտիաների ընտանիքն ավելացավ ևս 12 պարտիաներով, իսկ կոմունիստների ընդհանուր թիվը՝ յոթ միլիոնով: Ինչպես ցույց տվեց վերջերս Մոսկվայում կայացած Արհմիությունների համաշխարհային 5-րդ կոնգրեսը՝ բանվոր դասակարգի այդ մեծ ասամբլեան, ազգային անկախության և խաղաղության համար մղվող պայքարում միջազգային բանվոր դասակարգը չի խնայի իր ջանքերը:

Հանուն կայուն և երկարատև խաղաղության մղվող պայքարում դրական նշանակություն ունեն իմպերիալիստական տերությունների, ինչպես նաև նրանց կողմից ոգեշնչված ռազմական փակ խմբավորումների միջև եղած և հետզհետե սրվող հակասությունները: Նախապատերազմյան հակասությունների վերածնման հետ միասին առաջացան նաև նոր հակասություններ: Ավելի ու ավելի է բորբոքվում պայքարը Լոնդոնի և Բոննի մոնոպոլիստների միջև Արևմտյան Եվրոպայում վճռական դիրք գրավելու համար: Ֆրանսիական իմպերիալիզմն անգլիական իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում փորձում է հենվել Ֆրանսիայի ոխերիմ թշնամու՝ արևմտա-գերմանական ռազմաարդյունաբերական կոնցեռնների վրա: Վաշինգտոնին Անգլիայից ու մյուս իմպերիալիստական տերություններից բաժանում են լուրջ հակասություններ, որոնք դրսևորվում են թե՛ ՆԱՏՕ-ի մեջ, թե՛ մյուս ագրեսիվ բլոկներում և թե շարունակվող պատերազմական մրցավազքում:



Պատերազմների կանխման, խաղաղության ապահովման համար ռեալ գործոնների առկայությունը, սակայն, թույլ չի տալիս ենթադրել, որ բոլորովին վերացված է պատերազմի վտանգը: Ամենալուրջ սխալը կհանդիսանար մեր կողմից՝ իմպերիալիստների ռազմական հնարավորությունների, նրա ագրեսիվ, թալանչիական էության թերագնահատումը: Կոմունիստական պարտիան միշտ էլ զգուշացնում է մեզ այդ վտանգի մասին: Քաջ հայտնի է, որ իմպերիալիստական կառավարությունները շարունակում են հրաժարվել զինաթափումից և ո՛չ միայն պահպանում, այլև ամրապնդում են ագրեսիվ բլոկներն ու խմբավորումները: Ռազմական սպառնալիքի վտանգավոր աղբյուր է շարունակում մնալ իմպերիալիստների կողմից ոգեշնչված «սառը պատերազմի» քաղաքականությունը: Կրկին իր գլուխն է բարձրացրել և զենք է ճոճում արևմտա-գերմանական միլիտարիզմը:

Մեր պարտիան լիովին հաշվի է առնում այդ ամենը և հատուկ ընդգծում է մեծագույն զգոնության պահպանման, երկրի պաշտպանունակությունը արդի ռազմական տեխնիկայի և գիտության մակարդակի վրա պահելու և ՍՍՌՄ Զինված Ուժերի մարտական հզորությունը ամրապնդելու անհրաժեշտությունը: Քանի դեռ չի իրականացվել ընդհանուր և լրիվ զինաթափումը, սոցիալիստական երկրները պետք է անհրաժեշտ մակարդակի վրա պահպանեն իրենց



պաշտպանական հզորությունը: Որքան ուժեղ լինեն սոցիալիստական երկրները տնտեսական և քաղաքական տեսակետից, այնքան ավելի շատ հնարավորություններ կլինեն ընդհանուր անվտանգությունն ապահովելու և իմպերիալիստական ագրեսորների բոլոր մեքենայությունները ձախողելու համար:

Մեր ժողովուրդներն զբաղված են խաղաղ ստեղծագործ աշխատանքով: Սովետական մարդիկ գիտեն խաղաղ կյանքի արժեքը և աներեր պաշտպանում են խաղաղության գործը: ՍՍՌՄ խաղաղասիրական քաղաքականության հիմքում ընկած է ոչ թե թուլությունը, այլ վստահությունը իր ուժերի նկատմամբ, հոգատարությունը ամբողջ մարդկության բարեկեցության և առաջադիմության նկատմամբ: Սոցիալիստական երկրները պատրաստ են մրցելու կապիտալիստական աշխարհի հետ, և մենք հավատում ենք, որ կհաղթենք այդ մրցության մեջ: Բայց մենք ուզում ենք հաղթանակի հասնել ոչ թե պատերազմի, այլ տնտեսական մրցության միջոցով: Երկու սիստեմների հարատև գոյակցության, նրանց միջև խաղաղ մրցակցության վերաբերյալ կոչը վկայում է իրենց գործի նկատմամբ կոմունիզմ կառուցողների մեծ հավատի մասին, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի մասին:

«Ընդունելով իր նոր Ծրագիրը,— հայտարարեց ՍՄԿՊ XXII համագումարի ամբիոնից ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— մեր մեծ պարտիան ամբողջ մարդկության առջև հանդիսավոր կերպով հայտարարում է, որ նա իր արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը տեսնում է այն բանում, որ ո՛չ միայն կանխի համաշխարհային պատերազմը, այլև արդեն մեր սերնդի օրոք պատերազմներն ընդմիշտ բացառի հասարակության կյանքից»:

Մեծ հումանիստ Ա. Մ. Գորկին գրում էր, որ կյանքում միշտ էլ հնարավոր է սխրագործել: Իսկ մեծագույն սխրագործություն է, իհարկե, հերոսական պայքարը հանուն խաղաղության, հանուն այն բանի, որ պատերազմի բոցը չայրի մեր թանկագին մոլորակը: Ամբողջ աշխարհում տեղի է ունեցել պատմական արմատական բեկում, երբ մարդկանց տոգորել է պայծառ հույսերով, վստահություն է ներշնչել իրենց ուժերի նկատմամբ: Խաղաղասեր ուժերը կարող են ի վեր դարձնել պատերազմի հրձիգների ծավալները և ապահովել հաստատուն ու վերջնական խաղաղություն:

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒՄ ԵՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԸ

Աբովյանի շրջանի աշխատավորները, բոլոր կոմունիստները չթուլացող ուշադրությամբ շարունակում են ծանոթանալ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներին ու նյութերին, դրանցից քաղելով իրենց հուզող հարցերի սպառիչ պատասխանները, իրենց պրակտիկ գործունեության կոնկրետ խնդիրները։ Շրջանի պարտիական կազմակերպությունները հաշվի առնելով համագումարի փաստաթղթերի և, մասնավորապես պարտիայի նոր Ծրագրի նկատմամբ մեր մարդկանց ցուցաբերած մեծ հետաքրքրությունը, ամեն ինչ անում են լավ կազմակերպելու այդ նյութերի խոր պարզաբանման և ուսումնասիրության գործը։ Ներկայումս այն դարձել է մեր ագիտացիոն-մասսայական և պրոպագանդիստական աշխատանքի կենտրոնական խնդիրը։

Քաղաքական լուսավորության սիստեմի բոլոր օղակներում՝ քաղդպրոցներում, խմբակներում և սեմինարներում, ուսումնական նոր պլանների ու ծրագրերի համաձայն, կոմունիստներն ու անպարտիականները ուսումնասիրում են պարտիայի XXII համագումարի նյութերը։ Ուսումնական տարին սկսվելուց հետո, երբ հայտնի դարձավ, որ քաղաքական լուսավորության ցանցում այս տարի կոմունիստներն ուսումնասիրելու են այդ նյութերը, լրացուցիչ կերպով մոտ երեք հարյուր անպարտիականներ և մի քանի տասնյակ կոմերիտական ակտիվիստներ ցանկություն հայտնեցին սովորելու պարտիական խմբակներում ու քաղդպրոցներում։ Պարտիական կազմակերպությունները սիրով ընդառաջեցին նրանց։

Պարտիական լուսավորության ցանցի նոր ուսումնական տարվա նախօրյակին, հաշվի առնելով յուրաքանչյուր կոմունիստի ցանկությունը, շրջանում կազմակերպվեց տարբեր տիպի 52 խմբակ և 45 տեսական սեմինար, ուր այժմ շերտավորված կերպով, ըստ խմբակների առանձնահատկության և ունկնդիրների պատրաստության մակարդակի, կազմակերպված է ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի համակողմանի ուսումնասիրությունը։ Դա հնարավորություն է ընձեռում ավելի արդյունավետ դարձնելու քաղաքական ուսուցումը և այն սերտորեն կապելու կոմունիստական շինարարության գործնական խնդիրների հետ։ Ունկնդիրները ջանում են որքան հնարավոր է լավ ըմբռնել համագումարի որոշումների կարևորագույն դրույթները, հասկանալ պարտիայի նոր Ծրագրի ոգին, նրա էությունը։ Պարապմունքները հաջող ու արդյունավետ են ընթանում հատկապես Գառնիի, Արամուսի, Մայակովսկու, Հացավանի կոլտնտեսությունների, Քանաքեռի և Պտղնիի այգեգործական սովխոզների, հանքային ջրերի և ապակու տարայի գործարանների քաղխմբակներում ու տեսական սեմինարներում։



Պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ ունի Արամուսի կոլտնտեսության զոոտեխնիկ Ն. Առաքելյանը. Նա գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի ղեկավարն է։ Պրոպագանդիստի գործունեության մեջ ուսանելին այն է, որ նա կարողանում է ոչ միայն լավ հրամցնել նյութը, այլև ունկնդիրների մեջ սեր ու ճաշակ պատվաստել դեպի թեորիական հարցերը։ Պարապմունքներն անցնում են աշխույժ. ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ, հաճախ բռնկվում են տաք վեճեր։ Այստեղից էլ հարցերի այն տարափը, որ ամեն անգամ ուղղվում է խմբակի ղեկավարին։ Վերջին պարապմունքի ժամանակ ունկնդիրներից մեկը հարցնում էր, թե կոմունիզմի օրոք ինչպե՞ս է կազմակերպվելու մթերքների բաշխումը. մյուսին հետաքրքրում էր այն հարցը, թե ի՞նչ տարբերություն կա անհատի պաշտամունքի և ղեկավարի հեղինակության միջև, երրորդն ուզում էր հանգամանորեն իմանալ Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների՝ ՍՄԿՊ-ի հասցեին արած զրպարտությունների բուն էությունը։

Գաղափարական բարձր մակարդակով են անցնում քաղխմբակի պարապմունքները Կաթնաղբյուրի տնկարանային տնտեսությունում, որտեղ պրոպագանդիստ է Ժ. Աբրահամյանը։ Պարտիայի XXII համագումարի նյութերի ուսումնասիրությունն անցնում է շատ աշխույժ, հարցերի քննարկմանը մասնակցում են ունկնդիրների մեծ մասը, հաճախ տեղի են ունենում մտքերի յուրջ փոխանակություններ։ Քաղաքական ուսուցման նկատմամբ կոմունիստների այդպիսի հետաքրքրությունը բացատրվում է ուսումնասիրվող թեմաների ակտուալությամբ։

Բայց նույնիսկ ամենահրապուրիչ և բոլորին հուզող նյութը վատ հրամցնելու դեպքում չի կարող շարժել մարդկանց հետաքրքրասիրությունը, միտքը։ Ակնհայտ է, որ քաղաքական ուսուցման հաջողությունը, նրա գաղափարական հագեցվածությունը, առաջին հերթին, կախված է պրոպագանդիստից, նրա հմտությունից և ունակություններից։ Այս տարի պրոպագանդիստներ են առաջադրվել տեսական անհրաժեշտ պատրաստություն և աշխատանքի հարուստ փորձ ունեցող մարդիկ, մեր գյուղական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները։ Ներկայումս պրոպագանդիստների մեծ մասը արտադրությանն անմիջականորեն մոտ կանգնած մասնագետներ ու տնտեսավարներ են. դա հնարավորություն է տվել քաղաքական ուսուցումն ավելի ճիշտ զուգակցելու տվյալ կոլտնտեսության, սովխոզի, գործարանի, կառույցի կամ հիմնարկի կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների կենսագործման հետ։

Պարտշրջկոմը օգնում է պրոպագանդիստներին՝ բարձրացնելու իրենց տեսական պատրաստությունը, բանավոր խոսքի կուլտուրան։ Այդ գործում մեծ դեր է խաղում շրջկոմին կից գործող մշտական սեմինարը, որտեղ պարբերաբար քննարկվում են ինչպես տեսական, այնպես էլ մեթոդական բազմաթիվ հարցեր։ Պարտիական լուսավորության ցանցում ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի ուսումնասիրման կապակցությամբ արդեն հրավիրվել է պրոպագանդիստների երկու սեմինար պարապմունք. բացի ուսումնական ծրագրով նախատեսված թեմաների մշակումից, պրոպագանդիստները ծանոթացել են շրջանի էկոնոմիկայի զարգացման հեռանկարների հետ։ Միաժամանակ շրջկոմի աշխատողները տեղերում եղած ժամանակ օգնում են պրոպագանդիստներին մեթոդապես ճիշտ վարելու պարապմունքները։

Նկատելիորեն բարելավվել է պարտշրջկոմին առընթեր քաղլուսկաբինետի

գործունեությունը։ Համագումարի նյութերը ուսումնասիրողներին և պրոպա-
գանդիստներին օգնելու նպատակով կազմված և տեղերն է ուղարկված օգտա-
գործվելիք գրականության ցանկը, այդ գրականությունը ցուցադրվում է կաբի-
նետում։ Ճաշակով պատրաստված ցուցափեղկերը, ստենդները կաբինետ այցե-
լողին պատմում են մեր երկրի տնտեսության ու կուլտուրայի բնագավառնե-
րում ձեռք բերած խոշոր հաջողությունների, կոմունիզմի կառուցման հոյակապ
պլանների մասին։ Սիստեմատիկաբար տեղերում կազմակերպվում են անհա-
տական ու խմբակային կոնսուլտացիաներ, տալիս քաղուսանցի ունկնդիրնե-
րին հետաքրքրող հարցերի պատասխանները։

Մեր շրջանի գյուղերում ու ավաններում ծավալվում է դասախոսական
պրոպագանդան։ Շրջկոմի դասախոսական խմբի անդամների և ակտիվի ուժե-
րով պարբերաբար կազմակերպում ենք զեկուցումներ, դասախոսություններ
պարտիայի Ծրագրի նշանակության, նրանում արծարծված հիմնական հարցե-
րի շուրջը։ Արդեն տեղերում 2—3 զեկուցումներ են կարդացվել կոմունիզմի
նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիզմ կառուցողի բարոյական
կոդեքսի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, գաղութակալության փլուզ-
ման, գյուղատնտեսության և գյուղում հասարակական հարաբերությունների
զարգացման, երկու սիստեմների խաղաղ գոյակցության և այլ թեմաների
վերաբերյալ։ Անցած երկու ամսում շրջանում կարդացվել է ավելի քան 150
դասախոսություն։ Դա մեծ չափով օգնում է խմբակներում, սեմինարներում
ընդգրկված և մարքսիստական-լենինյան տեսությունն ինքնուրույն կերպով
ուսումնասիրողներին՝ ավելի լավ հասկանալու պարտիայի համագումարի փաս-
տաթղթերի խոր իմաստը։

Հարկավոր է նշել, որ շրջանի պարտիական շատ կազմակերպություններ
սկսել են ավելի մեծ ուշադրություն հատկացնել քաղաքական լուսավորության
ցանցի կազմակերպմանը, կոմունիզմ կառուցողների համագումարի նյութերի
պարզաբանմանը։ Նրանք ոչ միայն ուշադիր հետևում են, որպեսզի բովանդա-
կալից անցնի քաղխմբակի ու տեսական սեմինարի ամեն մի պարապմունք,
այլև պարտբյուրոյի նիստերում, պարտիական ընդհանուր ժողովներում հա-
ճախակի քննարկում են քաղաքական ուսուցման վիճակը։ Պարտիական կազ-
մակերպությունների նախաձեռնությամբ կազմակերպվում են XXII համագու-
մարի նյութերին նվիրված հարց ու պատասխանի երեկոներ, որոնց ակտիվ
կերպով մասնակցում են կոմունիստներն ու անկուսակցականները։ Օրինակ,
շատ լավ անցավ Հրազդանի կոլտնտեսության պարտկազմակերպության կազ-
մից անցկացված երեկոն, որի ժամանակ պարզաբանվեց 12 հարց։ Ջերմ
են անցնում ՍՄԿՊ XXII համագումարի պատգամավոր, Աբովյանի շրջսովետ-
գործկոմի նախագահ ընկ. Վարդուշ Սարգսյանի հանդիպումները աշխատավոր-
ների հետ. նա պատմում է պարտիայի մեծ համաժողովից ստացած իր տպա-
վորությունների մասին, որոնք ուշադրությամբ են լսում մեր աշխատավոր-
ները։

Սակայն մեր աշխատանքում կան նաև թերություններ։ Դեռևս շրջանի
առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ հարկ եղած ուշա-
դրությունը չեն հատկացնում քաղաքական լուսավորության գործի բարելավ-
մանը, ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի լայն պարզաբանմանը։ Միշտ
չէ, որ քաղխմբակներում ունկնդիրներն ակտիվ կերպով մասնակցում են թեմա-
ների քննարկմանը, որոշ պրոպագանդիստներ ոչ միայն մեթոդապես հաջող չեն



վարում պարապմունքը, այլև չեն կարողանում մատուցվող նյութը սերտորեն
կապել մեր կյանքի պրակտիկ հարցերի հետ։ Մենք լավ չենք ուսումնասիրում,
ընդհանրացնում ու տարածում լավագույն պրոպագանդիստների, առաջավոր
խմբակների ու սեմինարների աշխատանքի դրական փորձը։

Մենք ձգտում ենք արագորեն վերացնել այդ թերությունները և ավելի լայ-
նորեն կազմակերպել պարտիայի XXII համագումարի նյութերի ուսումնասիրու-
թյունը, կոմունիստներին, բոլոր աշխատավորներին զինել նոր հասարակարգի
կառուցման վիթխարի ծրագրով, դրանով իսկ նրանց ստեղծագործական ջան-
քերը ուղղել այդ ծրագրի կենսագործմանը։

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ

ՀԿՊ Աբովյանի շրջկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ։

## ՄԵԾ ՊԼԱՆԻ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հաջողությամբ ավարտվեց յոթնամյակի երրորդ տարին. մի նոր վճռական
քայլ արվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապար-
հին։ Անցած մեկ տարում խոշոր չափով աճեց նյութական և հոգևոր բարիքների
արտադրությունը, մեր երկիրը նվաճեց ևս մեկ նոր բնագիծ։

1961 թվականը քրտնաջան ու արդյունավետ աշխատանքի տարի էր նաև
Ալավերդու շրջանի աշխատավորների համար։ Կազմակերպելով և ուղղություն
տալով բանվորների, կոլտնտեսականների ու մասնագետների ստեղծագործա-
կան ջանքերին, զարգացնելով նրանց եռանդն ու նախաձեռնությունը, շրջանի
պարտիական կազմակերպություններն ապահովեցին առաջադրված խնդիրների
կենսագործումը։ Ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 6-ին կատարվեց արդյունա-
բերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը. 1960
թվականի համեմատությամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները
տվեցին համախառն արտադրանքի 13,7 տոկոս աճ, իսկ աշխատանքի արտա-
դրողականությունը բարձրացավ 8 տոկոսով։ Պլանից դուրս երկիրն ստացավ
2,1 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք՝ պղինձ, քիմիական նյութեր,
զանազան մետաղներ, հրակայուն աղյուս և այլն։

Արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատա-
վորման, արտադրական կարողությունների ու ներքին ռեզերվների օգտա-
գործման շնորհիվ գործարանների ու հանքերի կոլեկտիվները ձեռք բերեցին
տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներ. խնայվեց 800 հազ. կիլովատ-ժամ
էլեկտրաէներգիա, երեք հազար տոննա պայմանական վառելանյութ, արտա-
դրանքի ինքնարժեքը իջավ 2 տոկոսով, իսկ արտապլանային օգուտների գու-
մարը կազմեց գրեթե 300 հազար ռուբլի։

Մեր պարտիայի ու ժողովրդի կյանքում մեծագույն իրադարձություն էր
ՍՄԿՊ XXII համագումարը։ Մասնակցելով համագումարի պատվին ծավալված
սոցիալիստական մրցությանը, շրջանի արդյունաբերության աշխատողները
պայքարում էին երկրին տալու ավելի շատ, էժան ու բարձրորակ արտադրանք։
Համաժողովրդական արշավի օրերին նոր թափ ստացավ կոմունիստական աշ-
խատանքի կոլեկտիվների և հարվածայինների շարժումը, ավելի վառ դրսևոր-

վեց աշխատավորների ստեղծագործական միտքը։ Ներկայումս արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարում են յոթ ցեխ, 63 բրիգադա, ուր ընդգրկված են 1300 մարդ, իսկ 500 աշխատողներ արդեն արժանացել են այդ բարձր կոչմանը։ Մեկ տարում ընդունվել է 387 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրված 308 առաջարկություններից տնտեսվել է 157 հազար ռուբլի։

XXII համագումարի բացման նախօրյակին ալավերդցիները զեկույց ներկայացրին, որ կատարել են իրենց ստանձնած բարձր պարտավորությունները։ Մրցության մեջ առավել բարձր ցուցանիշների հասան պղնձաքիմիական կոմբինատի, Ախթալայի հանքերի, Թումանյանի հրակայուն աղյուսի, հացի ու գարեջրի գործարանների, անտառտնտեսությունների կոլեկտիվները։ Սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարեցին նաև երկաթուղային ու ավտոմոբիլային տրանսպորտի աշխատողները։

1961 թվականին արդյունաբերության և շինարարության մեջ տեղի ունեցան որակական որոշակի տեղաշարժեր։ Օրինակ, Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանը, որն իր հիմնադրման օրից՝ ինը տարի շարունակ ստանում էր պետական դոտացիա, 1961 թվականին անցավ շահութաբեր ձեռնարկությունների շարքը և տարին փակեց 60 հազար ռուբլի օգուտով։ Արտադրության աշխատողների և գիտնականների համատեղ ջանքերով ավարտվեց հազվագյուտ ու ցրված մետաղների ստացման տեխնոլոգիայի մշակումը, որով հնարավորություն ընձեռվեց արդեն այս տարի պղնձաքիմիական կոմբինատում արտադրելու սելեն, թելուր և ռենիում։ Շինմոնտաժային տրեստի Ախթալայի արտադրական իրերի կոմբինատում իրացվեց երկաթ-բետոնե հավաքովի կոնստրուկցիաների մասսայական թողարկումը և այլն։

Անբարենպաստ բնա-կլիմայական պայմաններն անցյալ տարի լուրջ հարված հասցրին մեր շրջանի գյուղատնտեսությանը և, հատկապես, շարահերկ կուլտուրաներին ու այգեգործությանը։ Սակայն մեր կոմունիստները չնահանջեցին դժվարությունների առաջ. գյուղական պարտիական կազմակերպությունները հանդես բերին կազմակերպչական մեծ ուժ ու կարողություն՝ հաղթահարելու բնության կամայականությունները, մեղմացնելու պատճառած վնասները։ Ժամկետից երեք ամիս շուտ կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեցին մսի ու կաթի վաճառքի իրենց սոցիալիստական պարտավորությունները. 1960 թվականի համեմատությամբ նրանք պետությանը վաճառեցին 410 տոննա ավելի միս և 830 տոննա կաթ. կատարվեց նաև ձվի վաճառքի պլանը։ Գերակատարվեց մսի արտադրության պարտավորությունը. չնայած կաթի համախառն արտադրանքը մեկ տարում ավելացավ գրեթե հինգ տոկոսով, սակայն մենք չկատարեցինք մեր խոստումը։

Մեր ջանքերը որոշ արդյունք տվեցին դաշտավարության բնագավառում։ Չնայած թերակատարվեցին բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրության և վաճառքի պլանները, այնուամենայնիվ 1960 թվականի համեմատությամբ արտադրվեց ու պետությանը վաճառվեց երկու անգամ ավելի շատ բանջարեղեն, ինչպես և 150 տոննայով ավելի կարտոֆիլ։ Այնտեղ, որտեղ կոմունիստներն իրենց ձեռքը վերցրին պայքարի ղեկը, ստացվեց բարձր արդյունք. այսպես՝ Թումանյանի, Լորուտի և Աթանի սովխոզները, միջին հաշվով, հեկտարից հավաքեցին 120—150 ցենտներ կարտոֆիլ։



Պարտիական կազմակերպությունների եռանդուն գործունեությունը մասնավորապես լավ երևան եկավ կերի հայթայթման գործում։ Ոչ մի կիլոգրամ խոտ ու ծղոտ չմնաց դաշտում, հավաքվեց նաև անտառային բացատների խոտը։ Կերի բազան ամրացնելու նպատակով եղբայրական ռեսպուբլիկաներից ներմուծված երկու հազար տոննա խոտից ու ծղոտից բացի, շրջանում առաջին անգամ կերի համար կուտակվեց 10 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ, եգիպտացորենի կանաչ մասսայից պատրաստվեց 12 հազար տոննա սիլոս։

Ինչ խոսք, որ մեր գործունեության մեջ նկատվեցին թերություններ, եղան առանձին վրիպումներ. որոշ տեղերում ու բնագավառներում չկարողացանք ինչպես հարկն է օգտագործել հնարավորություններն ու ռեզերվները։

Չնայած այդ ամենին, անցյալ տարի ավելի ցայտուն երևաց մեր պարտիական կազմակերպությունների հասունությունը, քաղաքական և կազմակերպչական աշխատանքի միջոցով մարդկանց մոբիլիզացնելու նրանց հմտությունը, վարպետությունը։ Կատարելագործվեցին տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարության ձևերն ու մեթոդները, արտադրության վճռական տեղամասերն ապահովվեցին ձեռներեց ու գործունյա կադրերով։

ՍՄԿԿ XXII համագումարը մեր առջև բաց է արել ստեղծագործական աշխատանքի լայն ասպարեզ։ Առաջիկա տասնամյակում շրջանի արդյունաբերական արտադրության ծավալը մեծանալու է երեք անգամ։ Կառուցվելու են արդյունաբերական նոր ձեռնարկություններ, ցեխեր, մեծ չափով ընդլայնվելու և վերակառուցվելու են եղածները։ Նախատեսվում է մեծ գործ կատարել քաղաքի, բանվորական ավանների և կոլտնտեսային գյուղերի բարեկարգման, կոմունալ կենցաղային օբյեկտների շինարարության ուղղությամբ և այլն։

Մեր տնտեսության մեջ հարցերի հարցը կապիտալ ներդրումների իրացումն է, շինարարական-մոնտաժային աշխատանքների լավ կազմակերպումը։ Ալավերդու շրջանի կառուցումների ծավալի մասին ընդհանուր պատկերացում կազմելու համար բերենք հետևյալ թվերը. եթե 1959 թվականին շին-մոնտաժային աշխատանքների ծավալը կազմել է 1,4 միլիոն ռուբլի, 1960 թվականին՝ 6,3, 1961 թվականին՝ 9, ապա 1962 թվականին այն կկազմի 12 միլիոն ռուբլի։

Այսպիսով, յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի համեմատությամբ, ընթացիկ տարում գրեթե ինն անգամ ավելանալու է շինարարական աշխատանքների ծավալը։

1962 թվականին շարունակվելու է պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցումը։ Շահագործման է հանձնվելու էլեկտրոլիզի ցեխի երրորդ հերթը, որով հնարավորություն կստեղծվի 1963 թվականին համարյա կրկնապատկելու պղնձի թողարկումը. ավարտվելու է երկրորդ անոդային վառարանի կառուցումը, կարգավորվելու է սառնարանային տնտեսությունը։

Պղնձարջասպի արտադրությունն ավելացնելու նպատակով կառուցվելու է լրացուցիչ երկու աշտարակ, ավելանալու է աշտարակների թիվը ծծմբաթթվի բաժանմունքում և այլն։ Յոթնամյակի վերջում հիմնականում ավարտվելու է կոմբինատի վերակառուցումը, որի շնորհիվ, 1959 թվականի համեմատությամբ, սև և ռաֆինացված պղնձի, ծծմբաթթվի, պղնձարջասպի և սուպերֆոսֆատի թողարկումը կավելանա մի քանի անգամ։

Կառուցվելու է և 1963 թվականին կավարտվի Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկան, որով կմեծանա հանքերի արդյունաբերական արտադրանքի ծավալը, անհամեմատ կավելանա պղնձի արտադրությունը և կիջնի նրա ինքնար-

ժեքը։ Մեծ չափով կկրճատվի հանքաքարի փոխադրումը։ Յոթնամյակի վերջում՝ նրա առաջին տարվա համեմատությամբ, կապարի կոնցենտրատի, ցինկի կոնցենտրատի և բարիտի կոնցենտրատի թողարկումը նույնպես կավելանա մի քանի անգամ։ Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանում կառուցվում է նոր, հզոր ցեխ, որն արտադրելու է ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունեցող էլեկտրակերամիկական շինվածքներ։ Կառուցվում են կաթի և հացի գործարաններ. առաջիկա երկու տարում ավարտվելու է Կիրովական—Ալավերդի—Այրում ասֆալտապատ խճուղային ճանապարհի շինարարությունը։

Մեծ են շրջանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարները։ Առաջիկա տասնամյակում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելանալու է 2—2,5 անգամ։ Նոր կազմակերպված Ճոճկանի և Շնողի սովխոզների բազայի վրա պլանավորվում է մինչև 1970 թվականը հիմնել ավելի քան 1500 հեկտար խաղողի և մերձարևադարձային կուլտուրաների այգիներ։ Այդ նպատակով ընթացիկ տարում ավարտվելու է Ճոճկանի ոռոգման ջրանցքի առաջին հերթի շինարարությունը։ Թումանյանի ենթաշրջանի սովխոզներում հիմնականում զարգանալու է կաթնաանասնապահությունը՝ կրկնապատկվելու է կովերի գլխաքանակը և եռապատկվելու անասնաբուծական մթերքների համախառն արտադրանքը։ Ուզունլարի ենթաշրջանի կոլտնտեսություններում արտադրության հիմնական ճյուղերն են լինելու՝ տավարաբուծությունը, այգեգործությունն ու ծխախոտագործությունը։ Արդվիի կոլտնտեսության բազայի վրա կառուցվելու է թռչնաբուծական ֆաբրիկա՝ 20—30.000 թև թռչունի տարողությամբ։ Միայն 1962 թվականին շրջանի տասը անասնապահական ֆերմաներում կիրառվելու է էլեկտրակիթ։

Ղեկավարվելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումներով, շրջանի պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն են հատկացնում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը։ Հաջողությամբ կատարվեց բնակարանային շինարարության անցյալ տարվա պլանը՝ կառուցվեց և շահագործման հանձնվեց տասը հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ առաջիկա տասը տարում կառուցվելու է ավելի քան հարյուր հազար քառակուսի մետր։ Դրա հետ մեկտեղ նախատեսվում է կառուցել դպրոցների, մանկապարտեզների, մանկամսուրների, խանութների ու ճաշարանների նոր շենքեր։ Արագ տեմպերով կառուցվում են Ախթալայի լեռնագործների գեղատեսիլ և բարեկարգ բանվորական ավանը, Ուզունլարի պիոներական ճամբարը. Շամլուղում, Թումանյանի բանվորական ավանում և Տաշտաձորում շահագործման են հանձնվել նոր ճաշարաններ։

Տարեցտարի բարեկարգ ու գեղեցիկ է դառնում պղնձագործների քաղաքը՝ Ալավերդին։ Այստեղ կառուցվում են նոր ձեռնարկություններ, կուլտուրայի նոր օջախներ։ Դեբետի ձախ ափին հիմնադրվելու է կուլտուրայի ու հանգստի պարկ։ Վերջերս շահագործման հանձնվեցին երկաթուղային նոր կայարանը, Սանահինի թաղամասի ջրմուղը, գետի վրայով անցնող նոր կամուրջը, բազմաթիվ բնակելի շենքեր, խանութներ և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։ Նախատեսվում է Սանահինի սարահարթում կառուցել 14 հազար բնակչություն ունեցող ավան՝ կոմունալ-կենցաղային, կուլտուրական բոլոր օբյեկտներով, այն միացվելու է քաղաքի հետ ճոպանուղիով և բարեկարգ ճանապարհով։ Խոշոր գործ է արվելու գյուղերի բարեկարգման, կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրական նոր ձեռնարկությունների շինարարության ուղղու-



թյամբ։ 1962—1965 թթ. ընթացքում գյուղերում կկառուցվեն՝ հինգ կուլտուրայի պալատ, չորս դպրոց, մեկ գիշերօթիկ դպրոց, տասնյակ մանկապարտեզներ, մանկամսուրներ, բաղնիքներ և այլն։

Աշխատավորների կուլտուրական-տեխնիկական մակարդակի հետագա բարձրացումը, տնտեսության համար բարձրորակ կադրերի պատրաստումը՝ մեր պարտիական կազմակերպությունների կարևոր խնդիրն է։ Մոտակա երկու տարում երկու անգամ կընդարձակվի տեխնիկական ուսումնարանը, որը միջին որակավորման մասնագետներ կպատրաստի արդյունաբերության բոլոր ճյուղերի և շինարարության համար։ Այժմ շրջանում գործում են կուլտուրայի, տեխնիկայի, էկոնոմիկայի և բժշկական վեց համալսարաններ։ Վերջին երկու տարում պղնձաքիմիական կոմբինատի և այլ ձեռնարկությունների ավելի քան 70 երիտասարդ բանվորներ ընդունվել և սովորում են Պոլիտեխնիկ ինստիտուտի հեռակա ու ստացիոնար բաժիններում։

Առաջադրված խնդիրներն անթերի կատարելու համար պահանջվում է ամեն կերպ ուժեղացնել պարտիական ներգործությունը տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր կողմերի վրա, զարգացնել աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը, գործարար բնույթ տալ սոցիալիստական մրցությանը։ Այնինչ մենք ունենք առանձին պարտիական կազմակերպություններ, որոնք լավ չեն զբաղվում արտադրության կազմակերպման, տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարման մեթոդների կատարելագործման հարցերով։

Այսպես. անցած տարի Շամլուղի հանքերը չկատարեցին իրենց արտադրական պլանները, երկրին պարտք մնալով մեծ քանակությամբ հանքաքար։ Դրա պատճառն այն է, որ պարտիական կազմակերպությունը և հանքերի վարչությունը ուշադրություն չդարձրին աշխատանքի հստակ կազմակերպման, պետական ու աշխատանքային կարգապահության բարձրացման վրա։ Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում դեռևս ցածր է արտադրության կուլտուրան, առանձին ձեռնարկություններում (տեղարդկոմբինատ, հացի և Թումանյանի փայտամշակման գործարաններ, անտառտնտեսություն) քիչ գործ է արվում նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ, դեռևս ցածր է թողարկվող արտադրանքի որակը։

Իր առաջադրանքը թերակատարեց շինմոնտաժային տրեստը. անկատար մնաց պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցման, հարստացուցիչ ֆաբրիկայի կառուցման աշխատանքների գծով նախատեսված տարեկան ծրագիրը. Ժողտնտխորհը և շրջանային պարտիական կազմակերպությունները շինարարությանը չապահովեցին պահանջված կադրերով ու մեխանիզմներով։

Գյուղատնտեսության բնագավառում, անշուշտ, արդյունքներն ավելի մեծ կլինեին, եթե բոլոր կոլտնտեսային ու սովխոզային պարտիական կազմակերպությունները խորամուխ լինեին արտադրության հարցերում, հանդես բերեին ավելի մեծ հաստատակամություն ու սրտացավություն։

Ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների և այլ գերատեսչությունների անհետևողականության պատճառով ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող մի շարք հարցեր պատշաճ կերպով չեն լուծվում։

Յուրաքանչյուր տարի պղնձաքիմիական կոմբինատը Դեբետ գետն է թափում ավելի քան հարյուր հազար տոննա խարամ։ Արդեն երկու տարի է, ինչ

կոմբինատի ինժեներա-տեխնիկական աշխատողները, ռեսպուբլիկայի գիտնականների սերտ համագործակցությամբ մշակել են խարամից խողովակներ և այլ կերամիկական շինվածքներ պատրաստելու մեթոդը։ Արդյունքը մեծ է։ Չնայած այդ հարցի առթիվ ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը մեկ տարի առաջ որոշում է ընդունել, սակայն Ժողտնտխորհի Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության վարչությունը գործնական քայլեր չի անում՝ այդ որոշումը կատարելու։ Կոմբինատում պղնձարջասպի փայտե տակառները փոխարինված չեն ռետինած պարկերով, որի շնորհիվ տարեկան կխնայվի մոտ 6000 խորանարդ մետր շինափայտ։

Կապիտալ ներդրումների ծավալը վերջին երեք տարում ավելացել է ավելի քան ինն անգամ, մինչդեռ շինարարական-մոնտաժային տրեստում աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը գտնվում է նախկին վիճակում։ Հայկական ՍՍՌ Պետպլանը և Ժողտնտխորհի Շինարարության վարչությունը պետք է կառուցումներն ապահովեն ինդուստրիալ մեխանիզմներով ու սարքավորումներով, հակառակ դեպքում պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցման, Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի և այլ կարևոր կառույցների շինարարական աշխատանքները կարող են ձախողվել։

Շրջանում չկա մի շինարարական կազմակերպություն, որ կենտրոնացված կարգով զբաղվեր կոլտնտեսություններում և սովխոզներում կատարվող շինարարությունների գործով։ Այդ բացասաբար է անդրադառնում տնտեսությունների զարգացման և հեռանկարային հարցերի լուծման վրա։

Պարտիայի XXII համագումարը նշեց, որ անհրաժեշտ է շուտափույթ վերացնել ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ դեռևս գոյություն ունեցող թերությունները։ Հայկական ՍՍՌ Պետպլանի համապատասխան բաժինները շրջանի արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության պլանավորման հարցերը չեն լուծում իրար հետ շաղկապված, հաշվի չեն առնվում շրջանի էկոնոմիկան, տնտեսական հնարավորությունները և բանվորական ուժի առկայությունը։ Դա հաճախ հասցնում է սխալ պլանավորման և մեծ վնաս հասցնում շրջանի տնտեսության բոլոր ճյուղերի համաչափ զարգացմանը։

Գործողության մեջ է կոմունիստական շինարարության մեծ պլանը։ Մեր կոմունիստների խնդիրն է՝ աշխատավորների անսպառ եռանդը նպատակամղել այդ պլանի կենսագործմանը։ Դրա համար պահանջվում է ճիշտ վարել տնտեսությունը, խելացիորեն օգտագործել եղած բոլոր ռեզերվները, մարդկանց դաստիարակել աշխատանքի դրական օրինակների միջոցով, բարձրացնել աշխատավորների կոմունիստական գիտակցականությունը և քաղաքական ակտիվությունը։ Պահանջվում է բարձրացնել ամեն մի աշխատողի պատասխանատվությունը, ուժեղացնել պարտիական, պետական ու հասարակական վերահսկողությունը պարտիայի ու կառավարության որոշումների և դիրեկտիվների ճըշգրիտ կատարման նկատմամբ։

Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՀԿՊ Ալավերդու շրջկոմի քարտուղար



# ԵՐԱՇԽԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԵՐԱՇԽԱՎՈՐՎՈՂՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սովետական ժողովրդի ավանգարդի՝ ՍՄԿՊ-ի ամրությունն ու մարտունակությունն ամենից առաջ պայմանավորված է նրա կազմով։ Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է հատկացրել պարտիայի շարքերի աճմանը և, գլխավորապես, նրա որակական կազմին։ 1919 թվականին նա գրել է. «Պարտիայի ցուցական անդամներ մեզ ձրի էլ հարկավոր չեն։ Աշխարհում միակ կառավարական պարտիան, որը ոչ թե անդամների թվի մեծացման, այլ նրանց որակի բարձրացման, «խցկվածներից» պարտիան դտելու մասին է հոգում, մեր պարտիան է՝ ռևոլյուցիոն բանվոր դասակարգի պարտիան» (Երկեր, հատ. 30, էջ 60)։

ՍՄԿՊ XX համագումարից հետո, պարտիայի գործադրած վիթխարի ջանքերի շնորհիվ, հաղթահարվեցին անհատի պաշտամունքի իրադրության մեջ ծնունդ առած սխալները, խեղաթյուրումները և լենինիզմի ոգուն խորթ մեթոդները. վերականգնվեցին պարտիական կյանքի լենինյան նորմերը և կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը պարտիայի ու պետության բոլոր օղակներում։ Բարձրացավ պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերը, ավելի ամրապնդվեցին նրա կապերը ժողովրդի հետ։ Պարտիայի հեղինակության աճմամբ, նրա քաղաքականության նկատմամբ սովետական մարդկանց մեծ վստահությամբ պետք է բացատրել թարմ ուժերի լայն հոսքը ՍՄԿՊ շարքերը։ ՍՄԿՊ XX—XXII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում մեր պարտիայի անդամների թիվն ավելացավ գրեթե երկու և կես միլիոնով, կոմունիստների ընդհանուր թիվը հասավ մոտ տասը միլիոնի։

ՍՄԿՊ շարքերի աճման և նրա կազմի մշտական բարելավման հարցերը գտնվում են ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Սկզբնական պարտիական կազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմները սկսել են ավելի ուշադիր զբաղվել այդ հարցերով, բարձրացել է նրանց պահանջկոտությունը պարտիայի մեջ ընդունվողների նկատմամբ։ Պահպանելով անհատական ընտրության սկզբունքը, վերջին տարիներին պարտիայի շարքերն են ընդունվել մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ առաջավոր բանվորներ, կոլտնտեսականներ և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ։

Մեր կյանքի աննախընթաց զարգացման հետ մեկտեղ բարձրանում է պարտիայի դերը, ավելի պարտավորեցնող է դառնում կոմունիստի կոչումը։ Այն պարզորոշ արտացոլված է ՍՄԿՊ նոր Կանոնադրության մեջ. այնտեղ լիովին պահպանված են պարտիայի անդամության լենինյան դրույթները, շարադրված են կազմակերպական այն նորմերը, որով կարգավորվում է ՍՄԿՊ-ի մեջ ընդունելությունը։ Կանոնադրությունն ավելի բարձր պահանջներ է ներկայացնում պարտիական կազմակերպություններին՝ ՍՄԿՊ-ի նոր անդամների ընդունելությունը կատարելու գործում։

Յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի կարևոր խնդիրն է՝ մշտապես հոգալ պարտիական շարքերի որակական կազմի բարելավման մասին, որպեսզի կանխվի նրա շարքերը կոմունիստի բարձր կոչմանն անարժան մարդկանց ներթափանցումը։ Այդ գործում խոշոր է պարտիայի մեջ ընդունվողներին կոմունիստների տված երաշխավորության դերը։

Երաշխավորելը խիստ պատասխանատու գործ է։ ՍՄԿՊ շարքերն ընդունվել ցանկացողին երաշխավորելով, կոմունիստը պարտավոր է նրան լավ ճա-

ճանաչել համատեղ արտադրական և հասարակական աշխատանքից, վստահ լինել, որ նա իր գործունեությամբ ու վարքագծով միշտ բարձր կպահի և երբեք չի արատավորի լենինյան պարտիայի անդամի կոչումը։ Կոմունիստն իր վրա է վերցնում երաշխավորվողի անձի քաղաքական ու գործարար հատկանիշների բնութագրումը։ ՍՄԿՊ նոր Կանոնադրության առաջին գլխում, ուր խոսվում է պարտիայի անդամների պարտականությունների և իրավունքների մասին, ասված է. «Երաշխավորողները պարտիական կազմակերպությունների առջև պատասխանատվություն են կրում երաշխավորվողների քաղաքական, գործարար ու բարոյական հատկանիշների բնութագրման օբյեկտիվության համար»:

Սակայն, խախտելով պարտիայի մեջ նոր անդամներ ընդունելու անհատական մոտեցման սկզբունքը, առանց բազմակողմանիորեն ստուգելու մարդկանց անձնական արժանիքները, երբեմն ՍՄԿՊ մեջ են ընդունվում անարժան մարդիկ։ Առանձին կոմունիստներ կորցնելով պատասխանատվության զգացումը, ոչ լուրջ մոտեցում են հանդես բերում և երաշխավորում են այնպիսի մարդկանց, որոնց բազմակողմանիորեն չեն ճանաչում, հիմնվում են միայն խիստ սուբյեկտիվ տպավորությունների վրա։ Իսկ պարտբյուրոյի նիստերում և ընդհանուր ժողովներում ընդունելության հարցերը քննարկելիս, երբեմն քիչ ուշադրություն է հատկացվում երաշխավորության լիարժեքությանը։

Ահա մի քանի օրինակ։

1960 թվականին Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի բիսկվիտի ցեխի բանվորուհի Պ. Արզումանյանը դիմում է պարտիական կազմակերպությանը՝ իրեն ընդունելու ՍՄԿՊ շարքերը որպես թեկնածու. նա ներկայացնում է կոմունիստներ Վ. Գրիգորյանի, Պ. Վարդանյանի և ՀԼԿԵՄ Լենինյան շրջկոմի երաշխավորությունները։ Երաշխավորողները բանվորուհուն բնութագրել էին որպես դրական մարդու։ Օրինակ, հերթափոխության պետ, կոմունիստ Պ. Վարդանյանը գրել էր. «Ընկ. Պ. Արզումանյանը ֆաբրիկա ընդունված օրից մինչև այսօր բարեխղճորեն կատարել է իր վրա դրված պաշտոնական և հասարակական աշխատանքները, որպես ազնիվ աշխատող և երիտասարդ, նա արժանի է լինելու ՍՄԿՊ անդամության թեկնածու։ Ընկերը քաղաքականապես պատրաստված է և զբաղվում է իր քաղաքական մակարդակի բարձրացմամբ»։

Պարտիական բյուրոն, առանց ուսումնասիրելու Պ. Արզումանյանի գործարար ու բարոյական հատկանիշները, ներկայացրած փաստաթղթերի լիարժեքությունը, իր համաձայնությունն է տալիս նրան պարտիայի անդամության թեկնածու ընդունելու։ Պարտիական ժողովը նրան ընդունում է պարտիայի անդամության թեկնածու։ Դեռ թեկնածուական ժամկետը չլրացած, Պ. Արզումանյանը բռնվում է հանցագործության մեջ. կապվելով մի խումբ գողերի հետ, նա գործարանից հափշտակում է մոտ 9 տոննա բիսկվիտ և սպեկուլյացիոն գներով վերավաճառում։ 1961 թվականի ապրիլին նա հեռացվում է պարտիայից և դատի տրվում։ Ո՞ւր մնացին երաշխավորողների այն հավաստիացումները, թե նրանք լավ գիտեն ու ճանաչում են Պ. Արզումանյանին՝ որպես ազնիվ աշխատողի և վստահ են, որ նա բարձր կպահի կոմունիստի կոչումը։

Ստեփանավանի շրջանի Սվերդլով գյուղի միջնակարգ դպրոցի սկզբնական պարտիական կազմակերպությունը 1960 թվականի մայիս ամսին նույն դպրոցի ուսուցիչ Ռաֆիկ Սարիկյանին ընդունում է պարտիայի անդամության թեկնածու։ Երաշխավորող կոմունիստներ Ա. Ջանոյանը, Ս. Տավտալյանը և ՀԼԿԵՄ Ստեփանավանի շրջկոմը նրան բնութագրել էին որպես ակտիվ կոմերիտա-



կանի, օրինակելի դասատուի և բարոյական բարձր գծերով օժտված մարդու։ Սակայն երաշխավորողներին քաջ հայտնի էր, որ Մարիկյանը հարբեցող է, բայց կեղծ ընկերասիրությունը նրանց թույլ չէր տվել անդրադառնալ սովետական ուսուցչին անվայել նրա վարքագծին։ Չանցած մեկ տարի, Ռ. Մարիկյանը հեռացվում է պարտիայի անդամության թեկնածությունից՝ հարբեցողության, խուլիգանական արարքների համար։ Իսկ անարժան մարդուն երաշխավորելու համար պարտիական պատասխանատվության չենթարկվեցին կոմունիստներ Ա. Ջանոյանը և Ս. Տավտալյանը. դիտողություն չարվեց նաև ՀԼԿԵՄ Ստեփանավանի շրջկոմին։

Սպիտակի շրջանի Ջրաշեն գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը պարտիայի անդամության թեկնածու Սերյոժա Մարտիրոսյանին հեռացրել է պարտիայի անդամության թեկնածությունից, որովհետև նա չի կատարել պարտիական կազմակերպության որոշումը և հրաժարվել է արտադրության վճռական տեղամասում՝ անասնապահական ֆերմայում, շարքային աշխատանք կատարելուց։ Այնինչ երաշխավորող կոմունիստներ Մ. Գրիգորյանը և Վ. Բաղիկյանը նրան բնութագրել են որպես լավագույն, նվիրված կոմերիտական, կոլտնտեսության արտադրության առաջավոր, մի մարդ, որը պատրաստ է կատարելու պարտիայի բոլոր առաջադրանքները։

Ընթացիկ ուսումնական տարում ավարտելով Երևանի Պետական համալսարանի պատմության ֆակուլտետը, Լ. Կարակելյանը և Է. Հովհաննիսյանը մշտական աշխատանքի են նշանակվում ռեսպուբլիկայի շրջաններում։ Որոշ ժամանակ անց պարզվում է, որ վերջիններս ոչ միայն չեն մեկնել իրենց պաշտոնավայրերը, այլև կատեգորիկ կերպով հրաժարվում են գյուղ գնալուց։ Մինչդեռ նրանք պարտիայի անդամության թեկնածու էին ընդունվել ընդամենը մի քանի ամիս առաջ։ Ֆակուլտետի պարտիական կազմակերպությունը, համալսարանի պարտիական կոմիտեն և ՀԿՊ Սպանդարյանի շրջկոմի բյուրոն զբաղվեցին նրանց խնդրով։ Սակայն պարտիական տույժ ստանալուց հետո էլ նրանք գյուղ չգնացին։ Այդ բանը չանհանգստացրեց նրանց երաշխավորողներին՝ դասախոսներ Ժ. Միրզախանյանին և Խ. Բադալյանին, որոնք պարտիայի առաջ պատասխանատվություն չեն կրում այն բանի համար, որ ուսման հինգ տարիների ընթացքում ոչ միայն լավ չեն ճանաչել իրենց սաներին, այլև ինչպես հարկն է, չեն զբաղվել նրանց դաստիարակությամբ։

Երաշխավորելը կոմունիստի անկապտելի իրավունքն է։ ՍՄԿՊ Կանոնադրության մեջ ասված է, որ երաշխավորող պարտիայի անդամը պարտավոր է երաշխավորվողին ճանաչել առնվազն մեկ տարվա համատեղ արտադրական ու հասարակական աշխատանքից։ Նա պետք է բազմակողմանիորեն իմանա երաշխավորվողին. ամենից առաջ պահանջվում է, որ մարդը առաջավոր լինի արտադրության և ուսման մեջ։ Բայց դա դեռևս քիչ է։ ՍՄԿՊ շարքերն ընդունվողը պետք է բարոյապես անաղարտ լինի կյանքում ու կենցաղում, լինի գիտակից, քաղաքականապես հասուն և հասարակական ակտիվ աշխատող, կազմակերպիչ։ Պետք է իմանալ, թե վերջինս ինչպիսի հեղինակություն ունի կոլեկտիվում, ինչպես է իրեն պահում հասարակական վայրում և ընտանիքում։

Բավական չէ միայն սահմանափակվել երաշխավորություն տալով։ Կոմունիստը պարտավոր է օգնել երաշխավորվողին՝ դառնալու իսկական բոլշևիկ-լենինյան պարտիայի աննկուն մարտիկ։ Ցավոք սրտի ոչ բոլոր երաշխավորողներն են այդպես վարվում։ Պարտիայի առանձին անդամներ երաշխավորու-

*թյուն տալուց հետո այլևս չեն հետաքրքրվում երաշխավորվողի ճակատագրով։*

*ՍՄԿՊ շարքերը ըստ արժանվույն համալրելու գործը պետք է մշտապես գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Պարտիայի մեջ նոր մարդկանց ընդունելությունն անմիջականորեն կատարվում է սկզբնական կազմակերպություններում, այստեղ էլ ձևակերպվում են ընդունելության սկզբնական փաստաթղթերը, ուստի պարտիական բյուրոները և նրանց քարտուղարները պարտավոր են նախօրոք մանրազնին ստուգել փաստաթղթերի, երաշխավորությունների լիարժեքությունը։ Անհրաժեշտ է պարտիայի անդամության թեկնածու ընդունելուց առաջ համոզված լինել, թե ընդունվողն իր վարքագծով ու գործունեությամբ պատրա՞ստ է ակտիվ մասնակցելու պարտիայի առաջադրած խնդիրների կենսագործմանը, արդարացնելու իր նկատմամբ պարտիական կազմակերպության ցույց տված մեծ վստահությունը։*

*Սկզբնական պարտիական կազմակերպությունները հաճախ հանդուրժում են այն կոմունիստներին, որոնք երաշխավորում են անարժան մարդկանց։ Անհրաժեշտ է ժամանակին հայտաբերել անհիմն, ոչ օբյեկտիվ երաշխավորությունները, պատասխանատվության ենթարկել անհարկի երաշխավորողներին։ Պետք է տեղերում անհրաժեշտ աշխատանք կազմակերպել այն մարդկանց շրջանում, ովքեր պատրաստվում են ընդունվել պարտիայի մեջ, ներգրավել նրանց ակտիվ հասարակական և քաղաքական աշխատանքի, տալ հանձնարարություններ և ստուգել դրանց կատարումը, զբաղվել նրանց քաղաքական ուսուցման ու կրթության հարցերով և այլն։*

*Վերջին շրջանում ՍՄԿՊ շարքերի աճման, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի հարցերը քննարկվում են սկզբնական կազմակերպությունների ժողովներում, քաղկոմ-շրջկոմների բյուրոների նիստերում, պլենումներում։ Դա, անկասկած, տալիս է որոշակի դրական արդյունք. ցանկալի է, որ այդ պրակտիկան լայնորեն ծավալվի և ուժեղացվի ամենօրյա վերահսկողությունը պարտիայի շարքերի աճման, նրա որակական կազմի մշտական բարելավման նկատմամբ։*

Ե. ՄԵԼՔՈՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պատասխանատու
կազմակերպիչ

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԵՐ ԻՆՏԵՐՎՅՈՒՆ

ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիայի նոր Ծրագիրը զարգացման լայն հեռանկարներ են բացում ռեսպուբլիկայի արդյունաբերության համար: Այդ կապակցությամբ մեր ամսագրի աշխատակիցը զրույց ունեցավ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի նախագահի տեղակալ ընկ. Լ. Երզնկյանի հետ:

Ստորև հրապարակում ենք այդ զրույցի տեքստը:

Հարց. *Որո՞նք են ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման քսանամյակի ուրվագծերը։*

Պատասխան. *Պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— երկու տասնամյակի ընթացքում ստեղծել* կոմունիզմի նյութատեխնիկական բազան: *Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պահանջում է ըստ ամենայնի զարգացնել արտադրության տնտեսապես արդյունավետ ճյուղերը, լիովին ու նպատակահարմար օգտագործել բնական ռեսուրսները։*

*Առաջիկա քսան տարում Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր նախապայմաններից մեկը ռեսպուբլիկայի հումքային հարուստ ռեսուրսներն արդյունաբերական նպատակով լայնորեն օգտագործելն է։*

*Արդյունաբերական շինարարության զարգացման բարձր տեմպերի շնորհիվ արմատապես կվերափոխվի ռեսպուբլիկայի դեմքը։ Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը 1980 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կավելանա 13 անգամ։*

Հարց. *Որտե՞ղ են կառուցվելու արդյունաբերության նոր օջախներ։*

Պատասխան. *Արդյունաբերական նոր ձեռնարկությունների շինարարությունը իրականացվելու է գերազանցապես արդյունաբերական տեսակետից թույլ զարգացած շրջաններում։*

*Մեծապես կզարգանա Հրազդանը՝ նախկին Ախտա գյուղը։ Այս շրջանը հարուստ է հանքային հումքով, բնական շինանյութերով, ջրով։ Այստեղ են գտնվում ռեսպուբլիկայի էներգասիստեմի հիմնական օբյեկտները։ Շրջանում գործում է երկաթուղային և խճուղային տրանսպորտ։ Այս ամենը հնարավորություն տվին ձեռնարկել Հրազդանի խոշոր լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը, մի կոմբինատ, որը կարտադրի կավահող, ցեմենտ և մի շարք այլ քիմիական նյութեր։ Արտադրության համար հիմնական հումք կծառայեն*

նեֆելինային սիենիտները, կիրը, երկաթը, գիպսը և երկաթեղենը, որոնցով հարուստ է շրջանը։ Այդ կոմբինատում կաշխատեն մի քանի հազար մարդ։

Կոմբինատը ռեսպուբլիկայի ինդուստրիալ շինարարությանը լիովին կապահովի կարևոր նյութով՝ ցեմենտով։ Տարեկան կթողարկվի (զգալիորեն ցածր ինքնարժեքով) ավելի քան մեկ միլիոն տոննա ցեմենտ, այսինքն՝ երեք անգամ ավելի, քան ներկայումս թողարկում է Արարատի ցեմենտի գործարանը։

Հրազդանի կավահողը կլինի Սովետական Միությունում ամենաէժանը։ Այն կբավարարի ռեսպուբլիկայի ալյումինի և հրակայուն նյութերի արդյունաբերության պահանջները։

Կոմբինատի թողարկած քիմիական արտադրանքի բազայի վրա կստացվեն նոր նյութեր՝ կիսահաղորդիչներ պատրաստելու, օպտիկական արդյունաբերության համար և այլն։ Նեֆելինային սիենիտների վերամշակումից ստացվող արտադրանքներից մեկը՝ երևանիտը, ապակու արդյունաբերության մի նոր հումք է, որը պիտանի է ամենաբազմատեսակ ապակյա առարկաներ՝ ամանեղեն, տարաներ, տեխնիկական ապակիներ, ապակեթել պատրաստելու համար։

Հրազդանում կկառուցվի ջերմաէլեկտրակայան, որը կգործի բնական գազով։ Այն կապահովի կոմբինատը էլեկտրաէներգիայով, տեխնիկական գոլորշիով և բարձր կալորիականություն ունեցող վառելիքով։

Նախատեսվում է այստեղ կառուցել կապրոնի թելի խոշորագույն գործարան, որը տարեկան կթողարկի մեծ քանակությամբ թել։ Գործարանում կաշխատեն մի քանի հազար մարդ։

Արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ Հրազդանում սկսված է 80 հազար բնակիչ ունեցող օրինակելի, բարեկարգ սոցիալիստական քաղաքի շինարարությունը։

Արդյունաբերության կենտրոն է ստեղծվում նաև Լուսավանում. այն կդառնա Հայաստանի հաստոցաշինության քաղաքը։ Այստեղ գործարկվել է ներտաշ հաստոցների գործարանի առաջին հերթը, որտեղ արտադրվում են միանգամայն նոր կոնստրուկցիայի ներտաշ հաստոցներ, որոնք իրենց բարձր որակով արդեն ճանաչում են գտել Սովետական Միությունում։

Լուսավանում հայտնաբերվել են լիթոիդային պեմզայի՝ այդ չափազանց արժեքավոր շինանյութի, մեծ հանքավայրեր։ Լիթոիդային պեմզայի բազայի վրա կարելի է ստանալ բարձր որակի բետոն։ Մոտ ժամանակներս շահագործման կհանձնվի լիթոիդային պեմզայի գործարանը՝ տարեկան մեկ միլիոն խորանարդ մետր կարողությամբ և շինանյութերի հատուկ գործարան, որը տարեկան արդյունքով կապահովի 200 հազար քառակուսի մետր բնակելի տարածության շինարարությունը։ Այժմ արդեն Լուսավանում լայնորեն ծավալված է բնակարանային, կուլտուր-կենցաղային և կոմունալ շինարարությունը։

Առաջիկա տարիներին Սևանը կդառնա ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման կենտրոններից մեկը։ Այստեղ կառուցվում է գործարան, որը տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման համար արտադրելու է փորձարկման մեխանիզմներ. գործարանը հետագայում ընդարձակվելու է։

Հաջողությամբ առաջ է գնում ապակեթելի խոշոր գործարանի կառուցումը։ Այդ ձեռնարկության արտադրած մանրաթելի բազայի վրա կպատրաստվեն էլեկտրամեկուսիչ նյութեր։ Արտադրական կարողությունների ավելացմանը համապատասխան, հետագայում կկառուցվի ջուլհակային կորպուս, որտեղ կար-



տադրվի ապակեթելից պատրաստվող մանվածք և գործվածքեղեն։ Այն Հայաստանի կաբելի, էլեկտրատեխնիկական մեքենաների, ապարատների և գործիքների արտադրությունը կապահովի անհրաժեշտ ապակեթելի մանվածքով։

Սևանի գործարանում նախատեսվում է կազմակերպել նաև անալկալի ապակու խողովակների արտադրություն, Հայաստան ներմուծվող ճենապակյա փլերի փոխարեն։ Ապակեթելի գործարանը չափազանց շահութաբեր ձեռնարկություն է. մեկ տարվա ընթացքում փոխհատուցվում են գործարանի կառուցման համար կատարված կապիտալ ծախսերը։

Աբովյանի շրջանի էլար ավանը մոտակա տարիներին դառնալու է ճշգրիտ մեխանիկայի արդյունաբերության կենտրոն։ Սկսված է էլեկտրոնա-հաշվիչ մեքենաների գործարանի շինարարությունը։ Գործարանը տարեկան կթողարկի մաթեմատիկական մեքենաների Հայկական ինստիտուտի մշակած տարբեր տիպի բազմաթիվ մեքենաներ։ Ծանր ինդուստրիայի օջախներ կստեղծվեն նաև ռեսպուբլիկայի այլ շրջաններում։

Հարց. Քիմիական արդյունաբերությունը քսանամյակում զարգացման ինչպիսի՞ հեռանկարներ ունի։

Պատասխան. Մինչև Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում չկար քիմիական արդյունաբերության ոչ մի ձեռնարկություն։ Ներկայումս ռեսպուբլիկան ունի զարգացած քիմիական արդյունաբերություն, որը թողարկում է այնպիսի կարևոր արտադրանքներ, ինչպիսիք են՝ սինթետիկ կաուչուկը, կաուստիկ սոդան, կալցիում կարբիտը, ամիակը, հանքային պարարտանյութերը, քացախաթթուն, աղաթթուն, ազոտական և ծծմբաթթուն, վինիլացետատը և նրա ածանցյալները, ավտոդողերը, ռետինե-տեխնիկական իրերը, ներկերը և այլ քիմիական նյութեր։

Գոյություն ունեցող քիմիական արդյունաբերության բոլոր ձեռնարկությունները առաջիկա քսանամյակում խիստ կընդարձակվեն։

Կիրովական քաղաքում կառուցվում է ացետատային մետաքսի գործարանը, որը հումք կտա բրդի և մետաքսի արտադրության համար։ Գործարանը շուտով շահագործման կհանձնվի։

Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում կառուցվում են մի շարք ցեխեր, որոնք թողարկելու են արժեքավոր սինթետիկ նյութեր։ Այստեղ սկսվել է սինթետիկ կորունդի արտադրությունը, որը չափազանց արժեքավոր է ժամացույցի, գործիքաշինական և ոսկերչական արդյունաբերության համար։

Ավարտվում է սինթետիկ մելամինի արտադրության ցեխի շինարարությունը, մի նյութ, որն անհրաժեշտ է բարձրորակ օրգանական սոսինձ ու ներկեր ստանալու համար, դրանք կիրառվում են մեքենաշինական և էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում տասնամյակի ընթացքում զգալիորեն կավելանա սինթետիկ կաուչուկի թողարկումը, կաճի սոդայի և քացախաթթվի արտադրությունը։ Ստեղծվում է պոլիքլորվինիլային խեժի նոր արտադրություն, որի բազայի վրա կազմակերպվում է լինոլիումի, շին-վերջնամշակման նյութերի, սանիտարա-տեխնիկական սարքավորումների, գալանտերեային, տնային գործածության առարկաների արտադրությունը։

Զգալիորեն ընդլայնվում է նաև Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանը։ Այստեղ մեծ մասշտաբներով կիրագործվի վինիֆլեքսի արտադրությունը,

որը որպես մեկուսիչ նյութ լայնորեն կկիրառվի էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ։

Նախատեսվում է կառուցել քիմիական ռեակտիվների, դեղագործական պրեպարատների արտադրության ձեռնարկություններ, կազմակերպել տեխնիկական բիոմիցինի՝ կենդանիների բուժման և աճին նպաստող պրեպարատի արտադրությունը։

Զգալի չափով կավելանա հանքային, հատկապես կոմպլեքսային պարարտանյութերի արտադրությունը, որոնք տարբեր հարաբերակցությամբ պարունակում են ազոտ ֆոսֆոր և կալիում։

**Հարց.** Խնդրում ենք համառոտակի նշեք, թե զարգացման ինչպիսի՞ թափ է ունենալու գունավոր մետալուրգիայի արդյունաբերությունը։

**Պատասխան.** Մեր էկոնոմիկայի համար մեծ նշանակություն ունեն գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկան հարուստ է օգտակար հանածոների հանքավայրերով։ Հայաստանի ընդերքի հարստությունները հիմք են ծառայում գունավոր մետալուրգիայի հետագա ծաղկման համար։ Մի քանի անգամ կավելանա սև և ռաֆինացված պղնձի, մոլիբդենի կոնցենտրատի արտադրությունը։ Գործող ձեռնարկությունների ընդարձակմանն ու արմատական վերակառուցմանը զուգընթաց կյուրացվեն բազմամետաղ նոր՝ մասնավորապես Հանքավանի և Լիճքի հանքավայրերը։

Շինարարական ծավալուն աշխատանք է կատարվում Ախթալայում՝ պղնձահանքերի երկրորդ հումքային բազայում, որը Շամլուղի պղնձի հանքավայրերը միացնում է Ախթալայի ցինկ, պղինձ, բարիտ և այլ նյութեր պարունակող բազմամետաղ հանքավայրերին։

Քաջարանի և Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատների գործող ձեռնարկություններում հանույթի և վերամշակման ընդլայնումը կապահովի գունավոր մետաղների արտադրության աճը։ Կառուցվում է Քաջարանի կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի երկրորդ հերթը, որի գործարկմամբ զգալի չափով կավելանա կոմբինատի կարողությունը։ Ախթալայի լեռնագործների համար կառուցվում է նոր, բարեկարգ բանվորական մի ավան՝ կոմունալ ու կուլտուր-կենցաղային բոլոր հարմարություններով։

Վերակառուցվում և ընդլայնվում է Ալավերդու գործող պղնձաձուլական քիմիական կոմբինատը։

Ռեսպուբլիկայում հայտնաբերված երկաթահանքային բազայի վրա նախատեսվում է կազմակերպել էլեկտրատեխնիկական պողպատի տնտեսապես ձեռնտու արտադրություն։

**Հարց.** Ի՞նչ տեղ է գրավելու մեքենաշինական արդյունաբերությունը ժողովրդական տնտեսության մեջ։

**Պատասխան.** Հայաստանի ծանր արդյունաբերության մեջ մեծ տեղ է հատկացվում մեքենաշինությանը, որի արտադրանքի ծավալը 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, կաճի խոշոր չափերով։ Այդ նույն ժամանակաշրջանում ավելի խոշոր չափերով կաճի նաև հաստոցաշինարարության արտադրանքի ծավալը։

Մեքենաշինությունը գերազանցապես կմասնագիտացվի էլեկտրատեխնիկական արդյունաբերության, գործիքաշինության և ավտոմատիկայի միջոցների արտադրության ուղղությամբ։



**Հարց.** Որո՞նք են ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման հեռանկարները։

**Պատասխան.** Ապագայում ևս կպահպանվի էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջատար տեղը, որը 1980 թվականին կտա մեքենաշինության արտադրանքի զգալի մասը։

Նախատեսվում է մեծ չափերով զարգացնել Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության խոշոր ձեռնարկությունը՝ Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանը։ Ներկայումս հայէլեկտրագործարանը երկրի առաջատար ձեռնարկություններից մեկն է իր թողարկած բազմաթիվ բարդ մեքենաներով։

Ընդարձակվում է նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերության մյուս ձեռնարկությունը՝ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը, որը թողարկում է սինխրոն գեներատորներ և փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչներ։

Մի քանի անգամ կավելանա էլեկտրալամպերի գործարանի արտադրանքը։ Մեծ խնդիրներ են դրվում Երևանի կաբելի գործարանի առաջ՝ բարձրակայուն մեկուսիչներով էլեկտրալարերի արտադրության ուղղությամբ։

Ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության գործարանները կթողարկեն տարբեր ասորտիմենտի լայն սպառման ապրանքներ՝ էլեկտրոհարթուկներ, էլեկտրասալեր, լուսամփոփներ, սեղանի լամպեր, ժամացույցներ և այլն, որոնց պահանջը մեծ է։

**Հարց.** Ինչպե՞ս են զարգանալու սարքաշինական արդյունաբերության նոր ճյուղերը։

**Պատասխան.** Ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացման գործում կարևոր նշանակություն ունեցավ սարքաշինական արդյունաբերության նոր ճյուղի ստեղծումը։ Այժմ սարքաշինական մի շարք գործարաններ են կառուցվում Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, որոնք կթողարկեն մեծ թվով գալվանոմետրեր, լայն դիապազոնի լագոմետրեր, խոնավաչափեր, միլիամպերմետրեր և շատ այլ ճշգրիտ գործիքներ։

Հայաստանի գործիքաշինական արդյունաբերության առաջնեկ՝ էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանը արագորեն կզարգանա և կդառնա միութենական նշանակության առաջավոր գործարան, որը կթողարկի բարդ ճշգրիտ էլեկտրաչափիչ գործիքներ, որոնց կոնստրուկցիաների մեծ մասը մշակվում է գործարանում։

**Հարց.** Որտե՞ղ և ինչպիսի՞ նոր էլեկտրակայաններ են կառուցվելու։

**Պատասխան.** Խոշոր կապիտալ ներդրումներ են կատարվում էներգետիկ շինարարության մեջ։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական նորմալ զարգացումը պահանջում է մեծ չափերով ավելացնել էլեկտրաէներգիան։ 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 14 անգամ։ Դրա համար կկառուցվեն Որոտանի և Դեբեդի կասկադների խնայարեր էլեկտրակայանները։

Ռեսպուբլիկայի էներգետիկ նոր կարողությունների գործարկմանը զուգընթաց նախատեսվում են նաև էլեկտրաէներգիայի աղբյուրների որակական լուրջ փոփոխություններ։ Այժմ ավարտվում են Երևանգէսի գործարկման աշխատանքները, որով կվերջանա Սևան—Հրազդան հայտնի կասկադի շինարարությունը։

Ռեսպուբլիկայի հարավային մասում՝ Որոտան գետի վրա սկսված է Տա-

թեի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որը շարք կմտնի առաջիկա 2—3 տարում։ Այն իր կարողությամբ կլինի երկրորդը՝ Գյումուշգէսից հետո։ Առաջիկա տարիներին կսկսվի ջերմաէլեկտրակենտրոնների շինարարությունը։ Արփա գետի փոխադրումը Սևան կնպաստի վերջինիս մակարդակի պահպանմանը։ Այս ամենը ռեալ պայմաններ են ստեղծում պահպանելու Սևանի ջրերի դարավոր պաշարները և լիճը պահելու բնական պայմաններին մոտ մակարդակի վրա։ 1965 թվականից սկսած, խիստ կնվազի Սևանի ջրի արտահոսքը, իսկ 1970 թվականին լիովին կդադարեցվի այն։ Բնության այդ հրաշալիքը՝ Սևանը, առհավետ կպահպանի իր գեղեցկությունը։

Հարց. Ինչպե՞ս է լուծվելու արդյունաբերական և բնակարանային շինարարությունը շինանյութերով ապահովելու հարցը։

Պատասխան. Մեծ ուշադրություն է հատկացվում շինանյութերի արդյունաբերության զարգացմանը։ Շինարարական վիթխարի աշխատանքները պահանջում են զգալի չափով զարգացնել շինանյութերի, կոնստրուկցիաների և դետալների արտադրությունը։

Հայաստանի ընդերքում կան շատ տուֆ, բազալտ, խարամ։ Հատուկ արժեք են ներկայացնում տարբեր գույնի հրաբխային տուֆերը, որոնք հիանալի նյութ են շենքերի շարվածքի, երեսպատման և բետոն պատրաստելու համար։ Որպես պատի նյութ տուֆի նշանակությունն ավելի կբարձրանա, եթե մեքենայացվի նրա հանույթը և անձև քարի փոխարեն թողարկվի ուղիղ քար։

Հայաստանի Ժողտնտխորհի սիստեմում կառուցվում են ուղիղ քարեր թողարկելու մեքենայացված ձեռնարկություններ։ Արթիկում կառուցվում է մի խոշոր գործարան, որը տուֆ քարի մնացորդներից պատրաստելու է արհեստական տուֆաբլոկ։ Արհեստական բլոկների ձեռնարկություններ կկառուցվեն նաև Լենինականում և Կարմրաշենում։ Մեծ չափով կզարգանա թեթև, սնամեջ արհեստական նյութերի արտադրությունը։

Չափազանց արժեքավոր շինանյութ են հրաբխային ծագում ունեցող բազմազան պեմզան ու խարամը։ Դրանք հիանալի լցանյութեր են թեթև բետոնի և երկաթբետոնի համար։ Խարամներից պատրաստված բետոնը երկու անգամ թեթև է սովորական բետոնից։

Ստեղծվում են խոշոր քարհանքային տնտեսություններ, որոնք ունենալու են պեմզա և խարամ արդյունահանող ֆաբրիկաներ։ Վերջիններս լիովին կապահովեն ո՛չ միայն ռեսպուբլիկայի, այլև հարևան ռեսպուբլիկաների՝ պեմզայի և խարամի պահանջը։

Թալինում, Անիպեմզայում, Լուսավանում կկառուցվեն թեթև լցանյութերը ջարդող-տեսակավորող ֆաբրիկաներ։

Կարմրաշենում շուտով կկառուցվի թրծված, փքված պեռլիտի գործարան։ Աբովյանի շրջանում հայտնաբերված դիատոմիտի մեծ պաշարների բազայի վրա կկազմակերպվի ջերմամեկուսիչ թեթև նյութերի արտադրություն։ Բնակելի տների, արդյունաբերական շենքերի ֆասադները դեկորատիվ տուֆով երեսպատելու համար կազմակերպվում է երեսպատման տուֆե սալերի լայն արտադրություն։

Խիստ կընդլայնվի կրի, կերամիկական բլոկների, միջնորմային սալերի, անդեզիտյան շինվածքների, գրանիտե չորսուների, հախճապակյա իրերի, ապակե գնդերի և ասբոշիֆերի արտադրությունը։ Այս տարի ավարտվել է 800 պայմանական կիլոմետր կարողության ասբոցեմենտյա խողովակների գործարանի



շինարարությունը։ Կառուցվում է նաև կերամիկայի խողովակներ թողարկող ձեռնարկություն։

Մեծ ուշադրություն է հատկացվելու հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ արտադրող ձեռնարկությունների շինարարությանը։ Թողարկվող արտադրանքի նոմենկլատուրայում նախատեսվում են պրոգրեսիվ երկաթբետոնե կոնստրուկցիաների նոր տեսակներ՝ բնակարանային և արդյունաբերական շինարարության համար։

Հարց. Ի՞նչ է արվելու լայն սպառման առարկաների և սննդամթերքների արդյունաբերության զարգացման համար։

Պատասխան. ՍՄԿԿ Ծրագրում հատուկ ուշադրություն է հատկացված ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրության արագ ավելացմանը։ Ծրագրում նշված է. արդյունաբերության աճող ռեսուրսները պետք է ավելի ու ավելի գործադրվեն սովետական մարդկանց պահանջմունքները բազմակողմանիորեն բավարարելու, բնակչության կենցաղային ու կուլտուրական սպասարկման ձեռնարկությունների շինարարության կարիքի հագեցման համար։

Ռեսպուբլիկայում մեծ չափերով կզարգանան նաև սննդի, թեթև և փայտամշակման արդյունաբերությունը, գինեգործությունը։ Հայաստանի դեսերտային, թունդ գինիները և կոնյակը միջազգային ցուցահանդեսներում արժանացել են 26 ոսկե, 10 արծաթե և մեկ բրոնզե մեդալների։ Նախատեսվում է մեծ չափերով ընդարձակել գինեգործական արդյունաբերության տեխնիկական բազան։

Կենսական կարևոր նշանակություն ունեն հանքային ջրերը։ Մեր ռեսպուբլիկան այժմ ունի 450 հանքային աղբյուր և հորատանցք։ «Ջերմուկ»-ը, «Արզնի»-ն, «Դիլիջան»-ը, «Հանքավան»-ը մեծ ճանաչում են գտել։ Նախատեսվում է մի քանի անգամ ընդլայնել այդ աղբյուրների օգտագործումը։

Հայաստանում մեծ չափով ընդլայնվել է պահածոների արդյունաբերությունը։ Նախատեսված է արդյունաբերության այդ ճյուղի արտադրանքը քսանամյակում ավելացնել չորս անգամ։ Նոր գործարաններ կկառուցվեն Այրումում, Հրազդանում, Շամշադինում, Իջևանում. կվերակառուցվեն ու կընդարձակվեն գործող վերամշակման կետերն ու գործարանները։

Յուղաճարպային արդյունաբերության մեջ ամեն ինչ պետք է արվի բամբակի և սոյայի հունդերի վերամշակումից առավելագույն չափով յուղ ստանալու համար։

Ռեսպուբլիկայում անասնապահական մթերքների անշեղ աճը պահանջում է կարճ ժամկետում ստեղծել նոր կարողություններ՝ դրանց վերամշակման համար։ Արագաթափ կառուցվում է Երևանի մսի կոմբինատը, ընդարձակվում են սառցարանային կարողությունները Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ղափանում։ Պանրի գործարաններ են կառուցվում Ստեփանավանում, Յանըղում, Ազիզբեկովում, Թումանյանում, Ալավերդում և ռեսպուբլիկայի շատ շրջաններում։ Էջմիածնում և Լենինականում կառուցվում է երկու խոշոր թռչնաբուծական ֆաբրիկա։

Ընդարձակվում և վերակառուցվում են գործվածքեղենի, տրիկոտաժի, կարի և կոշկի գործարաններն ու ֆաբրիկաները, բազմապատկվում նրանց արտադրական կարողությունները։ Թեթև արդյունաբերության կառուցվող խոշոր ձեռնարկություններից անհրաժեշտ է նշել Իջևանի գորգի կոմբինատը, որը տարեկան կթողարկի 800 հազար քառակուսի մետր գործարանային գորգ։ Բրդյա թելի հետ միասին կօգտագործվեն ավելի դիմացկուն, բարձրորակ արհեստա-

կան մանրաթելեր։ Դիլիջանում նախատեսվում է կառուցել մետաքսյա սպիտակեղենի տրիկոտաժի ֆաբրիկա, որը տարեկան կթողարկի 40 միլիոն զույգ սպիտակեղեն։ Նախատեսվում է Երևանում կառուցել կարի խոշոր ֆաբրիկա։ Ընդարձակվում է վերջերս շահագործման հանձնված ձեռնոցների ֆաբրիկան, որի կարողությունը կհասցվի տարեկան 10 միլիոն զույգի։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կառաջանան նոր, բարձր տեխնիկային համապատասխանող արտադրություններ, որոնք կհիմնվեն արտադրական բոլոր պրոցեսների էլեկտրիֆիկացման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման վրա։

Հարց. Ի՞նչ գործնական քայլեր են արվելու կահույքի արդյունաբերությունը զարգացնելու համար։

Պատասխան. Սովետական մարդկանց բարեկեցության անշեղ աճը արտահայտվում է, մասնավորապես և կահույքի տարեցտարի աճող պահանջի մեջ։ Հաշվի առնելով այդ, Հայաստանի ժողովրդական տնտեսության խորհուրդը որոշել է մոտակա տարիներին զգալիորեն ավելացնել կահույքի արտադրությունը։ Հաստատված է կահույքի նոր ձեռնարկությունների շինարարության և գործող ձեռնարկությունների վերակառուցման մեծ ծրագիր, որը դրվել է ռեսպուբլիկայի փայտամշակման և կահույքի արտադրության զարգացման քանամյա պլանի հիմքում։ Արմատապես վերակառուցվում, կարելի է ասել նորից է կառուցվում Երևանի կահույքի ֆաբրիկան, որից հետո նրա արտադրանքը կավելանա երկու և կես անգամ։

Դիլիջան քաղաքում ավարտվում է կորացրած կահույքի ֆաբրիկայի կառուցումը։ Որպես հիմնական արտադրանք ֆաբրիկան տարեկան կթողարկի 200 հազար հատ կորացրած աթոռներ, սեղաններ, կախարաններ։ Ավարտման է մոտենում նաև Թումանյանի՝ կորացրած կահույքի ֆաբրիկայի կառուցումը։ Այն տարեկան կթողարկի 100 հազար կտոր կահույքեղեն։ Վերջերս շահագործման հանձնվեց Ղափանի կահույքի ֆաբրիկան, որը տալիս է բարձրորակ արտադրանք։

Գործող ձեռնարկությունների վերակառուցմանը զուգընթաց Երևանում սկսվել է խոշոր կահույքի ֆաբրիկայի շինարարությունը. այն տարեկան տալու է ավելի քան չորս միլիոն ռուբլու արտադրանք։ Այս նոր ձեռնարկությունը կհագեցվի կատարելագործված, բարձր արտադրողական սարքավորումներով, արտադրական պրոցեսները կավտոմատացվեն և կմեքենայացվեն։ Նախագծվում է փայտյա-մանրաթելային ամուր սալերի գործարանի շինարարությունը։

Փայտա-մանրաթելային սալերը բարձրորակ և խնայարեր նյութեր են, որոնք կարող են օգտագործվել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության համարյա բոլոր ճյուղերում։ Նման սալերի թողարկումը զգալի չափով կկրճատի կահույքի արդյունաբերության համար ծախսվող հումքը, հնարավորություն կընձեռի ռացիոնալ օգտագործելու փայտանյութի մնացորդները։ Կառուցվելու է հայելիների նոր ֆաբրիկա, տարեկան 50 հազար քառակուսի մետր արտադրողականությամբ. այն լրիվ կապահովի ռեսպուբլիկայի կահույքի արդյունաբերության պահանջը։

Բնակչության կուլտուրական պահանջմունքների բավարարման գործում նշանակալի իրադարձություն է Երևանի դաշնամուրի ֆաբրիկայի կառուցումը։ Այն շարք կմտնի 1962 թվականին և տարեկան կարտադրի 10 հազար դաշնամուր։

---

# ԱՌԱՎԵԼԱԳՈՒՅՆ ԱՐԴՅՈՒՆՔ ՆՎԱԶԱԳՈՒՅՆ ԾԱԽՍՈՒՄՈՎ*

ՍՄԿՊ XXII համագումարի կողմից մշակված գյուղատնտեսության զարգացման վիթխարի պլանն իրագործելու համար պետք է անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և տնտեսության վարման կուլտուրան, մասնագիտացնել ու կենտրոնացնել գյուղատնտեսական արտադրությունը։ Տնտեսության հիմնավորված մասնագիտացումը, գյուղատնտեսական կուլտուրաների և տնտեսության տարբեր ճյուղերի ճիշտ տեղաբաշխումը հնարավորություն կտան ավելի արտադրողաբար օգտագործելու հողը, ռացիոնալ կազմակերպելու անասնաբուծության զարգացումը, հասնելու գյուղատնտեսական մթերքների անընդհատ ավելացման, ինչպես և իջեցնելու դրանց մեկ միավորի արտադրության վրա կատարվող ծախսումները և բարձրացնելու տնտեսության եկամտաբերությունը։ Միաժամանակ հնարավորություն կըստեղծվի մեքենայացնելու աշխատատար պրոցեսները, ավելի ռացիոնալ օգտագործելու հողատարածությունները։

Աբովյանի շրջանի գյուղատնտեսության աշխատողների առջև ծառացած են մեծ խնդիրներ, որոնց կենսագործման համար պետք է առաջին հերթին արագորեն լուծել կոլտնտեսությունների ու սովխոզների մասնագիտացման, տնտեսության ճյուղերի տեղաբաշխման հարցերը։ Եղած հնարավորություններն ու ռեզերվները ինչպես հարկն է օգտագործելու համար համառոտակի ծանոթանանք, թե մեր շրջանում ինչպե՞ս են տեղաբաշխված գյուղատնտեսական կուլտուրաները և ինչպիսի՞ն է նրանց բերքատվությունը 1961 թվականին։

| Կուլտուրաներ | Ցանքատարածությունը (հեկտար.) | Մեկ հեկտարի բերքը (ցենտներ) |
|---|---|---|
| Հացահատիկ (ցորեն, գարի) | 7095 | 3.6 |
| Եգիպտացորեն, հատիկ | 59 | 7 |
| Կանաչ մասսա | 623 | 34 |
| Ծխախոտ | 390 | 10 |
| Բանջարեղեն | 300 | 28 |
| Առվույտ | 366 | 44.7 |
| Կորնգան | 2267 | 7 |
| Խաղող | 797 | 44 |
| Պտուղ | 1015 | 17,7 |

Ինչպես երևում է աղյուսակից, խիստ ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Ճիշտ է, անցյալ տարի կլիմայական պայմաններն անբարենպաստ էին, բայց ամեն ինչ դրանով չի կարելի բացատրել։ Այսպես. եգիպտացորենի զգալի մասը, իսկ բանջարեղենն ու առվույտը ամբողջությամբ ցանվել են ոռոգելի տարածությունների վրա, ուրեմն երաշտը չէր կարող ազ-

* Տպագրվում է առաջարկության կարգով։

գել այդ կուլտուրաների բերքատվության վրա։ Եթե եգիպտացորենը ցանվեր ժամանակին և ընտրված հողերում, որակով մշակվեր ու հողը պարարտացվեր, ժամանակին կիրառվեին անհրաժեշտ ագրոմիջոցառումներ, ապա կըստացվեր բարձր բերք, ինչպես Եղշովանի կոլտնտեսությունում։ Մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում առվույտի ցանքատարածությունները ժամանակին չեն ոռոգվել ու հնձվել, հնձված խոտը հավաքվել է մեծ ձգձգումներով, դրանով պետք է բացատրել, որ առվույտի ցանքատարածությունները չորս-հինգ անգամի փոխարեն հնձվել են միայն մեկից-երեք անգամ։ Վատ է կազմակերպվել նաև բանջարանոցային կուլտուրաների մշակությունը։ Յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսված աշխատանքի դիմաց դեռևս քիչ արտադրանք է ստացվում։ Դաշտավարության և այգեգործության վրա ծախսվել է մոտ մեկ միլիոն աշխօր, սակայն ստացված արդյունքը շատ քիչ է։ Դա, ամենից առաջ, հետևանք է այն բանի, որ մեր տնտեսություններում արմատավորված չեն առավել բերքատու կուլտուրաներ, ճիշտ չի կիրառվում ցանքաշրջանառությունը։ Մեզ մոտ դեռևս շաբլոն կիրառում է գտնում հողագործության խոտադաշտային սիստեմը, որը մեծ վնաս է հասցնում գյուղատնտեսությանը։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս լայնորեն չեն արմատավորվում գիտության նվաճումներն ու արտադրության առաջավորների փորձը։

Առանձին կոլտնտեսությունների վարչություններ, սովխոզների դիրեկցիաներ և սկզբնական պարտիական կազմակերպություններ մինչև օրս էլ այդ կարևոր գործի վրա համապատասխան ուշադրություն չեն դարձնում։ Նրանք գործնական կոնկրետ միջոցառումներ չեն իրականացնում, որպեսզի սոցիալիստական գյուղատնտեսության փարոսների աշխատանքի հարուստ փորձը հետևողականորեն կիրառվի իրենց տնտեսություններում, որը մեծապես կնպաստի Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության կողմից շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրների հաջող կատարմանը։ Չպետք է մոռանալ, որ գիտության նվաճումների և արտադրության առաջավորների փորձի լայնորեն արմատավորումը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման կարևոր ռեզերվներից մեկն է, որ օգտագործման համար պետք է կազմակերպական լուրջ աշխատանք ծավալել։

Մեր կարծիքով, առաջիկա տարիներում պետք է կրկնապատկել եգիպտացորենի ցանքատարածությունները, հասցնելով այն 1500 հեկտարի։ Մեր շրջանում լավ է աճում այդ կուլտուրան և, նույնիսկ, անբարենպաստ պայմաններում համեմատաբար ավելի բարձր բերք է տալիս։ Անհրաժեշտ է մտածել եգիպտացորենի բերքատվության բարձրացման մասին. դրա համար պետք է առաջին հերթին հաղթահարել մեր մարդկանց թերահավատությունը վերոհիշյալ կուլտուրայի նկատմամբ, կիրառել քառակուսի-բնային ցանք։ Շրջանի ցածրադիր կոլտնտեսություններում և սովխոզներում պետք է արմատավորել եգիպտացորենի խողանացանը, որն այժմ բոլորովին չի կիրառվում։ Մեծ չափով պետք է ընդարձակել նաև լոբազգի կուլտուրաների և, հատկապես, սիսեռի ցանքատարածությունները, որոնցից մեր պայմաններում բարձր բերք է ստացվում։

Մեր շրջանի 300 հեկտար բանջարեղենի մոտ 80 տոկոսը ցածր բերքատու կուլտուրաներ են (օրինակ, կանաչ ոլոռը)։ Այնինչ մեզ մոտ լավ աճում և բարձր բերք են տալիս վարունգը, պոմիդորը, գազարը և կաղամբը։ Այդ



ուղղությամբ պետք է մասնագիտացնել շրջանի առանձին տնտեսությունները, դրանով իսկ լավորակ բանջարեղենով ապահովելով մեր մայրաքաղաքի աշխատավորներին։ Ռեալ հնարավորություններ կան, առանց լրացուցիչ միջոցների ներդրման, միայն բերքատվության բարձրացման մրդիսով, բանջարեղենից ստացվող եկամուտները հասցնել ավելի քան 500 հազար ռուբլու, այժմյան մոտ 50 հազարի փոխարեն։

Այգեգործությունը պետք է դառնա մեր շրջանի գյուղատնտեսության հիմնական ճյուղերից մեկը։ Առաջիկա մի քանի տարում հնարավոր է շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում հիմնադրել երեք հազար հեկտար պտղատու և խաղողի այգիներ, որից մոտ հազար հեկտարը՝ միայն խաղողի։

Որոշ ընկերներ այն կարծիքին են, թե մեր շրջանի բնա-կլիմայական պայմանները աննպաստ են խաղողագործության զարգացման համար։ Սակայն նրանք սխալվում են. ճիշտ է, մեզ մոտ պտղաբուծության զարգացման համար ավելի մեծ հնարավորություններ կան, քան խաղողագործության, բայց մեր մի շարք կոլտնտեսություններ և սովխոզներ ունեն խաղողագործության համար նպաստավոր պայմաններ. միայն հարկավոր է բազմակողմանիորեն ուսումնասիրել խաղողին հատկացվող հողատարածությունների հարմարավետությունը։

Ապագայում Աբովյանի շրջանը դառնալու է մեր ռեսպուբլիկայի խոշորագույն պտղաբուծական շրջաններից մեկը։ Գլխավորապես պետք է աճեցվեն խնձոր, տանձ, սալոր, ընկույզ, որոնց կարիքը խիստ զգալի է մեր ռեսպուբլիկայում։ Հարկ չկա տնկելու ծիրանի նոր այգիներ, քանի որ Արարատյան դաշտի շրջանների ծիրանը լրիվին բավարարում է բնակչության և արդյունաբերության պահանջմունքները։ Քանի որ նախատեսած պտղատու նոր այգիներից բերք կստացվի առնվազն 5—8 տարի հետո, նպատակահարմար է մինչև այգիների հասունանալը ծառերի միջտարածություններում տնկել դեղձենիներ և գաճաճ խնձորենիներ, որոնք բերք կտան 3—4 տարում։

Իրականացնելով գյուղատնտեսական արտադրության մասնագիտացում, դա երբեք էլ չի նշանակում, թե հարկավոր է վերացնել բոլոր մյուս կուլտուրաների մշակությունը. տնտեսության հիմնական ճյուղերին զուգընթաց պետք է աճեցնել նաև բարձր բերքատու և եկամտաբեր օժանդակ կուլտուրաներ։

Մեր շրջանում շատ լավ է աճում ծխախոտը. կոլտնտեսությունների եկամուտների մոտ 30 տոկոսը ստացվում է ծխախոտագործությունից։ Սակայն ծխախոտի բերքատվությունը դեռևս ցածր է։ Դրա հիմնական պատճառը վատ մշակությունն է։ Լավ մշակության դեպքում ծխախոտի մեկ հեկտարի բերքատվությունն առաջիկայում կարելի է հասցնել 15—20 ցենտների։

Վերջին տարիներում մեծ գործ է կատարվել ու կատարվում հողերի ոռոգման, խոպան հողերի յուրացման ուղղությամբ։ Այժմ շրջանում կա մոտ 6500 հեկտար ոռոգելի հողատարածություն։ Սակայն, ցավոք սրտի, ջրարբի հողերը դեռևս արդյունավետ և ռացիոնալ չեն օգտագործվում, իսկ քարքարոտ, ջրռ հողատարածություններում անբավարար են հողաշինարարական աշխատանքները. դրանք չեն մաքրվում քարերից և պարարտացվում օրգանական պարարտանյութերով։ Մեր խնդիրն է՝ լրիվին օգտագործել ոռոգելի հողատարածությունները. այդ հողերի ստրուկտուրան բարելավելու և բերրի դարձնելու կարևոր միջոցներից մեկը՝ հողատարածություններում բազմամյա և միամյա խոտաբույսերի ցանքսն է։ Հատկապես արագ պետք է ընդար-

ձակել առվույտի ցանքատարածությունները, ինչպես նաև զարկ տալ շավղարի մշակությանը, որն անասուններին կանաչ կերով ապահովելու լավագույն աղբյուրներից մեկն է։ Խոտաբույսերը պետք է ցանել պտղատու այգիների միջշարային տարածություններում։

Խոր ու կայուն մասնագիտացման, հողագործության կուլտուրայի բարձրացման և արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորման հիման վրա նախատեսվում է շրջանի գյուղատնտեսության արագ զարգացման պլան, որը համապատասխանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի պահանջներին։

Ահա թե ինչպիսին է լինելու մեր շրջանի ցանքատարածությունների ստրուկտուրան և բերքատվությունը առաջիկա տասը տարում.

| Կուլտուրաներ | Ցանքատարածությունները, հեկտարներով | Մեկ հեկտարի միջին բերքատվությունը (ցենտ.) |
|---|---|---|
| Հացահատիկ | 6600 | 15 |
| Եգիպտացորեն՝ հատիկ | 450 | 35 |
| Կանաչ մասսա կողբերով | 580 | 300 |
| Եգիպտացորեն՝ խոզանացան | 440 | 225 |
| Միսեռ և լոբազգի կուլտուրաներ | 520 | 20 |
| Շաքարի ճակնդեղ | 270 | 250 |
| Ծխախոտ | 400 | 20 |
| Բանջարեղեն | 380 | 270 |
| Առվույտ | 800 | 110 |
| Կորնգան | 1[illegible]0[illegible] | 17 |
| Շավղար | 150 | 600 |
| Խաչող | 1100 | 85 |
| Պտուղ | 2300 | 70 |

Ինչպես կարելի է նկատել, հացահատիկային կուլտուրաների (ցորեն, գարի) ցանքատարածությունները մասնակիորեն կրճատվում են, իսկ եգիպտացորենինն ավելանում։ Բերքատվության բարձրացման միջոցով մեծ չափով կավելանա հացահատիկի համախառն արտադրանքը։ Առաջիկա տասը տարում կընդարձակվեն խաղողի ու պտղատու այգիների, միսեռի, լոբազգի կուլտուրաների տարածությունները, կավելանա նրանց բերքատվությունը, կստեղծվի կերի կայուն բազա։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ դաշտավարության բնագավառում այդ միջոցառումների իրականացումով շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտները կավելանան ավելի քան չորս անգամ։

Գյուղատնտեսության անհետաձգելի խնդիրներից են՝ անասնաբուծության արագ զարգացումը և նրա մասնագիտացումը։ Ցածր է անասնաբուծության զարգացման այժմյան մակարդակը։ 1961 թվականին յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց շրջանում արտադրվել է՝ 32,5 ցենտներ միս՝ կենդանի քաշով, կաթ՝ 120 ցենտներ, բուրդ՝ 158 կիլոգրամ, ձու՝ 21.212 հազար հատ։

Մեկ ֆուրաժային կովից անցյալ տարի ստացվել է 1530 կգ կաթ, մեկ ածան հավից՝ 70 ձու և մեկ ոչխարից՝ 2,1 կիլոգրամ բուրդ։

Դանդաղ է ավելանում անասունների գլխաքանակը։ Գործնական քայլեր չեն արվել անասնապահական ֆերմաները խոշորացնելու և կենտրոնացնելու համար։ Թերևս դրանով պետք է բացատրել, որ հարյուր հեկտար հողատարածության դիմաց ներկայումս շրջանում կան 22 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ, այդ թվում կովեր՝ 7, ինչպես նաև 62 գլուխ մանր եղջերավոր անասուններ, 10 գլուխ խոզեր և այլն։



Անասնաբուծության ցածր մթերատվության հիմնական պատճառներն են՝

1. Բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները (անկախ նրանց բնակլիմայական պայմաններից և ունեցած հնարավորություններից) ունեն համարյա անասունների բոլոր տեսակների ֆերմաներ, որոնց զգալի մասը փոքր են, ցաճաճ.

2. Անասունների մեծ մասը տեղական են, ցածր մթերատու։

3. Անասունները ապահովված չեն կերի կայուն բազայով։

Շրջանի 26 կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն 4—5-ական ֆերմա՝ կովաբուծական, ոչխարաբուծական, խոզաբուծական, թռչնաբուծական, մեղվաբուծական։

Մայրաքաղաքի բնակչությանը թարմ կաթով ապահովելու համար անհրաժեշտ է Աբովյանի շրջանում առավելապես զարգացնել կաթնաապրանքային տնտեսությունը։ Այդ նպատակով նախատեսել ենք առնվազն երկու-երեք տարում հիմնականում բարելավել կովերի տոհմային կազմը և ավելացնել կովերի տեսակարար կշիռը հանրային հոտում։ Դրա համար հարկավոր է բոլոր ֆերմաներում կազմակերպել արհեստական սերմնավորման գործը, լավ խնամել ու պահպանել ստացված մատղաշը, ինչպես նաև ներմուծել տոհմային անասուններ։ Մոտակա մի քանի տարում շրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացումը պետք է կատարվի մայրական կազմի՝ կաթնատու և մսատու կովերի ավելացման հաշվին։ Մայրական կազմի գլխաքանակը հոտում պետք է հասցվի 50—60 տոկոսի։ Այդ միջոցառման կենսագործմամբ կաթի արտադրությունը համարյա կկրկնապատկվի։

Փոքր ֆերմաների առկայությունը խանգարում է անասնաբուծական մթերքների արագ ավելացմանը։ Շրջանի կովաբուծական ֆերմաները, ըստ անասունների գլխաքանակի, հետևյալ պատկերն են ներկայացնում.

| | | | |
|---|---|---|---|
| 15—50 | գլուխ կով ունեցող | 6 | ֆերմա |
| 51—100 | » » | 12 | » |
| 101—150 | » » | 4 | » |
| 150-ից | ավելի կով ունեցող | 4 | » |

Այսպիսով, 26 ֆերմաներից 18-ը փոքր են, դրանցից ամեն մեկն ունի 15-ից 100 գլուխ անասուն։ Մինչդեռ կոլտնտեսությունների և սովխոզների հողատարածությունները թույլ են տալիս կովաբուծական ֆերմաներում պահելու հարյուրից ոչ պակաս կով։ Հարկ կլինի որոշ ֆերմաներում զարգացնել մսատու անասնաբուծությունը, իսկ որոշ կոլտնտեսություններում վերացնել կաթնաապրանքային ֆերմաները, քանի որ այնտեղ փաստորեն կաթ չի արտադրվում։

Մեզ մոտ սխալ է տեղաբաշխված նաև խոզաբուծությունը։ Խոզաբուծությամբ են զբաղվում, օրինակ, Ջրվաշենի, Քյանքյանի, Սևաբերդի և մի շարք այլ կոլտնտեսություններ, որոնք չունեն կերի սեփական բազա և գնովի կերով են պահում ֆերմաները։ Չափից դուրս բարձր է խոզի մսի ինքնարժեքը. եթե շրջանում մեկ կգ. մսի ինքնարժեքը, միջին հաշվով, կազմել է 1 ռ. 80 կոպեկ, ապա Մայակովսկու կոլտնտեսությունում՝ 5 ռուբլի 20 կոպեկ, Սևաբերդում և Գյամրեզում՝ 3 ռուբլի 10 կոպեկ, Գեղադիրում՝ 3 ռուբլի և այլն։

Պլանավորվում է որոշ կոլտնտեսություններում վերացնել խոզաբուծությունը։ Դրանով երբեք չի պակասի խոզի մսի արտադրությունը. ստեղծվելու է միջկոլտնտեսային խոզաբուծական մեքենայացված խոշոր կայան։

Թռչնաբուծությունը շրջանում հեռանկարային ճյուղ է։ Սակայն պետք է վերացնել գոյություն ունեցող այն սխալ պրակտիկան, երբ թռչնաբուծական

ֆերմաներում պահում են 200—1000 թռչուն. հասկանալի պատճառներով նման տնտեսությունները չեն կարող եկամտաբեր լինել, վերոհիշյալ ֆերմաներում խիստ բարձր է հավի մսի և ձվի ինքնարժեքը։ Մեր կարծիքով թռչնաբուծական ֆերմաները պետք է ունենան 5000—10000 թռչուն, ինչպես և կառուցել միջկոլտնտեսային հավաբուծական ֆաբրիկա՝ մոտ 50.000 թռչունի տարողությամբ։

Անհրաժեշտ է լուծել մսի արտադրության դժվարին պրոբլեմը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե յուրաքանչյուր հարյուր հեկտար վարելահողի դիմաց ստացվի 75 ցենտներ և մնացած հողատարածությունների դիմաց 16 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), ապա շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները կարող են տալ երկուս ու կես անգամ ավելի շատ միս, քան այժմ։ Մսի արտադրության նշված մակարդակին կարելի է հասնել միայն այն դեպքում, եթե յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողից 20 հեկտարի վրա ցանվի կերային կուլտուրաներ։

Գյուղատնտեսական արտադրության վերելքի վճռական օղակը մեքենայացումն է։ Սակայն այդ գործում մեզ մոտ կան լուրջ թերություններ։ Շրջանի մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ նույնիսկ նահանջել են իրենց նախկին դիրքերից, վերացնելով մեքենայացված աշխատանքի շատ պրոցեսներ։ Օրինակ, հացահատիկն ու եգիպտացորենը ցանվում են ձեռքով՝ շաղացան, չի կատարվում խաղողի այգիների միջշարային տարածությունների վար, համարյա մեքենայացված չեն բանջարանոցների, ծխախոտի պլանտացիաների, այգիների մշակումը, պարարտացումն ու բուժումը։ Անբավարար է կերաբույսերի մշակության, պարարտացման և բերքահավաքի մեքենայացումը։ Դաշտավարության և այգեգործության մեջ չեն կիրառվում այնպիսի առաջավոր մեթոդներ ու եղանակներ, ինչպիսիք են՝ քառակուսի-բնային ցանքը, այգիների քառակուսի տնկման եղանակը, որոնք խոշոր հեղաշրջում են մտցրել հողագործության մեջ։ Ղրու և խոպան հողերում անհրաժեշտ է կիրառել հատկապես բանջարեղենների տորֆա-հումուսային թաղարներով աճեցումը։

Անասնաբուծության մեջ համարյա բոլորովին մեքենայացված չեն աշխատատար պրոցեսները։ Մինչև վերջերս շրջանում չկար կոմպլեքսային մեքենայացված օրինակելի մի տնտեսություն։ Այդպիսի տնտեսություն արդեն ստեղծվել է՝ Անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտի ուսումնափորձնական տնտեսության աշխատողների ջանքերով։ Այստեղ կիրառվում է կովերի էլեկտրակիթը, մեքենայացված և ավտոմատացված են գոմաղբի դուրսբերման և գոմաղբահոր փոխադրելու ծանր աշխատանքները, դրված են ավտոմատ խմոցներ, մեքենայացված են նաև կերի վերամշակման որոշ պրոցեսներ և այլն։ Այդ առաջավոր փորձը պետք է արմատավորել շրջանի բոլոր ֆերմաներում։

Շրջանի և ոչ մի կոլտնտեսությունում և սովխոզում անասունները չեն պահվում առանց կապելու. ծրագրել ենք ընթացիկ տարում բոլոր ֆերմաներում կիրառել այդ առաջավոր մեթոդը, թռչնաբուծական ֆերմաներում՝ մտցնել խոր ցամքարի եղանակը։

Գյուղատնտեսության աշխատողների առջև ծառացած մեծ ու բարդ խնդիրները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է կարգավորել աշխատանքի կազմակերպումն ու վարձատրումը, նյութապես խթանել գյուղի աշխատողների շահագրգռվածությունը։



Շրջանի և ո՛չ մի կոլտնտեսությունում սիստեմատիկաբար չի ավանսավորվում կոլտնտեսականների աշխատանքը, չի կիրառվում դրամական վարձատրության սիստեմը. տնտեսության ղեկավարները փորձում են այդ բացատրել ստացած ցածր եկամուտներով։ Մինչդեռ շրջանի մի շարք կոլտնտեսություններ (օրինակ, Արամուսի, Ելղովանի, Հրազդանի, Գառնիի, Մայակովսկու) կարող են այդ անել։ Վերջերս շրջանի մի շարք կոլտնտեսություններում կիրառվում է անասնապահների նյութական խրախուսում, որն արդեն տալիս է դրական արդյունք։

Հաշվի առնելով այդ, շրջանի կոլտնտեսությունների վարչությունները և սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է տարածեն ու ամենուրեք արմատավորեն կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման դրական օրինակները, որը մեծապես կխթանի գյուղատնտեսական արտադրության բարձրացմանը։

Մեր խնդիրն է՝ լրջորեն զբաղվել գյուղատնտեսության մասնագիտացմամբ, որով հնարավորություն կստեղծվի արտադրության մեջ հաստատակամորեն արմատավորել գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, ավելի լավ օգտագործել հողը, մտցնել հողատարածությունների առավել արդյունավետ կառուցվածք, ավելի մեծ մասշտաբներով մեքենայացնել գյուղատնտեսությունը և այլն։ Առավելագույն արտադրանք տալ նվազագույն աշխատանքային ծախսումներով — ահա ՍՄԿՊ XXII համագումարի պահանջը, որի կատարման համար ջանք չպետք է խնայել։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարի որոշումները, համագումարի կողմից հաստատված կոմունիզմի կառուցման Ծրագիրը աշխատանքային բուռն խանդավառություն են առաջացրել կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների, մեր բոլոր աշխատավորների շրջանում։ Հաստատակամորեն ընթանալով հարազատ Կոմունիստական պարտիայի գծած ուղիով, նրանք ամենուր նորանոր նախաձեռնություններ են հանդես բերում և լարված պայքար ծավալում շրջանի գյուղատնտեսության զարգացման համար։ Սոցիալիստական գյուղի ամեն մի աշխատավոր իր հայրենասիրական պարտքն է համարում ժամանակին ու բարձր որակով կատարել հանձնարարված գործը, վճռականորեն հաղթահարել եղած դժվարությունները և անպայման ապահովել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման՝ յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքների անթերի կատարումը։

Շրջանի պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրն է՝ հետևողականորեն գլխավորել աշխատավորների արտադրական ու քաղաքական ակտիվությունը, բարձրացնել տնտեսության ղեկավարման մակարդակը, բոլոր միջոցները գործի դնելով՝ առաջավոր շրջաններին հասնելու և Հայրենիքին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։

Դ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿՊ Աբովյանի շրջկոմի քարտուղար

# ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի վերջին տարիների միջոցառումները մեծ չափով խթանեցին անասունների գլխաքանակի աճմանը, անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը։ «Սակայն,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— մսի ու կաթի արտադրության աճի տեմպերը դեռևս չեն համապատասխանում այն մակարդակին, որ մեզ անհրաժեշտ է։ Պետք է շատ լարված աշխատել և ամենից առաջ ավելի լրիվ օգտագործել հնարավորությունները, արդեն 1962 թվականին այդ մթերքների արտադրությունը զգալիորեն ավելացնելու համար»։

Հայկական ՍՍՌ-ում անասնաբուծական մթերքների հիմնական տեսակների արտադրության աճի տեմպերը զգալիորեն ցածր են Միութենական միջին տեմպերից. ռեսպուբլիկան մսի և կաթի արտադրության մակարդակով անթույլատրելիորեն ետ է մնում յոթնամյա պլանով նախատեսվածից։

Անասնաբուծության հետագա զարգացման յոթնամյա պլանային առաջադրանքները կատարելու և անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար անհրաժեշտ է կազմակերպչական լայն աշխատանք ծավալել յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում, ամենուրեք արմատավորել գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, հմտորեն օգտագործել ռեզերվները։ Զարգացման մեծ ռեզերվներ ունի ոչխարաբուծությունը, որը Հայկական ՍՍՌ-ի անասնաբուծության առաջատար և բարձր եկամտաբեր ճյուղերից մեկն է։ Անասնաբուծությունից ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ստացած դրամական եկամուտների 45—46 տոկոսը գոյանում է ոչխարաբուծությունից։ Մսի բալանսում ոչխարի մսի տեսակարար կշիռը կազմում է 33—35 տոկոս։

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի որոշումներից հետո ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ոչխարաբուծության զարգացման գործում ձեռք բերեցին զգալի հաջողություններ։ 1953—1960 թվականներին ռեսպուբլիկայում մանր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 531 հազարով, բրդի համախառն արտադրանքը՝ 1362 տոննայով կամ 54,5 տոկոսով։

Բարելավվեց նաև ոչխարների ցեղական կազմը։ 1960 թվականի հունվարի մեկի տվյալներով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում առկա 1342,2 հազար ոչխարների 84,3 տոկոսը բարձր մթերատու խառնացեղ ոչխարներ են, որոնց 53,5 տոկոսը ավելի արժեքավոր՝ նրբագեղմ և կիսանրբագեղմ են։



Անասնապահական մթերքների արտադրության ավելացման յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործում մեծ նշանակություն ունի ոչխարաբուծության զարգացումը։ Դրա համար էլ նախատեսված է 1965 թվականին Հայկական ՍՍՌ-ում ոչխարների գլխաքանակը հասցնել 2.531 հազարի, ոչխարի մսի արտադրությունը՝ 38,6 հազար տոննայի, բրդինը՝ 6,4 հազար, ոչխարի կաթինը՝ 33,0 հազար տոննայի։

Ռեսպուբլիկայի 700 հազար հեկտար կազմող ալպիական հարուստ և ընդարձակ արոտների ռացիոնալ օգտագործումը այդ խնդրի լուծման կարևոր միջոցներից մեկն է։ Դրա հետ միասին անհրաժեշտ է յոթնամյակի մնացած տարիների ընթացքում ավարտել ոչխարների տրամախաչման գործը և հոտում առկա ավելի քան 40 տոկոս կիսակոպտաբուրդ ոչխարները փոխարինել նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարներով։ Միաժամանակ անհրաժեշտ է կազմակերպել մատղաշների անկորուստ աճը, կանխել ստերջությունն ու անկումները, 100 մաքիից ստանալ առնվազն 95—100 գառ։ Այդ միանգամայն հնարավոր է, որովհետև արդեն ռեսպուբլիկայի առաջավոր շատ կոլտնտեսություններ, սովխոզներ ու հովիվներ յուրաքանչյուր 100 մաքիից ստանում և պահպանում են 95—100 և ավելի գառներ։

Ոչխարաբուծության զարգացման գործում լավագույն ցուցանիշների է հասել Գորիսի շրջանի Խնածախի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի ավագ հովիվ Ժորա Բաղդասարյանը, որն իր խնամած 380 մաքիից ստացել և աճեցրել է 418 գառ։ Նա յուրաքանչյուր ոչխարից միջին հաշվով ստացել է 4,4 կգ բուրդ (հաշվարկային քաշով)։ Սիսիանի շրջանի Նորավանի կոլտնտեսության հովիվ Վազգեն Քարամյանն իր խնամած 400 մաքիից մեկ տարում ստացավ և պահպանեց 410 գառ, մեկ ոչխարից՝ 3,8 կգ բուրդ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում ոչխարների գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման ռեզերվներն են՝ 100 մաքիից ստացվող և պահպանվող գառների գլխաքանակի ավելացումը, ստերջության և անկումների կանխումը, հոտի որակական բարելավումն ու կատարելագործումը, արոտային գիրացման գործի կարգավորումը։

Շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռ ցածր է ոչխարաբուծությունը վարելու կուլտուրան և ինչպես հարկն է չի պահպանվում ու խնամվում մատղաշը, որի հետևանքով ռեսպուբլիկայում շատ ցածր է 100 մաքիից ստացվող և պահպանվող գառների տոկոսը. այդ բացասաբար է անդրադառնում հոտի վերարտադրության, ինչպես և ոչխարաբուծության մթերատվության բարձրացման վրա։

1959—1960 թթ. ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում յուրաքանչյուր 100 մաքիից միջին հաշվով ստացվել է 75—77 գառ, որոնցից պահպանվել է 62—67-ը։ Միանգամայն անհանդուրժելի է մատղաշների ստացման ու պահպանման վիճակը առանձին շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Այսպես. 1960 թվականի ընթացքում Մարտունու շրջանի Ն. Գետաշեն գյուղի կոլտնտեսությունը առ մեկը հունվարի առկա 1362 մաքիից ստացել է 604 գառ, որոնցից պահպանել է 385-ը, կամ յուրաքանչյուր 100 մաքիից՝ 28 գառ։ Այդ նշանակում է, որ ոչխարների բուծման և մատղաշների խնամքն անբավարար կազմակերպելու հետևանքով կոլտնտեսությունը պակաս է ստացել 910 գառ, 500 կգ բուրդ, 3620 կգ ոչխարի կաթ։

Մատղաշի խնամքը, պահպանումն ու կերակրումը բարելավելու միջո-

ցով կոլտնտեսություններում ու սովխոզներում յուրաքանչյուր 100 մաքիից կարելի է ստանալ ու պահպանել առնվազն 95 գառ։ Միայն դրա շնորհիվ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում առկա 734 հազար գլուխ մայրական կազմից տարեկան 220 հազարից ավելի գառ կստացվի, քան ստացվել է 1960 թ.։ Նույն տարում ռեալիզացիայի ենթարկելու դեպքում իսկ (հաշված յուրաքանչյուր գառը միջին հաշվով 30 կգ) հնարավոր կլինի տարեկան լրացուցիչ ստանալ 6600 տոննա մատղաշի միս, առնվազն 220 տոննա բուրդ և 5500 տոննա կաթ։

Անասնաբուծության զարգացմանը կնպաստի նաև մաքիներին հղի զամբիկի արյան շիճուկ (ՍԺԿ) ներարկելը։ Սովետական Միության շատ առաջավոր կոլտնտեսություններ ու սովխոզներ տարիներ շարունակ կիրառում են այդ միջոցառումը և յուրաքանչյուր 100 մաքիից ստանում են 130—150 և ավելի գառ։ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը 1960 թվականից ձեռնամուխ է եղել հղի զամբիկի արյան շիճուկի պատրաստմանը՝ այն արտադրության մեջ ներդնելու համար։

Ոչխարաբուծության մթերատվության բարձրացման ռեզերվներից մեկն էլ վաղ և նպաստավոր պայմաններում ոչխարների ծինը կազմակերպելն է։ Այս միջոցառումը խոշոր չափով կնպաստի մսի, ինչպես նաև բրդի արտադրության ավելացմանը։

Ռեսպուբլիկայի տարբեր բնակլիմայական պայմաններում ոչխարների ծնի ժամկետները տարբեր են։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում ոչխարի ծինը պլանավորվում է հիմնականում մարտ, ապրիլ ամիսներին՝ արոտային ժամանակաշրջանի նախօրյակին։ Այդ ժամանակ ծնված գառները մայիս-հունիս ամիսներին դեռ փոքր են լինում, չկազդուրված և չեն դիմանում ալպյան բարձրադիր արոտների խիստ փոփոխական եղանակներին ու անբարենպաստ պայմաններին. այդ պատճառով էլ նրանք դանդաղ են աճում, իսկ աշնանը նրանց միջին կենդանի քաշը չի գերազանցում 25—27 կիլոգրամից, և անկումներ են լինում։

Տարիներ շարունակ Զանգեզուրի գոտու բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում լայն չափերով անցկացվում է ձմեռային ծին (դեկտեմբեր-փետրվար), որը լավ արդյունք է տալիս։ Զանգեզուրի գոտու կոլտնտեսությունների փորձով Արտաշատի, Ամասիայի, Ախուրյանի, Վեդու, Հրազդանի, Կամոյի, Հոկտեմբերյանի, էջմիածնի, Շահումյանի, Թալինի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները 1960 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին կազմակերպեցին ոչխարների ամառային զուգավորում և 1960 թվականի դեկտեմբեր, 1961 թվականի հունվար ամիսներին ոչխարները ծնեցին։

Ամառային, բուսականությամբ հարուստ արոտներում զուգավորված մաքիներից ստացվում են առողջ, ամրակազմ, առավել կենսունակ գառներ, կանխվում է ստերջությունը. մաքիների 15—20 տոկոսը զույգ գառներ են ծնում, մատղաշը լավ է համակերպվում բարձրադիր արոտային պայմաններին, կանխվում են անկումները։ Ձմեռը ծնված գառները լավ են աճում ու զարգանում, աշնանը նրանց միջին կենդանի քաշը հասնում է մինչև 38—40 կիլոգրամի, այսինքն՝ գարնանը ծնված գառների քաշը գերազանցում է 12—13 կիլոգրամով։

Գարնանը ծնված նորագեղմ և կիսանրբագեղմ գառների բուրդը կարճ է լինում, նույն տարում չի խուզվում, մինչդեռ ձմեռը ծնվածների բուրդը հուլիս-



օգոստոս ամիսներին հասնում է 5—6 սմ-ի. յուրաքանչյուր գառից միջին հաշվով ստացվում է 1,3—1,5 կիլոգրամ բուրդ։

Ձմեռային ծնի կազմակերպումը սերտորեն կապված է հոտի կառուցվածքի հետ։ Ռեսպուբլիկայի ոչխարաբուծության այժմյան կառուցվածքը չի համապատասխանում նրա մթերատվության բարձրացման պահանջներին և ի վիճակի չէ նախատեսված պլանային ժամկետներում խիստ բարձրացնելու մսի և բրդի արտադրությունը։

Բարձր ապրանքայնություն ունեցող ոչխարաբուծության արտադրանքի ավելացման և ինքնարժեքի իջեցման գործում խոշոր նշանակություն ունի հոտի ռացիոնալ կառուցվածքը, որը հնարավորություն կտա ավելացնելու ոչխարների գլխաքանակը, ինչպես և մսի, բրդի ու կաթի արտադրությունը։ Հոտի կազմը պայմանավորվում է ոչխարաբուծության ուղղությամբ և մասնագիտացմամբ, ոչխարների զուգավորման և ծնի ժամկետներով, հողի ինտենսիվ օգտագործման աստիճանով, 100 հեկտար հողային տարածության վրա պահվող ոչխարի գլխաքանակով, հոտի վերարտադրության տեմպերով և կերի բազայով։

Ինչպես ապրանքային, նույնպես էլ տոհմային տնտեսություններում հոտի կառուցվածքը պետք է ապահովի տնտեսության մեջ արտադրվող մթերքների պլանային առաջադրանքների կատարումը։

Ռեսպուբլիկայի տարբեր բնակլիմայական պայմաններում և տնտեսական գոտիներում ոչխարաբուծության զարգացման պայմանները տարբեր են, որով և բնորոշվում է նրա ուղղությունը։ Ռեսպուբլիկայում ոչխարների մսուրային խնամքի ժամանակաշրջանը երկար է (5—6 ամիս), իսկ ձմեռային արոտներ չկան։ Այդ իսկ պատճառով կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է ունենան հոտի այնպիսի կազմ, որն ապահովի ոչխարների գլխաքանակի առավել աճում ու պահպանում։

Այդպիսով հնարավոր կլինի բարձրացնել թե մսացու ոչխարի մթերատվությունը և թե արտադրվող մսի որակը, ըստ որում նրա 50—60 տոկոսը կկազմի բարձր գիրություն ունեցող 9—10 ամսական մատղաշի միսը։ Սակայն այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում անբավարար է մաքիների տեսակարար կշիռը հոտում։ 1959 թվականի հունվարի մեկի դրությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մաքիների տեսակարար կշիռը հոտում կազմել է 53,8 տոկոս և յուրաքանչյուր մաքիի հաշվով 21,2 կիլոգրամ միս է արտադրվել (կենդանի քաշով)։

Անհրաժեշտ ենք համարում նշել, որ Ազիզբեկովի, Ալավերդու, Հոկտեմբերյանի, Վեդիի, Իջևանի և Ղափանի շրջաններում մաքիների տեսակարար կշիռը հոտում կազմել է 49,7—52 տոկոս, որի հետևանքով մեկ մաքիի հաշվով արտադրվել է 13,1—21,8 կգ միս, մինչդեռ Ապարանի, Արտաշատի, Ախուրյանի, և Շահումյանի շրջաններում, որտեղ մաքիների տեսակարար կշիռը հոտում կազմել է 54,5—61,0 տոկոս, յուրաքանչյուր մաքիի հաշվով արտադրվել է 27,4—29,7 կգ միս։

Հաշվումներից պարզվում է, որ շատ բուրդ, միս և կաթ տվող կիսանրբագեղմ ոչխարների հոտում մաքիների տեսակարար կշիռը 55 տոկոսից 75 տոկոսի հասցնելու դեպքում մսի արտադրանքը կավելանա 30,7, բրդինը՝ 16,6 և կաթինը՝ 13,6 տոկոսով։ Այդ նշանակում է, որ ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների հոտերի կազմը ռացիոնալ դարձնելու և ձմեռային ծին կիրառելու միջոցով հնարավոր կլինի 1965 թվականին ոչխարի մսի արտա-

դրությունն ավելացնել 5000—6000, բրդինը՝ 700—800 և կաթինը՝ 7500—8000 տոննայով։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասում ոչխարների ծինը պլանավորվում է մարտ, ապրիլ ամիսներին։ Դրա հետևանքով նրանք հարկադրված արու գառները պահում են մինչև հաջորդ տարվա աշունը, նրանց 1,5 տարեկան հասակը, կատարելով աշխատանքի ու միջոցների մեծ ծախսումներ, որով հնարավոր չի լինում մաքիների տեսակարար կշիռը հոտում 50—55 տոկոսից բարձրացնել։

Անհրաժեշտ է նշել, որ տվյալ տարվա աշնանը (ձմեռային ծնից ստացված) 9—10 ամսական գառներն ունենում են հասակավոր ոչխարների կենդանի քաշի 75—80 տոկոսը, հետևապես մեկ տարեկան մատղաշների վրա մսուրային շրջանում կատարվող ծախսումները չեն արդարացվում նրանց կենդանի քաշի ավելացման և լրացուցիչ ստացվող բրդի եկամուտներով։

Կիրառելով ռեսպուբլիկայի առաջավորների փորձը, շատ կոլտնտեսություններ և սովխոզներ 1960 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին կազմակերպեցին ոչխարների ամառային զուգավորում, որի շնորհիվ 1960 թվականի դեկտեմբերից մինչև 1961 թվականի փետրվարի մեկը նրանք ավելի քան 240 հազար գառ ստացան։ Ոչխարի ձմեռային ծնի կազմակերպման գործում առանձնապես աչքի ընկան՝ Արտաշատի շրջանը, որը ստացավ 14483 գառ, Հոկտեմբերյանինը՝ 10605, Էջմիածնինը՝ 9253, Ամասիայինը՝ 13062, Ախուրյանինը՝ 10897, Կամոյի անվան շրջանը՝ 10744 գառ և շատ այլ շրջաններ, որոնք գարնանային ծնի սկսման նախօրյակին արդեն ունեին հազարավոր գառներ։

Չորս հարյուր գլխից բաղկացած կիսանրբագեղմ կազմ ունեցող երկու հոտերի (առաջինում մայրական կազմը 55, երկրորդում՝ 75 տոկոս) համախառն արտադրանքի և ստացվող դրամական եկամուտների վերլուծումից պարզվում է, որ երկրորդ հոտում ավելի է ստացվում բուրդ՝ 226 կգ, միս՝ կենդանի քաշով 2750 կգ և կաթ 900 կգ։ Արտադրանքի այդ տարբերությունը կազմում է 2525 ռուբլի (նոր դրամով)։

Մաքիների տեսակարար կշիռը հոտում 55-ի փոխարեն 75 տոկոսի հասցնելու դեպքում մսի, բրդի և կաթի համախառն արտադրանքի ավելացման հետ միաժամանակ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, նվազում են մեկ միավոր արտադրանքի վրա կատարվող ծախսումները, հետևաբար՝ մեկ միավորի ինքնարժեքն ու միաժամանակ աճում է տնտեսության եկամուտը։

Արտադրանքի մեկ միավորի վրա աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով անասնաբուծական մթերքների արտադրությունն առավելագույն չափով ավելացնել հնարավոր է ոչխարաբուծության բարելավման և նրա մասնագիտացման միջոցով՝ տնտեսությունների բնական, կերային և տնտեսական պայմաններին համապատասխան։ Այժմ մսի արտադրությունն ավելացնելու խնդիրը հրատապ է, որը պահանջում է կոլտնտեսություններում ու սովխոզներում ձեռնամուխ լինել ոչխարաբուծության մասնագիտացմանը։

Այդ նպատակով, մեր կարծիքով, հարկավոր է վերանայել ռեսպուբլիկայի մի շարք շրջանների ոչխարաբուծության զարգացման ուղղությունը և բրդամսատուն փոխարինել մսաբրդատուով, որն առաջինի համեմատությամբ տալիս է ավելի շատ միս, ավելի վաղահաս է և ձեռնտու։ Հաշվումները ցույց են տալիս, որ մսաբրդատու մեկ մայր ոչխարը բրդամսատուի համեմատությամբ 6—7 կիլոգրամով (կենդանի քաշով) ավելի միս է տալիս, իսկ բրդի մաքուր ելույթով հավասար է վերջինին։ Այդպիսով, մսաբրդատու ուղղության մեկ մայր ոչխարից տարեկան 4—5 ռուբլով ավելի դրամական եկամուտ է ստացվում։



Ոչխարի մսի արտադրության ավելացման կարևորագույն գործոններից մեկն էլ ոչխարների արոտային գիրացման ճիշտ կազմակերպումն ու արոտների ռացիոնալ օգտագործումն է։ Ռեսպուբլիկայի ոչխարաբուծությունը հիմնված է գերազանցապես ամառային արոտների ընդարձակ տարածությունների օգտագործման վրա։ Սակայն կերի այդ էժան աղբյուրը շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ խիստ անբավարար, ոչ ռացիոնալ ու շատ կարճ ժամկետներում (2—2,5 ամիս) են օգտագործում, որի հետևանքով ոչխարները լավ չեն գիրանում և տնտեսությունները պահանջված քանակությամբ եկամուտ չեն ստանում։

Արոտային գիրացումը ճիշտ կազմակերպելու և արոտները ռացիոնալ օգտագործելու միջոցով հնարավոր է համեմատաբար ոչխարի քիչ գլխաքանակով շատ միս ստանալ, ապահովելով նրա ցածր ինքնարժեքը և ոչխարաբուծության բարձր եկամտաբերությունը։ Ռեսպուբլիկայի ալպիական հարուստ արոտների պայմաններում գիրացումը հաջող կազմակերպելով, առանց լրացուցիչ խտացրած կերի, մեր առաջավոր կոլտնտեսություններն ու սովխոզները լավագույն արդյունք են ստանում։ Այդպես վարվելով առաջիկա 1—2 տարում հնարավոր է ոչխարի միջին կենդանի քաշը այժմյան 41 կիլոգրամից հասցնել առնվազն 44—45 կիլոգրամի։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները յուրաքանչյուր տարի պետությանը և շուկայում վաճառում են մոտավորապես 500 հազար գլուխ ոչխար. դրանցից 22—25 տոկոսը ունեն միջակից բարձր, 48—50-ը միջակ և 30 տոկոսը միջակից ցածր գիրություն։ Առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը ցույց է տալիս, որ արոտային գիրացումը և ոչխարների խնամքը բարելավելու միջոցով հնարավոր է իսպառ վերացնել միջակից ցածր գիրություն ունեցող կենդանիների վաճառքը և ամբողջ գլխաքանակի 60—70 տոկոսը դարձնել միջակից բարձր և 30—40 տոկոսը՝ միջակ գիրությամբ։

Կերի բազայի անբավարար վիճակը հասցրել է այն բանին, որ մի շարք շրջաններում ոչխարաբուծությունը խիստ դանդաղ է զարգանում և սիստեմատիկաբար չեն կատարվում ոչխարաբուծության մթերատվության, ինչպես նաև գլխաքանակի աճի պլանային առաջադրանքները։

Ոչխարաբուծության մթերքների արտադրության գծով առաջադրանքները կատարելու համար անհրաժեշտ է կոլտնտեսություններում ու սովխոզներում ձմեռող յուրաքանչյուր ոչխարի համար միջին հաշվով կուտակել՝ խոտ 2,5—3,0, գարու կամ գարնանացան ցորենի դարման՝ 0,5—0,6, սիլոս՝ 1,0—1,5, խտացրած կեր՝ 0,1—0,15 ցենտներ։

Այսպիսով, նշված բոլոր միջոցառումները լայնորեն կիրառելով, հնարավոր է առաջիկա մեկ-երկու տարում մեծապես ավելացնել ոչխարի մսի արտադրությունը և 1965 թվականին կատարել ոչխարաբուծության մթերատվության բարձրացման՝ յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները։

Լ. ԲՈՒՐԲԵԿՅԱՆ

Հայկական ՍՍՌ-ի վաստակավոր զոոտեխնիկ

# ՔԱՐԵՐԸ ԴԱՌՆՈՒՄ ԵՆ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ԱԿՆԱՐԿ

Մի փոքրիկ սենյակում դրված է չորս գրասեղան: Սեղաններից մեկը տեղավորված է երկու պատուհանների միջև: Առաջին տպավորությունն այն է, որ այդ սեղանի շուրջը ոչ ոք չի նստում. այն ծանրաբեռնված է քարերով, գրքերով, տետրակներով, կանաչան մեծության և տարբեր գույնի ապակյա բյուրեղներով: Սեղանի վրա կան խոշորացույցներ և էլի շատ կանաչան իրեր ու առարկաներ: Նրա մի անկյունում՝ ցորենի հասկերի մի խուրձ: Սրվակների մեջ սպիտակ փոշի և, նույնիսկ աթոռի վրա ինչ-որ մետաղյա իրեր: Սեղաններից մեկի մոտ նստած է երիտասարդ մի մարդ, խիստ լուրջ դեմքով: Ես ներկայացա նրան:



— Շատ ուրախ եմ,— ասաց նա, երբ իմացավ իմ նպատակը:

— Իսկ ո՞ւր է Մանվել Մանվելյանը,— հարցրի ես:

— Մանվել Գարեգինիչը բացակայում է քաղաքից: Ինչո՞վ կարող եմ ձեզ օգտակար լինել:

Ես խնդրում եմ Մանվել Մանվելյանի մասին մի քանի տեղեկություններ:

Նա պահարանից հանում է մի կանաչ կազմով թղթապանակ.

— Այստեղ պահվում է նրա կենսագրությունը:

Ես տեսնում եմ ինչ-որ անկետա, աջ անկյունում երիտասարդ տղայի մի լուսանկար:

— Մանվել Գարեգինիչը ծնվել է 1913 թվականին, Վան քաղաքում,— կարդում է ինստիտուտի գիտնական քարտուղար Ժիրայր Շալջյանը,— սովորել և ավարտել է մեզ մոտ՝ Երևանում: Ձեզ ուրիշ բան է՞լ է հետաքրքրում նրա կենսագրությունից, թե՞ այսքանը բավական է:

Շալջյանը փակում է թղթապանակը և այն նորից տեղավորում պահարանում.

— Այդ նրա սեղանն է,— ասում է նա և ցույց տալիս քարերով ծանրաբեռնված սեղանը,— Մանվել Գարեգինիչն աշխատում է այստեղ:

Ես հասկացա, որ հենց այդ սեղանը, քարերը, ապակիներն ու սրվակներն էին նրա կենսագրության տարրերը:

Ես խնդրեցի խոսել քարերի մասին, որոնք մի օր դառնալու են մեր երկրի կենսագրությունը:

— Սկսենք նեֆելինային սիենիտներից,—ասաց գիտնական քարտուղարը,— սիենիտ բառը վերցված է Եգիպտոսի Սիենա հին քաղաքի անունից: Նեֆելինային սիենիտը ամուր ապար է: Երևանի ալյումինի գործարանը իր հումքը՝ բոքսիդային կավահողը ստանում է Ուրալից:

Մանվել Մանվելյանը դեռ քառասնական թվականների սկզբներից փնտրում էր Հայաստանում մի նյութ, որը փոխարինի բոքսիդին: Նա համառությամբ էր աշխատում և գտավ: Այդ նյութը նեֆելինային սիենիտն էր: Մանվել Մանվելյանը երկար ժամանակ ուսումնասիրեց այն, իր հատուկ մեթոդով քիմիական հարստացման ենթարկեց, և երկար տարիների աշխատանքից հետո ստացավ նոր, շատ կարևոր նյութեր, որոնք



մեծ նշանակություն ունեն մեր քիմիական արդյունաբերության և տնտեսության համար:

Ամենից առաջ այդ ապարից ալյումին ստացավ նա: Ավելորդ չի լինի ասել, որ Միության մեջ ալյումինի մեկ տոննան երկուս և կես անգամ թանկ արժե մեզ մոտ արտադրվողից: Հետո նա ստացավ դրանից պորտլանդ ցեմենտ, ապա՝ մետասիլիկատ նատրի: Վերջինս Միության մեջ չի արտադրվում: Ամերիկայի Միացյալ Նահանգներում մեկ տոննան արժե 135 դոլար, իսկ Հայաստանում՝ 6 ռուբլի: Այդ ապարից ստացվող մետասիլիկատ կալցին ևս Սովետական Միության մեջ միայն Հայաստանում է արտադրվում: Ամերիկայում ստանում են լաբորատոր միջոցներով, մեկ տոննան արժե 135 դոլար, մեզ մոտ՝ Հայաստանում այն կարժենա 6 ռուբլի: Ստացվում է նաև պոտաշ, որի մեկ տոննան մեզ մոտ անհամեմատ էժան կլինի, քան Միության մեջ: Դրանից ստացվում է նաև սպիտակ մուր և վերջապես, այն նյութը, որ Մանվել Գարեգինիչն անվանել է Երևանիտ:

Երևանիտը լայն հնարավորություններ է ընդեղծում ոչ միայն քիմիական արդյունաբերության այլև տեխնիկայի մյուս կարևոր բնագավառների համար: Երևանիտը այն կոմպլեքս նյութն է, որի միջոցով ստացվում են մի շարք նոր արտադրանքներ, որոնց թվում նաև բյուրեղապակին: Երևանիտը կարտադրվի Հրազդանի կոմբինատում և արդեն հայտնի է, որ դրա մեկ տոննան կարժենա հիսուն ռուբլի: Երևանիտի կոմպլեքս նյութերի հիմքի վրա պատրաստվող բյուրեղապակու գործարանը կառուցվելու է Աշտարակի և Արգնու միջև: Բյուրեղապակին լինելու է շատ բարձրորակ և չափազանց գեղեցիկ: Այն իր որակով և գեղեցկությամբ գերազանցելու է չեխական և գերմանական բյուրեղապակուն:

Այս բոլորը, ինչ որ ասաց գիտնական քարտուղար Շալջյանը, նորություն չէ, մեկանից շատ առաջ ապակի է եղել, եղել է նաև բյուրեղապակի: Հիմա էլ Սովետական Միությունում քիչ չեն բյուրեղապակու գործարանները: Բանը նրանումն է, որ Մանվել Մանվելյանի գործադրած տեխնոլոգիան այլ է, նոր տեխնոլոգիա է, և այդ նորի շնորհիվ է, որ Հայաստանի բուրեղապակին լինելու է լավ և շատ գեղեցիկ:

Սկսվել է արդեն Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կառուցումը, որի շուրջը շատ վեճեր են եղել, տարբեր կարծիքներ են հայտնել մասնագետները:

— Այդ մարդու համառությունը կարողացավ հաղթել,— ասում է նշանավոր մի քիմիկոս:— Ես շատ բանում համաձայն չեմ Մանվելի հետ, բայց նրա գերմարդկային ջանքերը կիսաարդյունաբերական արտադրությունը կազմակերպելու գործում նախանձելի է: Տոկուն մարդ է և դիմացկուն ջղեր ունի: Մանվելյանը մի գիտնական է, որը հասնում է իր նպատակին:

— Մենք հիմա Կանաչի մոտ մեր փորձնական գործարանն ունենք,— ասում է մի ուրիշ գիտնական:— Հիմա բոլոր լաբորատոր տվյալները հաստատվում են այդ գործարանում կիսաարտադրական չափերով և նրա տվյալների հիման վրա կառուցվում է Հրազդանի կոմբինատը: Եթե մի պահ Մանվելը դադարեր պայքարելուց, այդ գործարանը դժվար թե կառուցվեր:

— Ապակու թելեր շատ կան,— ասում է Մանվելյանի «հակառակորդներից» մեկը,—վաղուց են ստացվել այդ թելերը և այդ հայտնի է բոլորիս: Բայց Մանվելը կիրառում է նոր տեխնոլոգիա և դրանով բարձրացրել է թելերի որակը, արտադրություն է կազմակերպել, հումքն է փոխել և այլն և այլն:

— Ապակու թելերը,— ասում է տակավին երիտասարդ քիմիկոս Ղալամքարյանը,— նորանոր կիրառման ասպարեզներ են նվաճում տեխնիկայի տարբեր բնագավառներում: Ներկայումս կարելի է թվել 4000 անուն իրեր, որոնք ստացվում են ապակյա թելերից... ապակյա թելերի տարեկան թողարկումը ամբողջ աշխարհում, տեքստիլ նպատակների համար հասել է ավելի քան 500 հազար տոննայի: Այդ թելերից պատրաստված իրերն ու գործվածքներն ունեն այնպիսի հատկություններ, որոնցից զուրկ են օրգանական կամ միներալ թելերն ու իրերը, օրինակ, սովորական ապակյա թելերից պատրաստված իրերն ու գործվածքները դիմանում են 400—800 աստիճան ջերմության, իսկ հատուկ պատրաստված իրերը՝ մինչև 1200 աստիճանի: Նրանք կայուն են նաև խոնավության նկատմամբ: Էլեկտրականության շատ վատ հաղորդիչներ են: Նրանց կարևոր հատկություններից մեկն էլ, դա լույսի և ձայնի կլանման կամ անդրադարձման հատկությունն է: Բայց դրանք ունեն նաև քիմիական կայունություն՝ թթուների մեջ չեն քայքայվում, չեն ենթարկվում նրանց ազդեցությանը: Ապակե թելերը կիրառվում են բազմաթիվ այլ նպատակներով: Ամեն մի դեպքում այն պետք է բավարարի որոշակի պահանջների, ունենա համապատասխան քիմիական-ֆիզիկական հատկություններ: Եվ այդ հատկությունները կարելի է կարգավորել, ստանալ գործարանում, լաբորատորիայում փոփոխելով նրա քիմիական բաղադրությունը, նրա արտադրության տեխնոլոգիան: Ահա այս է կարևորը: Ահա այն ճիշտ ուղին, որ բռնել են Մանվել Մանվելյանը և նրա ղեկավարած ինստիտուտի աշխատակիցները:

— Մեզ հայտնի է,— ասում է մի ուրիշ գիտնական,— որ աշխարհում շատ վաղուց գոյություն ունի աղը, բայց մեզ նոր է հայտնի դառնում, որ աղից ստացվող քլորաջրածինը և պոտաշը կարելի է այնպիսի մեթոդով ստանալ, որ երեք ան-

կազմալուծել Կոմպարտիայի շարքերը և նրա ղեկավարությանը հարկադրել լուծարքի ենթարկելու պարտիան:

Բայց ռեակցիայի ճիգերը ապարդյուն անցան:

Հետաքրքրական է, որ այդ ծայրահեղ ռեպրեսիվ միջոցառումը նախորդեց Սան-Ֆրանցիսկոյի կոնֆերանսին, որտեղ ԱՄՆ-ը, իր 48 արբանյակների հետ միասին, սեպարատ հաշտության պայմանագիր ստորագրեցին Ճապոնիայի հետ: Այդ անհավասար պայմանագիրը միայն ձևականորեն վերջ տվեց երկրի օկուպացիոն ռեժիմին և ազատ արձակեց ճապոնական միլիտարիստների ձեռքերը: Պայմանագիրը ուժի մեջ մտավ 1952 թվականի ապրիլին, սակայն մինչ այդ, փետրվար ամսին, Միացյալ Նահանգները և Ճապոնիան ստորագրեցին այսպես կոչված «անվտանգության պայմանագիրը»: Վերջինս խախտում էր Ճապոնիայի 1946 թվականի կոնստիտուցիան (որն արգելում էր նրան զինված ուժեր ունենալ) և օրինականացնում նրա վերազինումը: Նոր պայմանագիրը ԱՄՆ-ին թույլ էր տալիս ռազմական բազաներ հիմնել Ճապոնիայի տերիտորիայում: Այն հավերժացնում էր Ճապոնիայի օկուպացումը ԱՄՆ-ի կողմից և ամբողջովին հակասում ճապոնական ժողովրդի ազգային շահերին: Այդ ագրեսիվ պայմանագիրն ուղղված էր Սովետական Միության, ՉԺՌ-ի և Ասիայի սոցիալիստական մյուս տերությունների դեմ:

Ամերիկա-ճապոնական ռազմական դաշինքը, դրանից բխող բոլոր հետևանքներով հանդերձ, խիստ բարդացրեց իրադրությունը և սրեց դեմոկրատական ուժերին միասնական ճակատում համախմբելու անհրաժեշտությունը:

Մի քանի տարի անց Կիշիի կառավարող լիբերալ-դեմոկրատական պարտիան ձգտելով կատարելագործել ամերիկա-ճապոնական ռազմական դաշինքը, առաջ քաշեց «անվտանգության պայմանագրի» փոփոխված նախագիծ, որը ԱՄՆ-ին հնարավորություն պետք է տար Ճապոնիայում տեղադրված իր զինված ուժերը «Հեռավոր Արևելքում խաղաղության և անվտանգության ապահովման» պատրվակով օգտագործել երկրի ներսում ռևոլյուցիոն շարժումը ճնշելու համար: Պայմանագրի նոր տարբերակի համաձայն Ճապոնիան, որպես ԱՄՆ-ի դաշնակից, կարող էր ավտոմատիկորեն ներքաշվել պատերազմի մեջ՝ դառնալով ամերիկյան իմպերիալիզմի ռազմական ավանտյուրաների զոհը: Ճապոնական կղզիները դառնում էին «ավիակիրներ» և հրթիռային բազաներ ԱՄՆ-ի զինված ուժերի համար: Այն հնարավորություն էր տալիս ընդլայնելու ամերիկյան հրթիռային բազան Օկինավա կղզում, զարկ էր տալիս ճապոնական միլիտարիզմի վերածննդին:

Ճապոնական կառավարող շրջանների ռեակցիոն արտաքին քաղաքական կուրսն ուղեկցվում է աշխատավորների վիճակի վատթարացմամբ: Ռազմականացումը խիստ բացասաբար է անդրադառնում աշխատավորական մասսաների տնտեսական վիճակի վրա: Ամերիկյան բազաների և վարժակայանների համար առանձնացված հողերը կրճատում են առանց այն էլ օգտագործման համար պիտանի սակավ հողատարածությունները: Չնայած 1946—1949 թվականներին իրագործված հողային ռեֆորմին, Ճապոնիայի բոլոր գյուղացիական տնտեսությունների 72,8 տոկոսը կազմում են չքավոր տնտեսությունները: Կիկանսի ցուսին գործակալության հաղորդագրությամբ երկրում 5 միլիոն մարդ ստանում է չնչին աշխատավարձ, իսկ արհմիությունների Գլխավոր խորհրդի հաշվումներով երկրում կա 10 միլիոն գործազուրկ և մասնակի գործազուրկ: Ոչինչ չի արվում աշխատանքի անվտանգության ապահովման ուղղությամբ: Հետպատերազմյան 15 տարիների ընթացքում Ճապոնիայի քարածխի հանքերից չի վերադարձել ավելի քան 10 հազար մարդ և 130 հազար հանքափորներ ստացել են վնասվածքներ:

Նման պայմաններում ճապոնական աշխատավորության պայքարն իր քաղաքական իրավունքների, տնտեսական դրության բարելավման համար, ընդունել է լայն ծավալ: Ճապոնիայի Կոմունիստական պարտիան մասսաների սոցիալ-տնտեսական պահանջների համար մղվող պայքարը հաջողությամբ զուգորդում է դեմոկրատական ազատությունների և ազգային ազատագրական շարժման հետ:

«Անվտանգության պայմանագրի» վերանայման դեմ Ճապոնիայի աշխատավորների պայքարը 1959—1960 թթ. նրա ռևոլյուցիոն շարժման պատմության ամենափայլուն էջերից է: Ճապոնական կառավարությունը հույս ուներ նոր պայմանագիր ստորագրել 1959 թվականի սկզբին, սակայն մասսաների բուռն բողոքները և ակտիվ ու անձնազոհ պայքարը ստիպեցին նրան հետաձգել այն մի ամբողջ տարով: Կոմպարտիան, արհմիությունների գլխավոր խորհրդի և սոցիալիստական պարտիայի հետ միասին հանդիսացավ «Անվտանգության պայմանագրի» դեմ պայքարի Ազգային խորհրդի ստեղծման նախաձեռնողներից մեկը, որն ընդգրկեց 134 կազմակերպություն, ավելի քան 4 միլիոն անդամներով: Կոմունիստների և սոցիալիստների մասնակցությամբ ստեղծվեցին գործողությունների միասնության ավելի քան 2000 կոմիտեներ:

Երկու տարվա ընթացքում Ազգային խորհուրդը կազմակերպեց 23, այսպես կոչված, «միասնական գործողությունների ալիքներ»՝ ընդդեմ «Անվտանգության պայմանագրի»: Եթե 1958 թվականի ընթացքում Ճապոնիայում գործադուլներին մասնակցեցին 6.4 միլիոն մարդ, իսկ 1959 թվականին՝ 27 միլիոն մարդ, ապա միայն 1960 թվականի հունիսի 4-ի, 15-ի և 22-ի երեք քաղաքական գործադուլներին մասնակցողների թիվը հասավ 16,4 միլիոնի:

Այնուամենայնիվ, չնայած բողոքի բուռն ալիքին, Կիշին 1960 թվականի հունվարին մեկնեց Վաշինգտոն և ստորագրեց ճապոնա-ամերիկյան անվտանգության պայմանագրի «նոր», վերանայված տարբերակը: Ֆաշիստական մեթոդներ կիրառելով, Կիշիի կառավարությունը 1960 թվականի մայիսի 19-ի լույս 20-ի գիշերը ոստիկանական ուժերով պառլամենտի շենքից բռնությամբ հեռացրեց սոցիալիստ-դեպուտատներին և հասավ պայմանագրի վավերացմանը՝ առանց նույնիսկ նրա շուրջը բանավեճեր սկսելու: Սակայն դա չսասանեց աշխատավորների վճռականությունը: Նրանց հաջողվեց ձախողել էյզենհաուերի այցելությունը Ճապոնիա, ստիպեց Կիշիի կառավարությանը հրաժարական տալ, ամերիկյան զինվորականությանը՝ հեռացնել Ճապոնիայում բազավորված «Ու—2» լրտեսական ինքնաթիռները, իսկ նոր պրեմիեր մինիստր Իկեդայի կառավարությանը՝ ժամկետից շուտ ընտրություններ անցկացնել:

Այդ ընտրությունների արդյունքները ցույց տվին, որ ժողովրդական մասսաները, չնայած կառավարության ձեռնարկած ռեպրեսիվ միջոցառումներին, տեռորին և մեքենայություններին, ըստ արժանվույն գնահատեցին հայրենասիրական ուժերի ծառայությունը: 1960 թվականի նոյեմբերի 20-ի ընտրությունների ժամանակ Կոմպարտիան 150 հազար ձայն ավելի ստացավ, քան 1958 թվականին և պառլամենտի ներքին պալատում լրացուցիչ կերպով նվաճեց երեք տեղ: Եթե 1958 թվականին կոմունիստների և սոցիալիստների օգտին քվեարկեց 8,6 միլիոն մարդ՝ ընտրողների 24,5 տոկոսը, ապա 1960 թվականին՝ 15,5 միլիոն մարդ, այսինքն՝ ընտրողների 39,2 տոկոսը: Այս փաստերը վկայում են, որ չնայած սոցիալիստական պարտիայի աջ առաջնորդների դիմադրությանը, կոմունիստները մի շարք հարցերում կարողացել են հասնել գործողությունների միասնության՝ սոցիալիստական պարտիայի տեղական կազմակերպությունների, ինչպես նաև արհմիությունների Գլխավոր խորհրդի և այլ մասսայական կազմակերպությունների հետ:

Կոմպարտիան աճել է քանակապես: Նրա 42 պրեֆեկտուրային կազմակերպությունները կրկնապատկել են, իսկ մի քանիսը նույնիսկ եռապատկել են իրենց կազմը: Միայն VII և VIII համագումարների միջև ընկած երեք տարիների ընթացքում Կոմպարտիայի շարքերն ընդունվեցին 50 հազար նոր անդամներ, որոնց մեծ մասը բանվորներ են: 818 կոմունիստներ պրեֆեկտուրային, քաղաքային և գյուղական ինքնավարության օրգանների դեպուտատներ են: Դա 166 հոգով ավելի է, քան 1958 թվականին: Կոմպարտիայի կենտրոնական օրգան «Ակահատա» թերթի տիրաժը օրական 100 հազար օրինակ է, իսկ կիրակնօրյա համարը լույս է տեսնում ավելի քան 200 հազար տիրաժով:

Ճապոնիայի Կոմունիստական պարտիայի կյանքում կարևոր իրադարձություն հանդիսացավ VIII համագումարը, որը տեղի ունեցավ 1961 թվականի հուլիսի 25-ից 31-ը: Համագումարի ընդունած նոր ծրագիրը Ճապոնիայում գալիք ռևոլյուցիան համարում է ժողովրդի դեմոկրատական ռևոլյուցիա՝ ուղղված երկու թշնամիների՝ ամերիկյան իմպերիալիզմի տիրապետության և ճապոնական մոնոպոլիստական կապիտալի դեմ: Այն պահանջում է դեմոկրատիա, խաղաղություն և չեզոքության քաղաքականություն Ճապոնիայի համար, վերացնել Ճապոնիայի օկուպացումը ամերիկացիների կողմից, լիկվիդացնել ամերիկյան ռազմական բազաները, Ճապոնիային վերադարձնել Օկինավա և Բոնին կղզիները, նորմալ հարաբերություններ սկսել ՉԺՌ-ի և Հարավարևելյան Ասիայի մյուս սոցիալիստական երկրների հետ: Ծրագիրն առաջարկում է ստեղծել միասնական ազգային-դեմոկրատական ճակատ: Դեմոկրատական ուժերի հետագա հաջողությունների վճռական պայմաններից մեկը համարվում է Կոմպարտիայի շարքերի ընդլայնումն ու ամրապնդումը: Ծրագրի եզրափակիչ մասում նշվում է, որ ճապոնական ժողովուրդն իսկական երջանկության և ազատության կհասնի սոցիալիզմի կառուցման շնորհիվ: Ինչպես նշեց Ճապոնիայի Կոմունիստական պարտիայի նախագահ Նոսական ՍՄԿՊ XXII համագումարում արտասանած իր ճառում, Կոմպարտիան անձնուրաց պայքար է ծավալել այդ խնդիրները կենսագործելու համար:

«Ծագող արևի երկրի» աշխատավորների կյանքում միշտ էլ քիչ է եղել արևի լույսը և միշտ էլ շատ դաժան ու մռայլ իրականությունը: Սակայն դա երբեք չի մթագնել պայծառ ապագայի հեռանկարը Ճապոնիայի աշխատավորների և Կոմունիստական պարտիայի համար, երբեք չի վհատեցրել նրանց և չի ընկճել պայքարի անհողդողդ կամքը: Ճապոնիայի քաղաքական երկնակամարը շարունակում է մնալ ծածկված սև թուխպերով: Բայց եթե թուխպերը ժամանակավոր են, անցողիկ, ապա արևը հավերժական է, իսկ թուխպերի ետևում միշտ արևն է:

Ճապոնական ժողովրդին վաղ թե ուշ կհաջողվի Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ ձեռք բերել իսկական ազատություն: Այն ժամանակ կփարատվեն թուխպերը և ազատության արևը հավերժ կճառագի այդ երկրի վրա:

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՊԱՐՏԻԱՅԻ ԱՆՁՆՎԵՐ ԳՈՐԾԻՉԸ



Գյումրու անհրապույր փողոցներից մեկում էր գտնվում այն տունը, ուր 1891 թվականին ծնվեց Գևորգ Հանեսօղլյանը: Նրա հայրը՝ Սարիբեկը արհեստավոր էր, ֆիզիկական աշխատանքի մարդ: Իր բազմանդամ ընտանիքը նա պահում էր արդար վաստակով, սեփական օրինակով երեխաների մեջ սերմանում սեր դեպի «հալալ քրտինքի վաստակը»: Որքան դառն է եղել Գևորգ Հանեսօղլյանի մանկությունը, նույնքան չարքաշ էր նրա պատանեկությունը:

Ալեքսանդրապոլի ծխական դպրոցը հաջողությամբ ավարտելուց հետո, պատանի Գևորգը ցանկություն է հայտնում ուսումը շարունակելու: Հայրը տեսնելով որ «տղեն աշքարաց է», չնայած նյութական ծանր պայմաններին, Գևորգին տալիս է քաղաքային ուսումնարանը. բայց երկու տարի անց նրան հեռացնում են ուսման վարձը չվճարելու պատճառով:

— Ռանչպարն ո՞վ, ուսումն ով,— դառնորեն գանգատվում է Սարիբեկը և որդուն խորհուրդ տալիս արհեստ սովորել:

Տասնվեց տարին դեռ չէր բոլորել, երբ Գևորգը սկսեց աշխատել Մալխասյանի տպարանում: Չարքաշ աշխատանքի դառնությունը, բանվորների բացահայտ շահագործումն ու իրավունքների ոտնահարումը առաջին իսկ տարիներից փոթորկում էին երիտասարդի սիրտը, և նա իրեն հուզող բազմաթիվ հարցերի պատասխանը փորձում էր գտնել գրքերի մեջ: Սակայն քաղաքական հարցերից նա դեռևս գլուխ չէր հանում: Այդ շրջանում Գ. Հանեսօղլյանը երբեմն կարդում էր այնպիսի գրքեր, որոնք երիտասարդ և անփորձ բանվորներին պայքարի ճիշտ ճանապարհ ցույց չէին տալիս:

1905—1907 թվականների բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան մեծ նշանակություն ունեցավ Ռուսաստանի և նրա ծայրամասերի հասարակական-քաղաքական մտքի զարգացման համար: Այդ ժամանակաշրջանում Ալեքսանդրապոլի երկաթուղու և տպարանի բանվորները, հետևելով Անդրկովկասի և Ռուսաստանի բանվորների օրինակին, պայքարի դուրս եկան ցարական ինքնակալությունը տապալելու, դեմոկրատական կարգեր հաստատելու համար: Ռևոլյուցիոն շարժումները խոր ազդեցություն թողեցին երիտասարդ բանվոր Գ. Հանեսօղլյանի վրա: Բայց դեռևս Հանեսօղլյանը ինքն իրեն չէր գտել քաղաքական պայքարում. նա տատանումների և որոնումների մեջ էր: Օգտվելով ռևոլյուցիայի պարտությունից, հակամարքսիստական, բուրժուա-նացիոնալիստական պարտիաները բացահայտ գրոհի դուրս եկան ռևոլյուցիայի դեմ, գործադրելով բոլոր միջոցները անփորձ բանվորներին և աշխատավորներին իրենց ազդեցության տակ գցելու համար:

Գ. Հանեսօղլյանը, որ այդ ժամանակ 17 տարեկան էր, տարվում է դաշնակցության նովերով: Սակայն շուտով հօդս են ցնդում երիտասարդի պատրանքները կապված դաշնակցության հետ: Բանվորական միջավայրում աճած և քաղաքական գրականությամբ հրապուրված երիտասարդը, որը ցարիզմի դեմ պայքարի ճշմարիտ ուղի էր փնտրում, դարձավ այդ պարտիայի կրքոտ հա-



կառակորդը, որի դեմ պայքարելը համարում է իր խղճի ու գիտակցության պարտքը:

1912 թվականին նա ամբողջովին խզում է իր կապերը դաշնակցության հետ և վերջնականապես գտնում իր կյանքի փարոսը, պրոլետարական ռևոլյուցիայի լենինյան ուսմունքը, որին նա հավատարիմ մնաց մինչև իր կյանքի վերջը:

Վրա հասավ փոթորկաշունչ 1917 թվականը: Փետրվարին տապալվեց ռոմանովների դինաստիան: Ցարիզմի տապալման լուրը հնչեղ արձագանք գտավ նաև Հայաստանում: Ալեքսանդրապոլի բանվորները ցնծությամբ ընդունեցին այն: Ամենուրեք կազմակերպվում էին միտինգներ: Ահա թե ինչ է գրում Մալխասյանների տպարանի նախկին գրաշար, հին բոլշևիկ Կ. Խաչատրյանը տպարանների բանվորների միտինգի մասին:

«Ալեքսանդրապոլում, երկաթգծի դեպոյից հետո, կարելի էր հեղափոխական կենտրոն համարել Մալխասյանի տպարանը... 1917 թվականի մարտի 4-ին Գ. Հանեսօղլյանի նախաձեռնությամբ կազմակերպվեց տպագրական բանվորների միտինգ, որին մասնակցում էին Մալխասյանի, Սանոյանի, Ղուկասյանի և Աֆինյանի տպարանների բանվորները: Այդ միտինգում ելույթ ունեցավ մեր բոլորի կողմից հարգված ու սիրված Գևորգ Հանեսօղլյանը, որին Ալեքսանդրապոլի բանվորների մեջ կարելի էր համարել առաջավոր, գրագետ, քաղաքականապես պատրաստված և լավ կազմակերպիչ» («Բանվոր», 1955 թ. № 91):

Տպարանի բանվորները միտինգում ընտրում են ռևոլյուցիոն կոմիտե, որի մեջ մտնում են՝ Կամսար Տեր-Սարգսյանը, Արտեմ Սարգսյանը, Հմայակ Պեծիկյանը, Գրիգոր Ջրաղացպանյանը և Կ. Խաչատրյանը: Կոմիտեի նախագահ է ընտրվում Գևորգ Հանեսօղլյանը: Գ. Հանեսօղլյանի նախաձեռնությամբ կազմակերպվում է Ալեքսանդրապոլի քաղաքական բանտարկյալների ազատման գործը: Փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Գ. Հանեսօղլյանն ավելի սերտորեն է կապվում Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կազմակերպության հետ և ընդհատակյա ու լեգալ աշխատանքում, բազում փորձություններով լի իր գործունեությամբ նա ցույց է տալիս իր նվիրվածությունը ժողովրդին ու պարտիային: 1917 թվականի հուլիսին Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կազմակերպությունը նրա մեջ տեսնելով համոզված լենինյանի, ընդունում է նրան իր շարքերը: Այդ օրից էլ նա իր ամբողջ գիտակցական կյանքը կապում է Կոմունիստական պարտիայի հետ, դառնում նրա հզոր ու մեծ բանակի հավատարիմ զինվորը և մեծ ակտիվությամբ մասնակցում ռևոլյուցիոն աշխատանքներին:

Քաղաքի բոլշևիկյան կազմակերպության նախաձեռնությամբ 1917 թվականի մարտի վերջին հրատարակվում է բանվորների և զինվորների դեպուտատների գործադիր կոմիտեի օրգան «Ռաբոչի ի սոլդատ» թերթը, որի խմբագիրն էր ականավոր ռևոլյուցիոներ Պյոտր Արվելաձեն: Գ. Հանեսօղլյանը Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կազմակերպության հանձնարարությամբ դժվարին պայմաններում ձեռք էր բերում թուղթ, կլիշեներ և այլ անհրաժեշտ նյութեր: Ինչպես «Ռաբոչի ի սոլդատ», այնպես էլ մյուս թերթերում տպագրվում էին Գ. Հանեսօղլյանի մարտական թղթակցություններն ու հոդվածները բանվորների տնտեսական և քաղաքական ծանր վիճակի և նրանց ռևոլյուցիոն տրամադրությունների մասին:

Գ. Հանեսօղլյանը մեծ հեղինակություն էր վայելում բանվորների շրջանում, քանի որ նա «Բանիմաց էր, համեստ, առակախոս, մեծի հետ մեծ, փոքրի հետ փոքր»: Բանվորները վստահում էին Գևորգին, որովհետև զգում էին, որ նա միշտ էլ պաշտպանում է բանվորի շահերը, շատ կենսուրախ է, չափազանց մարդկային ու հոգատար ընկերոջ նկատմամբ: Պատմում են այսպիսի մի դեպք: Տպարանատերը անիրավացիորեն աշխատանքից հեռացնում է բանվորներից մեկին: Այդ բանվորը բազմանդամ ընտանիքի տեր էր և, հասկանալի է, առանց աշխատանքի անելանելի կացության մեջ կընկներ: Հանեսօղլյանը որոշում է օգնել իր բանվոր ընկերոջը: Մի խումբ բանվորների հետ միասին նա գնում է տպարանատիրոջ մոտ, պահանջելով փոխել իր որոշումը: Վերջինս մնում է անդրդվելի:

— Մենք էլ մեր ուզածը կանենք,— ասում է Հանեսօղլյանը և հեռանում նրա առանձնասենյակից:

Հաջորդ օրը տպարանը չաշխատեց: Հանեսօղլյանը կարողացել էր համոզել բանվորներին աշխատանքի չելնել մինչև իրենց ընկերոջ իրավունքները չվերականգնվեն: Այս փոքրիկ միջադեպում հաղթում են բանվորները, իսկ Հանեսօղլյանի հեղինակությունը ավելի ու ավելի է բարձրանում նրա ընկերների աչքում:

Ինչպես ասված է պարտիական փաստաթղթում, Հանեսօղլյանը շուտ է կողմնորոշվում քաղաքական իրադարձությունների մեջ, ունի հետևողական, տրամաբանական մտածողություն: Պարտիական գործում նվիրված է և կայուն, փորձված բանվոր է, ազնիվ ու զուսպ. ունի կազմակերպչական - վարչական ընդունակություններ (տե՛ս ՀԿՊ ԿԿ արխիվ, գործ 22, կապոց 105): Այսպես են բնութագրել նրան մարտական ընկերները և պարտիայի վերադաս օրգանները:

Սովետական կարգերի համար մղվող պայքարը կազմակերպելու, բոլշևիկյան պարտիայի նպատակներն ու խնդիրները մասսաներին լուսաբանելու համար քաղաքի բոլշևիկյան կազմակեր-

